იდისა ღუთის მშობელი

წული მარიამისა

ცვებითა და გალობებითურთ

ლი ქართულს ენასა ზედა



ვენეტიკს

ვსა შინა წმიდისა ლაზარესი

1860

Terchimanean, Hamazasp
Khorhrdakan khostovanutiwn...

# ԽՈՐՀՐԴԱԿԱՆ

# ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹԻՒՆ

---

ԹԱՐԳՄԱՆԱԲԱՐ ՅՕՐԻՆԵԱՑ


Հ. ՀԱՄԱԶԱՍՊ ԹԵՐՃԻՄԱՆԵԱՆ

ՎԱՐԴԱՊԵՏ ՄԽԻԹԱՐԵԱՆ









ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

1873

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Շատ խղճալու բան է՝ որ շատերը բեռ մը կը սեպեն իրենց խոստովանանք ըլլալը, չիճանչնալով որ Քրիստոս Փրկիչն մեր ինչ մեծ բարիք ըրեր է մեզի այս սուրբ Խորհուրդը հաստատելով։ Ամեն քրիստոնեայ գիտէ, կամ պարտական է գիտնալու, որ մահուչափ մեղաց մէջ ինկնողին անկարելի է առանց կատարեալ զղջման փրկութեան հասնիլը։ Կատարեալ զղջումին անկատար զղջումէն ինչ տարբերութիւն ունենալն ալ՝ ամէնքը սորված են քրիստոնէական վարդապետութենէն, որ կատարեալ զղջումը Աստուծոյ սիրոյն պատճառաւը պիտի ըլլայ. դժոխքին վախէն առաջ եկածը չի բաւեր մեղաւորը փրկութեան հասցնելու՝ առանց արձակման։ Այս սանկ ըլլալով, ո՞ր մեղաւորը կրնայ վստահ ըլլալ որ իր զղջումը դժոխքի վախէն չէ. ո՞վ կրնայ ըսել որ իր զղջումը զԱստուած կորսնցնելուն համար է, որն որ. դատապար-

տեղւոյ յաւիտենական թշուառութիւնը պիտոր ըլլայ: Քրիստոս Տէրն մեր որ մեր փրկութեան համար ամէն կերպով դիւրացուց, տեսնելով այս դժուարութիւնը, դրաւ արձակման սուրբ Խորհուրդը, որն որ անկատար զղջման պակասութիւնը կը լեցնէ. ու իշխանութիւն տուաւ քահանայից որ իր կողմանէ արձակեն ապաշխարողները: Անկէց կը հետևի որ քահանային պէտք է գիտնայ ինչ մեղքէն արձակելը. ապա թէ ոչ, գողն որ ուրիշի ստակը գողցեր է, առանց հատուցանելու՝ ինչպէս կրնայ արձակում ընդունիլ. կամ զրպարտողը՝ առանց իր ըրած զրպարտութեան համը տեսնելու՝ ինչպէս կրնայ ազատ ըլլալ իր մեղքէն. այն ատեն արձակում տուող քահանային մեղսակից կըլլար մեղաւորին: Այս է խոստովանանքին հիմը, ու Քրիստոսի սահմանած Խորհրդոյն պատճառը: Ուստի երբոր մեղաւորը կը զղջայ ըրածին վրայ ու կը խոստովանի, Քրիստոսի սուրբ արեանը արդիւնքը՝ քահանային խօսքովը ապաշխարողին վրայ գալով, Աստուծոյ սիրոյն պակասութիւնը կը լեցնէ. իսկ թէ որ զԱստուած բարկացնելուն համար ըլլայ իր զղջումը, խոստովանած մեղքերուն ժամանակաւոր պատիժն ալ կը թեթևցնէ: Ուրեմն շնորհակալ ըլլանք Քրիստոսի մեր վրայ ունեցած խնամոցը, ու ամէն անգամուն որ արձակում կ'ընդունինք, երևակայենք որ Քրիստոսի սուրբ խաչին տակը կեցած ըլլայինք, ու իր սուրբ կողէն բխած արիւնը վրանիս վազելով մաքրէր զմեզ 'ի մեղաց: Հիմա չի խղճանք անոնց վրայ, որ ատանկ մեծ ու կարևոր Խորհուրդէ մը կը զրկեն զիրենք, կամ տարին անգամ մը միայն խոստովանիլը բաւական կը համարին:

Այս ալ աւելցնենք որ խոստովանանքը աւելի կը ծանրանայ որչափ որ ուշացուի. հաշիւ ընելու կը նմանի. որչափ որ դիւրին է ամեն ամիս հաշուեգիրը կարգի դնել, այնչափ դժուար է տարին մէյմը հաշիւ տեսնալ. անոր համար ստէպ խոստովանանք եղողները՝ բնաւ մը չեն տեսներ իրենց զանիկա. մանաւանդ որ արձակումը ու սուրբ հաղորդութիւնը կը զօրացնէ զիրենք որ մեղքէն ետ կենան, ուստի դիւրին ալ կ՚ըլլայ իրենց խոստովանանքը։ Մենք ալ աւելի դիւրացնելու համար խոստովանանք ըլլալը, մանաւանդ ուշ եղողներուն, այս գրքուկիս ետեւը խղճմտանքի քննութեան կերպն ալ կը դնենք, որն որ յուսանք թէ օգտակար կըլլայ հաւատացելոց։

# ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

---

## ԳԼՈՒԽ Ա.

### ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹԵԱՆ ՀԻՆԱՒԱՆԴ ԵՒ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԸԼԼԱԼՈՒՆ ՎՐԱՅ

Խորհրդական խոստովանութիւնը, կըսէ Ս. Օգոստինոս, դժոխոց սարսափն է, փրկութեան ուղղեցոյց, յոյս ամենայն հաւատացելոց։ Այս պատճառաւ զարմանք չէ որ մոլորամիտ և ախտաւոր մարդիկ, ամենայն կատաղութեամբ հաւատոյ այս ամենահարկաւոր վարդապետութեանս դէմ զինին, ջանալով որ պարզամիտ և անուս մարդիկը համոզեն, իբրև թէ գաղտնի խոստովանութիւնն մեղաց առ քահանայն՝ աստուածային կարգադրութիւն մը չէ, այլ նորագիւտ և խորամանկ հնարք մը խիղճերու վրայ տիրելու, և սրտից գաղտնիքներն իմանալու համար, ժողովրդեան վերայ բռնա-

նալով՝ որպէս զի գիրենք նուաճեալ և գերութեան մէջ պահեն միշտ։ Այս ամպարիշտ գըրպարտութեանս սուտ և որչափ անտեղի ըլլալը թէպէտ խիստ շատ հզօր և ամենահամուտ աստուածաբանից և կրօնքի ջատագովներու գըրութիւններովը շատ անգամ ցուցուած և ապացուցուած է, բայց որովհետև հակառակէն ալ խաբեպատիր ու մոլորեցուցիչ մտքով ու լեզուով գրութիւնք ալ յաճախած են աշխարհքիս ամեն դին, մանաւանդ աս վերջի ժամանակներս, և դժբախտաբար թերևս աւելի ատոնք կը կարդացուին, այն պատճառաւ աւելորդ չենք սեպեր համառօտ հերքում մը տալու այդ անիրաւ իմաստակ գրպարտութեանց, ցըցունելով որ օրինաւոր քահանային իւր մեղքերը խոստովանիլը, որուն յունկանէ խոստովանութիւն կ'ըսենք, ոչ է մարդկային կարգադրութիւն մը, այլ աստուածային և աստուածայնագոյն, որ չէ թէ միայն անօգուտ և վնասակար չէ, հապա մանաւանդ ամենաօգտակար և կարևորագոյն։ Ըսածնիս պիտի ցըցունենք չէ թէ միայն սուրբ գրոց և սուրբ հարց եկեղեցւոյ վկայութեամբ ու հեղինակութեամբ, այլ նաև արտաքին պատմութեանց և հերետիկոսաց խօսքերովը։

Նախ քան զամենայն կը տեսնանք որ Աստուած ըստ կարգաց իւր նախախնամութեանը, ինչպէս քրիստոնէական կրօնքին խիստ շատ ճշմարտութիւններն ու խորհուրդները շատ ժամանակօք առաջ յայտներ է ստուերակերպ օրինակներով, նոյնպէս ալ երկնաւոր Փրկչին խոստովանութեան խորհուրդը՝ իր

հաստատուելէն հազարաւոր տարիներ առաջ՝ ստուերակերպ օրինակեալ կը տեսնանք չէ թէ միայն գրաւորական օրինաց մէջ, այլ նաև բընական օրինաց ժամանակը։

## § Ա.

### Խոստովանութիւնն ստուերագրեալ ՚ի բնական օրէնս նախկին հաւատացելոց.

Բնական օրինաց գալով, կրնանք ըսել որ խոստովանութիւնն այնչափ հին է՝ որչափ որ մարդկային ազգը. մեր նախահարքը աշխարհքիս առաջին մեղաւորներն եղան։ Ադամ իր Արարչին դէմ ելաւ. այլ Աստուած ուզեց իր ողորմութիւնը ցըցունել անոր. բայց ներելէն առաջ պահանջեց որ ճանչնայ իր սխալմունքը, ու խոնարհաբար խոստովանի։ Ուստի կը կանչէ զինքը ըսելով. Ադամ ո՞ւր ես։ Վախէս պահուըտեր եմ, պատասխանեց Ադամ։ Ինչէ՞ն է փախդ, ըսաւ դարձեալ Աստուած. չըլա՞յ թէ արգելած պտղէս կերած ըլլաս։ Աս կերպով կարծես թէ Աստուած Ադամայ բերանը կը դնէ թէ ի՛նչ կերպով իր մեղքը պիտի խոստովանի։ Եւ իրօք ալ Ադամ մէկէն պատասխան կու տայ. Ան կինն որ ինծի ընկեր տուիր, տուաւ ինծի ան պտղէն, ու ես ալ կերայ։ Ահաւասիկ Ադամայ խոստովանութիւնը՝ ու ես ալ կերայ։ Աստուած ետքը դառնալով առ Եւա, կըսէ անոր ալ. Եւ դու ինչո՞ւ ըրիր այդ բանդ։ Որուն կը պատասխանէ կինը. Օձը խաբեց զիս, ես ալ կերայ։ Ահաւասիկ Եւայի

խոստովանութիւնն ալ՝ ևս այլ կերպայ (Ծնն. Գլ. 3)։ Եւ ահա այս է, ինչպէս կընկատեն սուրբ Հարք եկեղեցւոյ՝ Ամբրոսիոս, Օգոստինոս և Յովհան Ոսկեբերան, խոստովանութեան առաջին ձևն ու օրինակը։

Նոյն հրաւէրք Աստուծոյ կողմանէ կը տեսնանք Կայենի եղբայրասպանութեան դէպքին մէջ ալ. բայց Կայէն ոչ յանցանքը ուզելով ճանչնալ, և ոչ ալ խոստովանիլ, Աստուծոյ երեսէն կ'իյնայ, ու անարժան կըլլայ թողութեան։

§ Բ

Խոստովանութիւնն ստուերագրեալ և հրամայեալ ՚ի գրաւոր օրէնս.

Մովսիսական օրինաց մէջ աւելի բացայայտ կերպով ստուերագրած կը տեսնենք այս խորհուրդս, մանաւանդ թէ հրամայուած որոշ կերպով առանձնական և գաղտնի խոստովանութիւնը։ Թուոց գրքին մէջ այսպէս կը կարդանք (Գլ. Ե. տ. 6). « Այր կամ կին, որ ոք արասցէ յամենայն մարդկեղէն մեղաց, և արհամարհելով արհամարհիցէ, և յանցանիցէ անձնն Աստուծոյ, խոստովան լիցի զմեղս իւր զոր արար։» Առակաց գրքին մէջ ալ այսպէս կ'ըսէ (Գլ. ԻԸ. տ. 13). « Որ ծածկէ զամբարշտութիւնս իւր, ոչ յաջողեսցի, (ըստ լատինականին՝ ոչ ընկալցի թողութիւն). իսկ որ ՚ի վեր հանէ (լտ. խոստովանի) և յանդիմանէ՝ սիրելի լիցի։ Սիրաք կը յորդորէ զմեղաւորը ըսելով (Գլ. Դ. տ. 31).

«Եւ վասն մեղաց քոց մի ամաչեր խոստովանել։» — Դարձեալ մեղաւորը պարտական էր յայտնել քահանային իր մեղքերը մանրամասնաբար, որպէս զի կարենար քահանայն մեղաց համեմատ քաւութեան զոհը հրամայել։ Անոր համար Ղեւտական գրքին մէջ այսպէս կը հրամայէ Աստուած (Ղւ. Ե. ա. 17, 18). «Եւ անձն որ մեղիցէ, և արասցէ մի ինչ յամենայն պատուիրանաց Տեառն զոր չիցէ պարտ առնել, և ոչ իմանայցէ, և յանցանիցէ, և ընդունիցի մեղս. ածցէ խոյ անարատ 'ի խաշանց գնոց արծաթոյ վասն յանցութեանն՝ առ քահանայն. և քաւեսցէ վասն նորա քահանայն վասն անգիտութեանն զոր անգիտացաւ, և ինքն ոչ գիտէր, և թողցի նմա։» Արդ ըսածներնէս յայտնի կ'ըլլայ թէ քահանայն չէ թէ միայն մեղքը պէտք էր իմանար, այլ նաև կամաւ արդեօք՝ եթէ անգիտութեամբ եղեր է, որ ըստ այնմ քաւութեան զոհը կատարէր. և թէ պէտք էր առանց բան մը ծածկելու բովանդակ խոստովանիլ, որպէս զի արժանի ըլլան թողութեան, և թէ ամօթը մէկդի թողլու է, և քահանային դրած պարտքը կատարելու է, մեղաց հատուցում մը ընելու համար։ Հոս դրած վկայութիւններս այնպէս բացայայտ են որ ոչ ոք կրնայ տարակուսիլ թէ խոստովանութիւնը Հրէից համար ալ հրաման մըն էր և պատուէր. աս պատճառաւ Կռոցիոս նորաղանդ մատենագիրն ալ՝ Մատթէի աւետարանին երրորդ գլխոյն վեցերորդ համարը մեկնելու ատեն՝ այսպէս կ'ըսէ. «Ես ամենահաւանական կը սեպեմ անոնց կարծիքը, որոնք կը հաստատեն թէ Հրէից մէջ սովորու-

'թիւն էր իրենց առանձնական մեղքերը քա-
հանային խոստովանիլ։»'

Այս խոստովանութիւնս որ ըստ սովորական օրինաց քահանային կ'ըլլուէր, անսովոր դէպ-քերու մէջ մարգարէից ալ կ'ըլլուէր, որոնք այս վախճանիս համար խաւրուած էին Աստուծ-մէ։ Ըստծիս ամենայայտնի օրինակ մը կը գըտ-նանք Դաւթի թագաւորութեանը ժամանակ։ Այս թագաւորս երբ Ուրիան սպաննել տուաւ որպէս զի Բերսաբէն իրեն կնութեան առնու, Նաթան մարգարէն Աստուծոյ կողմանէ ներ-կայացաւ թագաւորին, որպէս զի խոստովան-ցընել տայ իր մեղքը։ Դաւիթ շուարած ու մե-ղացը վերայ ցաւելով՝ ըսաւ. Մեղայ Տեառն։ Այս իրեն խոնարհ և անկեղծ խոստովանութեանը համար, մարգարէն ապահովեց զինքը, թէ Աստուած թողութիւն տուաւ իր մեղացը. «Տէր անցոյց զքև զմեղս քո, և մի մեռցիս։»

Այս սովորութիւնս ինչուան Քրիստոսի գա-լուստը անխախուտ մնաց Հրէից մէջ, ինչպէս որ Աւետարանին պատմութենէն կը տեսնուի (Մատ. Գլ. Գ. Տ. 6)։ Վասն զի կը պատմէ աւե-տարանիչը որ Յովհ. Մկրտիչ Յորդանանու ե-զերքները գալով, որպէս զի զՀրեայս Մեսիայի գալստեանը նախպատրաստէ, տալով իրենց ապաշխարութեան մկրտութիւնը, միանգա-մայն իրենց մեղաց խոստովանութիւնը կը լսէր. «Յայնժամ ելանէին առ նա ամենայն երու-սաղեմացիք, և ամենայն հրէաստան, և ամե-նայն կողմն Յորդանանու, մկրտէին 'ի նմանէ 'ի Յորդանան գետ, և խոստովան լինէին զմեղս իւրեանց։»

Բայց Քրիստոսի գալստենէն վերջն ալ 'ի սպառ չջնջուեցաւ այս սովորութիւնս Հրէից մէջ, այլ ինչուան հիմա քիչ շատ կը պահուի այս սովորութիւնս. ինչպէս որ արդի անուանի Րաբունեաց վկայութենէն կը հաստատուի, որոնք կ'ուսուցանեն թէ առանց ապաշխարութեան ու զղջման, հանդերձ խոստովանութեամբ միայն, թողութիւն չկրնար գտնալ մէկը իր մեղքերուն։ Աս Րաբունիներէն՝ այսինքն Ռապպիներէն մէկը, Մովսէս տի Թրանի ըսուած, կ'ըսէ որ՝ « Ապաշխարութիւնն ու խոստովանութիւնը մի և նոյն պատուէրքն են. որովհետև խոստովանութիւնը բանի չգար առանց ապաշխարութեան, և ապաշխարութիւնը խոստովանութեամբ կը կատարելագործուի. » (Մօրինուս, Եր. 128)։ Ուրիշ մը Դաւիթ Քիմխի կոչուած, կը հաստատէ թէ առանց խոստովանութեան, քաւութեան զոհը արդիւնք ու զօրութիւն մը չունէր, և թէ զոհին արդիւնքը խոստովանութեան վրայ հաստատուած էր։ Եբրայական ուրիշ հին գրքի մը մէջ ալ այսպէս գրուած կը գտնանք. (Մօրինուս, Եր. 130). « Հարկաւոր է որ ապաշխարողը խոստովանի պարզապէս և որոշ՝ ինչ որ կարգէ դուրս և ամօթալի բան մը գործեր է. վասն զի թէ որ չուզեր աս բանս ընել, իր զիղջն ու ցաւը անկատար է. և թէ որ մեղաւորը չդառնար առ Աստուած անկեղծ սրտով, և չխոստովանիր իր ամպարշտութիւնները, Աստուած վրէժխնդիր կըլլայ։ » Դարձեալ իրենց վարք սրբոցի մը մէջ այսպէս կը պատմուի. (Մօրինուս, Եր. 133). « Հրեայք ապաշխա-

րել ուզելով, եւան գացին իրենց Ռապպինե-րուն՝ իմանալու համար թէ ինչ պէտք էր ընէ-ին, և թէ իւրաքանչիւր մեղքին ինչ ապաշխա-րանք պէտք էր կատարել. աս վախճանաւ ա-ռանձին ու ծածուկ իւրաքանչիւրը իր մեղքը յայտնեց, որպէս զի արժանաւոր ապաշխա-րանք ընդունի։ Եւ որ աւելի զարմանալին է, նոյն գրքին մէջ կ'ըսէ որ չըլլայ թէ մեղքերնին մոռնան, ապահովութեան համար թղթի մը վրայ կը նշանեն։ Յօվհաննէս Պիւքսդորֆ, իր Ժողովարան Հրէից ըսուած գրոցը մէջ (Գլ 35), կը հաստատէ որ Հրեայք մեռնելու ատեննին քրիստոնէից պէս խոստովանանք կ'ըլլան, այս տարբերութեամբ որ ոգէտները խոստովա-նութեան ձև մը ունին, ու զայն կ'արտասա-նեն, իսկ այլք յատուկ մեղքերնին կը խոստո-վանին։ Այս ըսածներնուս հաստատութիւն մը կրնայ ըլլալ՝ կտակ երկոտասան նահապե-տաց ըսուած հին գրութիւնը, որ կ'ըսէ թէ՝ Յակոբ նահապետին երկոտասան որդիքը մեռ-նելնէն առաջ ընդհանրական խոստովանու-թիւն մը ըրին իրենց մեղացը։ Այս գրուածքս յոյն-եբրայական լեզուով գրուած, թէպէտ և առասպելախառն է և առանց անուան հեղի-նակին, բայց սակայն քննաբանք երրորդ դա-րու գրութիւն կը սեպեն, և ինչպէս կը տես-նուի՝ քրիստոնեայ եղող հրէի մը գործ է։ Ին-չուան հիմա ըսածներնէս յայտնի կ'երևայ որ Հրէից մէջ գաղտնի խոստովանութիւնը կար, և թէ ինչուան ցայսօր մէջերնին մնացած է։

## § Գ

### Խոստովանութիւնը գրեթէ ամեն հեթանոս ազգաց քիչ շատ ծանօթ էր.

Արտաքին և անսուրբ պատմութեանց մէջ ըսածներնուս այնչափ օրինակներ ունինք, որ առանց կասկածանաց կրնանք հաստատել՝ թէ չկայ հեթանոս ժողովուրդ մը որ խոստովանութեան գոնէ հետք կամ նշմարանք մը ունեցած չըլլայ։ Եւ այն քաւութիւններն որ կ'ընէին հինք, արդեօք ճշմարիտ խոստովանութեան մը ապացոյց չե՛ն կրնար ըլլալ, որով յանցաւորը կը խոստովանէր իր յանցանքը, և կը ցաւէր իր ըրած մեղացը վրայ։ Բազմահմուտն Սմիթ՝ իր Փրկութիւն ազգի մարդկան գրուածքին մէջ խիստ լաւ կը ցըցունէ աս ճշմարտութիւնս։ Վոլթէռ ալ իր Ընդհանուր պատմութեան մէջ կըսէ թէ՝ Բագոսի, Աստղկան ու Ադոնիսի խորհրդական տօներուն մէջ ժողովուրդը կը խոստովանէր իր մեղքը։ Այն քահանայք որ խոստովանութիւն կը լսէին, ուսերնէն բանալի մը կը կախէին, որ լսած խոստովանութիւններին ծածուկ պահելու նշանակ էր, կըսէ Պարոնս տը Սէնթ-Քրուա։ Ի Սամոթրակէ, որ Արշիպեղագոսի կղզիներէն մէկն է, որոնք որ կ'ուզէին քահանայական խորհրդոց տեղեակ ըլլալ՝ նախ պէտի պատրաստուէին քաւութեան զոհեր մատուցանելով, սրբուելով և ըստ կարգի խոստովանութիւն մը ընելով։ Այն քահանայն որ հանդիսին նախագահն էր և արձակելու իշխա-

նութիւն ունէր՝ Քոէս կ'ըսուէր, որ քաւիչ և սրբիչ ըսել է ։ Յելևսիս՝ որոնք որ Կիւբեղէի խորհրդոցը կ'ուզէին խնկամուտ ըլլալ, դժուարին փորձերու տակ դրուելէն վերջը, քահանայի մը կը յանձնուէր որ զանոնք քննէ. և որոնք որ ծանր յանցանքներու պարտաւոր կը գտնուէին, կը մերժուէին իբրու անարժան այն խորհրդոցը, (Ուղեւորութիւն Անաքարսեայ, Հտ. Գ. Գլ. 68)։ Եւ ոչ ոք այդ փորձերէն ու խոստովանութենէն ազատ կրնար մնալ, թէ և թագաւոր ըլլար ։ Մարկոս Աւրելիոս կայսեր վրայ կը կարդանք Վոլթէռի Ընդհանուր պատմութեան մէջ որ Ելևսեան Կիւբեղէի խորհրդոցը նուիրուիլ ուզելով, ստիպուեցաւ Երոփանդեայ խոստովանիլ, որ Ելևսեան պաշտամանց կրօնական պաշտօնեայն էր ։ Յունաստանի և Ասիոյ ժողովրդոց մէջ, որոնք որ խղճմտանքի խայթով կը տանջուէին, այդ տագնապէն ազատելու համար կ'երթային խոստովանելու իրենց մեղքերը այն քահանայից՝ որոնք ունկնդիր կ'ըսուէին, որոնց պաշտօնն էր յանցաւոր մեղաւորաց խոստովանութիւնը՝ լսել՝ կըսէ Պ. Սէնթ-Քրուա ։ Եւ յանցաւորը չէր կրնար արձակման արժանի ըլլալ եթէ երդմամբ չխոստանար վարքը փոխել և առաքինի ըլլալ ։ Աս բանիս վրայ խօսելով և Վոլթէռ, կ'ըսէ թէ ամենահաւաստի է որ Երոփանդէն Յունաց ամեն խորհուրդներու մէջ ժողովքը արձակելու ատեն եգիպտական երկու բառ կ'ըսէր՝ այս իմաստով. հսկեցէք, անբիծ լերուք. կարծես թէ տէրունական խօսքին նման. Երթ 'ի խաղաղութիւն. և այլ մի եւս մեղանչեր ։ Դարձեալ յԵգիպտոս աստուածաբաններ

կային խղճմտանաց առաջնորդ, և իրենք կ'որոշէին թէ այս կամ այն գործը աստուածային արդարութեան համաձայն էր թէ ոչ, (Ուղ. Անաքարս, Հտ. բ. Գլ. 21)։

Սրդի հեթանոսաց մէջն ալ նոյնպիսի խոստովանութեան յանցանաց օրինակներ չեն պակսիր։ Չինաց կայսրը երբ իրեն սնապաշտութեանցը համեմատ զոհելու կ'երթայ, տեսակ տեսակ արարողութիւններ կը կատարէ, որոնց մէջը տեսակ մը խոստովանութիւն ալ կայ. այսինքն ցած ձայնով իր բարի կամ չար գործոց ցուցակը կը կարդայ. չար գործոց վերայ կը զղջայ, և կ'առաջադրէ աւելի լաւ կերպով կեանք վարել, ու մեղաց ցուցակը կրակը կը նետէ։ Թիպէթի մէջ չէ թէ միայն կրօնաւորք, այլ նաև աշխարհականք իրենց հոգեւոր հայր ունին, որուն իրենց մեղքը կը խոստովանին. և երբոր ապաշխարողը զղջման ձեւը կը զուրցէ. Ես մեղայ, և այլն, հոգեւոր հայրը վրան աղօթք մը կ'ընէ, որպէս զի մեղաց թողութիւն առնու։ Թիպէթներուն վրայ աս բանս պատմող հեղինակը, կ'աւելցընէ թէ Լամաները որ իրենց կրօնաւորքն են, ամիսը չորս անգամ կը հաւաքուին, իրենց կանոններուն մեկնութիւնը լսելու համար. և այս միջոցս իրենց գլխաւորը ժողովքին ներկայանալէն առաջ կը խոստովանի իր խղճին առաջնորդին. որով ինքն ալ աղօթատեղին մտնելու ատեն կը յորդորէ միւս Լամաները որ խոստովանին։ Սիամի թագաւորութեան մէջն ալ տեսակ մը մուրացիկ կրօնաւորք կան որոնք Թալաբոն կը կոչուին. ասոնք առաւօտները մուրալու կ'ել-

լեն, և իրիկուան կատարումը դառնալէն ետքը կ'երթան իրենց մեծին դիմացը ծունր կը դնեն ու կը խոստովանին. և մեծն ալ յանցանքներնուն համեմատ ապաշխարանք մը կուտայ իրենց։ Սէյլան կղզւոյն մէջ ալ Կոնցերը իբրև հոգևոր բժիշկք կը սեպուին ժողովրդեան։ Պարսից մէջ, ուր որ դեռ Նախնի կրակապաշտութեան աղանդը մնացած է, մոգերն՝ որ իրենց կրօնից պաշտօնեայքն են, հինգ դաս կը բաժնուին. ասոնցմէ մէկը սահմանուած է խոստովանութիւնները լսելու, խղճի դիպուածներն որոշելու, ու օրէնքները պարզելու և մեկնելու։ Հնդկաստանցւոց մէջ հաստատուն սկզբունք մը դարձած է, որ ով որ չխոստովանիր, մեղաց թողութիւն չգտներ։ Տարուէ տարի տօն· մը կը կատարեն, որուն միջոցը ամենքը գետի մը եզերքը երթալով մեղքերնին կը խոստովանին, որպէս զի ջնջուին ու սրբուին իրենց մեղքերէն։ Այս ժողովուրդներն չէ թէ միայն գործքով ըրած մեղքերնին կը խոստովանին, այլ և խորհրդով եղած մեղքերն ալ, ինչպէս որ Տիւպուա երիցուն պատմածէն կը տեսնուի։ Այս ամեն պատմածներնէս ու ըսածներնէս ամեն մարդ կը տեսնէ, որ գրեթէ ամենայն հեթանոս ժողովրդոց մէջ ալ խոստովանութեան սովորութիւնը կար, և ինչուան ցայսօր ալ կը պահուի։

# ԳԼՈՒԽ Բ

## ՅԱՂԱԳՍ ԿԱՐԵՒՈՐՈՒԹԵԱՆ ԽԱՍՏՈՎԱՆՈՒԹԵԱՆ ՅՈՐԷՆՍ ՇՆՈՐՀԱՑ

### § Ա

*Թէ Յիսուս Քրիստոս հաստատեց խոստովանութեան խորհուրդը.*

Նախընթաց գլխոյն մէջ ըստ բաւականին ցըցուցինք որ գրեթէ ամեն ազգաց մէջ կար խոստովանութեան սովորութիւնը յայտնութեամբ կամ բնական լուսով։ Արդ այս ընդհանրական սովորութիւնս որ Քրիստոսէ առաջ կար, ինքն Որդին Աստուծոյ՝ որ մեզի համար մարդացաւ՝ օրէնքի փոխեց, որով բարձրացաւ խորհրդոց կարգը։ Այնպէս որ յօրէնս շնորհաց՝ խորհրդական խոստովանութիւնն գործեալ մեղաց, բանից և խորհրդոց՝ օրինաւոր քահանային առջին, փրկութեան համար անվրէպ կարևոր է, որով միայն մեր մեղաց թողութիւն կը գտնենք այն բանալեաց զօրութեամբը, զորն որ Յիսուս Քրիստոս իր եկեղեցւոյն շնորհեց։

Ի ձեռն խորհրդոյ մկրտութեան՝ Քրիստոս Տէրն մեր ուզեց վերանորոգել զմարդ 'ի շնորհս և հաշտեցնել զինքը ընդ Աստուծոյ։ Այս ա-

մենամեծ բարերարութիւնն՝ ապարդիւն և անօգուտ կ'ըլլար այն քրիստոնէին համար, որ մկրտութենէն ետքը պատրանօք բանսարկուին աստուածային օրինաց դէմ զանցառու եղած ըլլար ծանր յանցանքով մը. որովհետև վշտացնելով զԱստուած, և ոտքի տակ առնելով զդաշն ուխտին, նորէն դատապարտութեան վիճակի մէջ կ'իյնար: Բայց Աստուած որ ամենուն փրկութիւնը կ'ուզէ, նոր և մեծագոյն սիրով մը ապաշխարութեան խորհուրդը հաստատեց, որով մեղօք ծանրաբեռնած քրիստոնեայն, կարենայ կրկին Աստուծոյ շնորհացը արժանի ըլլալ ու փրկութեան հասնիլ: Այսու դիտմամբ և մտօք դառնալով Քրիստոս առ Պետրոս, որ իրեն եկեղեցւոյն գլուխ սահմանած էր, ըսաւ. «Եւ տաց քեզ զփականս արքայութեան երկնից. և զոր միանգամ կապեսցես յերկրի, եղիցի կապեալ յերկինս. և զոր արձակեսցես յերկրի, եղիցի արձակեալ յերկինս» (Մատ. ժԶ. ու. 19): Առաքելապետին եղած այս խոստմունքս, վերջը ըստ ժամանակին նաև ուրիշ առաքելոց ալ ըրաւ Քրիստոս Տէրն մեր, ինչպէս որ նոյն աւետարանագրին մէջը կը կարդանք. «Ամեն ասեմ ձեզ. զի զոր կապիցէք յերկրի, եղիցի կապեալ յերկինս. և զոր արձակիցէք յերկրի, եղիցի արձակեալ յերկինս» (Մատ. ժԸ. 18): Այս խոստմունքիս ամբողջական կատարումը՝ Քրիստոսի յարութենէն ետքը կը տեսնենք Յովհաննու աւետարանին մէջ, ուր Քրիստոս երևնալով իրենց՝ կ'ըսէ. «Որպէս առաքեաց զիս Հայր, և ես առաքեմ զձեզ... փչեաց 'ի նոսա՝ և ասէ. Ա-

ռէք Հոգի սուրբ. եթէ ումե՛ք թողուցուք զմեղս, թողեալ լիցի նոցա. եթէ զուրուք ունիցիք, կալեալ լիցի» (Յովհ. ի. 22)։ Յայտնի եղաւ ուրեմն որ Քրիստոսի տուած այս իշխանութեամբ ու հրամանովը մեր մեղաց թողութիւն կը գըտնենք քահանային տուած խորհրդական արձակմամբը, որով այն մեղքերն որ արձակուած չեն քահանայէն՝ կալեալ են յերկինս, այսինքն չեն թողուած մեզի։ Ասով քահանայք սահմանուած են յԱստուծոյ դատաւորք հոգւոց յերկրի, անանկ որ եթէ իրենք արձակեն զոք, կամ չտան մէկու մը արձակում, իրենց ըրածը Աստուած ալ յերկնից կը հաստատէ. «Եթէ ումեք թողուցուք զմեղս՝ թողեալ լիցի նոցա. եթէ զուրուք ունիցիք, կալեալ լիցի։»

Բայց որպէս զի քահանայն գիտութեամբ և իմաստութեամբ վարէ իր պաշտօնը, և այսպիսի ծանր նիւթի մը մէջ չսխալի, հարկաւ պէտք է որ լաւ ճանչնայ զյանցաւորը. և որպէս զի լաւ ճանչնայ՝ պէտք է որ ապաշխարողն ալ անկեղծութեամբ բանայ իր սիրտը, և ցըցունէ իր խիղճը իր հոգւոյն դատաւորին, ամբաստանելով ինքզինքը և խոստովանելով իր յանցանքը։ Մինչև որ մէկը այս անկեղծ ու կամաւոր խոստովանութիւնս չընէ, քահանայն չկըրնար 'ի գործ դնել ու կատարել Քրիստոսէ առած պաշտօնը արձակելու կամ ոչ արձակելու, որովհետև ո՛ր և իցէ դատաւոր մը չկրնար յանցաւոր մը արդարացնել կամ դատապարտել՝ ինչուան որ տեղն 'ի տեղը դատին էութիւնը չիմանայ։ Օրինակով մը ըսածնիս ուզելով բացատրել, այս հետևեալ նմանու-

թիւնս կ'առնունք մեզի օրինակ. Թագաւոր մը իր ժողովրդեան բազմութեանը պատճառաւ, չկրնալով իւրաքանչիւրին դատը անձամբ տեսնել, իր տէրութեան իմաստուն և առաքինի համբաւեալ անձինքն իրեն կը ժողվէ, պատուիրելով իրենց. Ձեզ իմ տէրութեանս այլ և այլ գաւառները կը խաւրեմ, որ եղած դատաստանները տեսնէք ու քննէք. ան պատճառաւ իմ իշխանութիւնս ձեզի կը հաղորդեմ. զոր դուք կ'արձըկէք, ես ալ նոյնպէս կ'արձըկեմ. և ընդ հակառակն կը դատապարտեմ, զով որ դուք կը դատապարտէք։ Արդ աս անձինքը իրենց պաշտօնին տեղը երթալով, միթէ կարելի՞ է որ առանց քննութեան ըստ պատահման զոմանս դատապարտեն 'ի մահ և 'ի բանտ, և զայլս անպարտ թողուն. տարակոյս չկայ թէ ոչ. վասն զի լաւ գիտեն իրենք ալ որ երբ Թագաւորը ըսաւ իրենց, թէ ձեր ըրածը ես ալ կը հաստատեմ, կիմանար միանգամայն թէ լաւ քննեցէք զդատն և զյանցաւորը, և վճիռ տալէն առաջ աղէկ նայեցէք որ ձեր դատաստանը արդարութեան և իրաւանց վրայ հիմնած ըլլայ։ Ուստի հիմա այս օրինակս մերձեցնենք մեր խնդրոյն. համարինք թէ այս արդարասէր Թագաւորին պէս ըսած ըլլար Քրիստոս Տէրն մեր իր առաքելոցը, ինչպէս որ ալ ըսաւ ճըշմարտութեամբ. և մտածենք թէ կրնայի՞ն արդեօք առաքեալք մեր ըսածէն ուրիշ կերպ առնուլ և հասկընալ Քրիստոսի խօսքը։

Ապա ուրեմն կը տեսնենք որ Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ խօսքը՝ որ ըսաւ առաքելոց և իրենց յաջորդներուն, յայտնի պատուիրան

մըն է ամեն տեղի և ամեն ժամանակի քրիստոնէից համար, որ մեղքերնին խոստովանին քահանայից՝ որոնք Քրիստոսի փոխանորդք են, որպէս զի մեղքերնուն թողութիւն գտնեն։ Քրիստոնէին պարտքը յայսմ՝ այնպէս հաւաստի է, ինչպէս հաւաստի է Քրիստոսի խօսքը առ առաքեալս. «Առէք Հոգի սուրբ. եթէ ումեք թողուցուք զմեղս, թողեալ լիցի նոցա. եթէ զուրուք ունիցիք, կալեալ լիցի։» Թէ որ այս այսպէս չըլլար, կ'ըսէ Սուրբն Օգոստինոս, Քրիստոսի առ առաքեալս ըսած խօսքերը անօգուտ և անիմաստ կ'ըլլային. և փականաց իշխանութիւնն զոր տուաւ Քրիստոս եկեղեցւոյ՝ սնոտի, անօգուտ և անվախճան իշխանութիւն մը կ'ըլլար (Ճառ 49)։ Եւ չէ թէ միայն Սուրբն Օգոստինոս, այլ և բովանդակ Հարք եկեղեցւոյ ամեն ազգի և ամենայն ժամանակի, որ աւանդապահք են եկեղեցւոյ վարդապետութեանցը, միաբան նոյն մտքով կը հասկընան Քրիստոսի աս խօսքը, որ ըսաւ առաքելոց թէ մեղաւորք պարտական են փութալ յոտս քահանային, որպէս զի արձըկուին։ Սուրբն Յոհան Ոսկեբերան քահանայութեան երրորդ գրքին մէջ կ'ըսէ թէ՝ «Քահանայք որք յերկրի աստ բնականան, և'ի սմին քաղաքավարին, յերկնայնոցն սպասաւորութիւն կարգեցան, և իշխանութիւն իմն ընկալան, զոր և ոչ հրեշտակաց, և ոչ հրեշտակապետաց ետ Աստուած։ Քանզի նոցա ոչ ասաց եթէ՝ Զոր միանգամ կապիցէք յերկրի, եղիցի կապեալ յերկինս. և զոր արձակիցէք յերկրի, եղիցի արձակեալ յերկինս ....։ Եւ զոր միանգամ աստ 'ի խոնարհ

գործեն քահանայք, նոցուն 'ի բարձունս վճիռ հաստանէ Աստուած, և զծառայիցն զգաստակնիք Տէրն ինքնին հաստատէ:»

Նոյնպէս Սուրբն Բարսեղ ալ կ'ըսէ իր կանոններուն մէջ. «Պէտք է խոստովանիլ անոնց, որոնց որ Յիսուս Քրիստոս իշխանութիւն տուաւ աստուածային խորհուրդները մատակարարելու:» Նոյնպէս և Սուրբ Հերոնիմոս՝ Մատթէի ԺԱ. Գլխոյն մեկնութեան մէջ կ'ըսէ. «Կը կապէ ու կ'արձըկէ ինչպէս եպիսկոպոսը նոյնպէս քահանայն. որ իր կատարած պաշտամամբը՝ զանազան մեղքերը լսելէն ետքը, ինքը գիտէ թէ զո՛ պիտի արձըկէ, և զո՛ պիտի կապէ:» Դարձեալ և Սուրբն Ամբրոսիոս 'ի մեկնութեան ԼԸ Սաղմոսի՝ կ'ըսէ. «Այն որ մովսիսական օրինաց մէջ Աստուծոյ դատաստանին պահուած էր, Քրիստոս առաքելոց դատաստանին յանձնեց:» Ուստի սուրբ ժողովն 'Տրիտենդեան ուր որ բովանդակ սուրբ եկեղեցին հաւաքուած էր, իր ԺԴ. Գումարման մէջ այսպէս կը խօսի. «Քրիստոս ան ատեն մասնաւորապէս հաստատեց ապաշխարութեան խորհուրդը, երբ յարութենէն վերջը փչելով աշակերտացը՝ ըսաւ. Առէք Հոգի սուրբ. թէ որ մէկումը մեղքերը թողուք՝ թողուի. թէ որ մէկը կապէք, կապուած ըլլայ: Այս յայտնի գործովս և բացայայտ բառերովս, ինչպէս կը հաստատեն սուրբ Հարք միաբանութեամբ, տրուեցաւ առաքելոց և իրենց օրինաւոր յաջորդացը իշխանութիւն արձակելոյ կամ կապելոյ զմեղս, մկրտութենէ վերջը մեղքի մէջ ինկած հաւատացեալները՝ (Աստուծոյ հետ)

հաշտեցնելու համար։» Նոյնպէս Գ. Գլխոյն երրորդ կանոնին մէջն ալ կը նզովէ զամենքը, որոնք կ'ըսեն թէ Յիսուսի Քրիստոսի այն խօսքերն ուրիշ մտքով պէտք է իմանալ։ Ի վերջոյ՝ Ե. Գլխոյն մէջ կ'աւելցընէ թէ Յիսուս Քրիստոս «Քահանայները իրեն փոխանորդ կարգեց, իբրև նախագահք և զդատաւորք, որոնց պարտական ենք յայտնելու զմահուչափ մեղս, որպէս զի փականաց իշխանութեամբն արձակելու կամ կապելու վճիռը տան։» Ըստ այսմ Սուրբն Թովմաս կ'ըսէ թէ՝ «Փրկութեան համար հարկաւոր է խոստովանութիւնը, որոնք որ մահուչափ մեղաց մէջ ինկած են։»

Աւետարանական օրինաց մէջ, Աստուծոյ հետ հաշտուելու համար բաց 'ի խոստովանութենէ ուրիշ ճամբայ չկայ, ինչպէս որ նորադանդք կը փափաքին որ ըլլար։ Վասն զի եթէ ուրիշ ճամբայ մը ըլլար՝ չէր ըսեր Քրիստոս քահանայից թէ՝ «Զոր կապելու ըլլաք, կապուած ըլլայ,» երբոր քահանայէն կապուածը ուրիշ կերպով մը կարենար քաւութիւն գտնել. որ Քրիստոսի ըսածին հակառակ կ'ելլէ, թէ որ երկինքն ալ կապուած պիտի ըլլան այն մեղքերը, զորս երկրիս վրայ կը կապեն քահանայք։ Տարակոյս չկայ որ քահանայ չեղած տեղ մը կամ դիպուածի մը մէջ, ճշմարիտ զղջումն ալ կը հաշտեցընէ զմարդ ընդ Աստուծոյ. բայց այս պայմանաւ և ըղձիւք՝ որ երբ քահանայի մը պատահի՝ մէկէն խոստովանի իր մեղքերը որոնց վրայ կը զղջայ։ Ուրեմն Աստուծմէ թողութիւն առնելու համար, բաւական չէ որ մէկը միտքը դնէ թէ մեղքերը թողուած են, ինչպէս

*կ'ըսէին Նովատեանք, այլ պէտք է կատարել ինչ որ Քրիստոս Տէրն մեր հրամայեց, այսինքն՝ խոստովանիլ քահանային իւր մեղքերը՝ պէտք եղած նախապատրաստութիւններով։*

*Փրկչին այս ըսած խօսքերը՝ աւելի հաստատութիւն մը կ'առնուն բանալեաց այլաբանութեամբը, որով բացատրեց Քրիստոս այն իշխանութիւնը որ իր եկեղեցւոյն պաշտօնէիցը կուտար։ Որովհետեւ ինչպէս որ փակեալ տունը ոչ ոք կրնար բանալ, եթէ ոչ նա որ բանալին ունի, ասանկ ալ մեղքով գոցուած երկնից դուռը ոչ ոք կրնայ բանալ, եթէ ոչ նա՝ որ քահանայական պաշտօնը՝ կամ որ նոյն է՝ սպասահարկութիւնն ունի։ Այս է միակ բանալին որ ըստ աստուածային կարգաւորութեան կը բանայ ու կը փակէ զերկինս, և ոչ երբէք ուրիշ բանալի մը կրնայ բանալ. և ահա այս իշխանութիւնս տրուեցաւ առաքելոց և իրենց օրինաւոր յաջորդացը։ Բայց ի՞նչ բանի կու գար Քրիստոսի Տեառն մերոյ առաքելոց տուած այս իշխանութիւնը, այսինքն բանալոյ զդրունս երկնից, երբոր առանց իրենց բանալուն կարելի ըլլար ներս մտցուիլ։ Ինչպէս որ դռնապանաց պաշտօնը այն չէ միայն որ ծանուցանեն թէ դուռը բաց է կամ գոց, այլ բանալու կամ գոցելու իշխանութիւն ալ պիտի ունենան ստուգապէս, այսպէս ալ խոստովանահօր պաշտօնը իրապէս կապելու կամ արձըկելու վերայ հաստատուած է, և ոչ թէ սոսկ մեղաւորին ծանուցանելու թէ կապուած է կամ արձակուած։ Աս ըսածնիս բոլորովին հակառակ կ'ելլէ Նոր-*

*տղանդից սկզբանցը, որովք կը ջանան ցըցունել թէ խոստովանութիւնը հարկաւոր չէ։*

*Արդ Քրիստոս Տէրն մեր՝ իրեն պաշտօնէից ամ իշխանութիւնս տալու ատեն, հաստատեց զխոստովանութիւնն, հրամայեց որ 'ի գործ դնեն զայն, ուղելով որ այս ըլլայ միակ միջոց մը մեղաւոր հոգին Աստուծոյ հետ հաշտեցընելու։*

*Այս առանձին յունկանէ խոստովանութիւնը՝ կը տեսնենք որ առաքելոց ժամանակէն սկսեալ Քրիստոսի եկեղեցւոյն մէջ կար. վասն զի Գործոց Առաքելոց ԺԹ. Գլխոյն մէջ կը կարդանք, որ Սուրբն Պօղոս երբոր Եփեսոս էր՝ « Բազումք 'ի հաւատացելոցն գային և խոստովան լինէին, կ'ըսէ գրիչն նոյն գրոց, և պատմէին զգործս իւրեանց։» Բնագրին մէջի եղած գային բառը, կը նշանակէ որ պարզ Աստուծոյ չէին խոստովանիր, այլ Աստուծոյ պաշտօնէին, որ էր Սուրբն Պօղոս։ Նոյնպէս պատմէին զգործս իւրեանց ըսելով, մեղաց վեր 'ի վերանց կամ ընդհանուր խոստովանութիւն մը չհասկըցուիր, այլ պարագաներով ու տեղն 'ի տեղը խոստովանութիւն։ Անոր համար Վալթըն անգղիացի Թարգմանիչը, իր ութ լեզուեան աստուածաշնչին ասորերէն բնագիրն այսպէս կը Թարգմանէ. «Ծանուցանէին զյանցանս իւրեանց, և խոստովան լինէին որչափ ինչ արարեալ էին.» Ուր Թողունք որ յունական բառը* πράξεςι *մանրամասնաբար պատմել կը նշանակէ։ Այս դէպքէս յայտնի կ'ըլլայ, որ սկսեալ առաքելոց ժամանակէն՝ գիտէին հաւատացեալք խոստովանութեան պատուէրը, և զնոյն 'ի գործ կը*

դնէին. իսկ առաքեալք ալ 'ի Քրիստոսէ ընդ-
ունած իշխանութեան համեմատ զիրենք կ'ար-
ձըկէին կամ կը կապէին: Իսկ այն նախկին հա-
ւատացեալք, որ իրենց թանկագին գէշ գիր-
քերն այրեցին, տարակոյս չկայ որ առաքելոյն
գրած ապաշխարութեան հետեւանքն էր. վասն
զի անմիջապէս կը յարէ՝ առջի խօսքերն ըսելէն
վերջը. «Եւ բազումք 'ի կախարդասարացն
բերէին զգիրսն, այրէին առաջի ամենեցուն. և
համարեցան զգինս նոցա, և գտանէին արծա-
թոյ բիւրս հինգ:» Ինչուան հիմա ըսածներէս
արեւու պէս յայտնի կ'ըլլայ, թէ քանի՛ անտեղի
է նորաղանդէց ըսածը, թէ բաւական է միայն
Աստուծոյ առջև խոստովանիլ մեր մեղքերը.
վասն զի քահանային խոստովանելու պա-
տուէր մը չկայ սուրբ Գրոց մէջ. զարմանալի
կուրութիւն՝ որ այսչափ բացայայտ գրուած
խօսքերը չեն տեսներ. բայց ասիկայ իրենց
կորստական աղանդին հետեւանքն է, որ սուրբ
Գրոց մէջ եղածները չեն տեսներ, չեղածները
կը տեսնեն. վասն զի իւրաքանչիւր ինքն իրեն
կը ստեղծէ ըստ իւր մտաց սուրբ Գիրքը: Աս
պատճառաւ Տրիտենդեան սուրբ ժողովքը
խոստովանութեան սուրբ խորհրդին վրայ
զանազան յօդուածներով պատշաճապէս խօ-
սելէն վերջը, գոնէ տարին մի անգամ մը խոս-
տովանելու պարտքին վրայ խօսելով, նզովք
կը դնէ անոնց որ յանդգնին պնդել թէ տարին
մի անգամ մը խոստովանելու պարտք չունին
հաւատացեալք ինչպէս որ Լատերանեան ժո-
ղովքին կանոնն է: Վերջ տալով խօսքերնուս՝
կ'ըսենք ուրեմն որ խոստովանութեան խոր-

հուրդը 'ի Քրիստոսէ հաստատուած է, և առաքելոց ժամանակէն կը խոստովանէին նախկին հաւատացեալք, և է յաստուածային իրաւանց։

§ Բ

### Սուրբ Հարք կը վկայեն այսմ.

Մեծ և ամենակարևոր գիտնալու բանն այս է, որ նախկին եկեղեցւոյ ամենայն Հարք կը վկայեն թէ Քրիստոս հաստատեց խոստովանութեան խորհուրդը։ Հաւատոյ ուրիշ վարդապետութիւն մը չկայ, որ աս խորհրդէս աւելի հաստատուն ապացուցուած ըլլայ յամենայն Հարց ամեն ազգաց ամեն ժամանակի. և ըստ Սրբոյն Օգոստինոսի՝ առաքելական աւանդութիւն մը ըլլալուն ամենայն նշաններն ունի։ Այս խորհրդիս սկզբնաւորութիւնը բնաւ եկեղեցական կարգաւորութենէ մը կամ հրամանէ մը առաջ եկած չէ. անոր համար ալ սկըսելուն ոչ մասնաւոր հեղինակ մը կայ և ոչ ալ որոշեալ ժամանակ, բայց եթէ՝ ինչպէս վերն ըսինք, հեղինակն է Քրիստոս Տէրն մեր, և սկըսելուն ժամանակն առաքելոց ատենը։ Ասով առանց ընդհատութեան դարէ դար ամենայն ազգաց և եկեղեցեաց անցած է, ու ինչուան մեր օրը հասած նոյն կերպով։ Եղած անբաւ վկայութեանց մէջէն գլխաւորագոյններն և յայտնիները դնենք հոս դարական կարգով, վերի ըսածնիս հաստատելու համար։

Սուրբն Կղեմէս Հռովմայեցին որ ծաղկեցաւ

եկեղեցւոյ առաջին դարուն մէջ, իր առ Կորն-
թացիս Բ. Թղթոյն մէջ կ'ըսէ. «Որչափ որ այս
աշխարհքիս մէջն ենք, զղջանք բոլոր սրտով և
հրաժարինք 'ի մեղաց, զոր 'ի մարմնի գործե-
ցաք… վասն զի այս աշխարհքէս ելլալնէս
վերջը, չենք կրնար ոչ ապաշխարել և ոչ խոս-
տովանիլ:» Հոս, ինչպէս որ կը տեսնանք,
Քահանայապետը ապաշխարութիւնը յիշելէն
ետև խոստովանութիւնն ալ զատ կը յիշէ իբրև ա-
նոր մասը: Տերտուղիանոս՝ որ երկրորդ դա-
րուն մէջ ապրեցաւ՝ կ'ըսէ. «Թէ որ խոստովա-
նութեան վերայ կը դժուարիս, մտածէ որ խոս-
տովանութիւնը դժոխքին հուրը մեզի համար
կը չիջուցանէ… Մեղաւոր մը պէտք չէ վախ-
նայ՝ իրեն պէս մեղաւորի մը իր մեղքերը խոս-
տովանելու» (Ցղ. Ապաշ. Գլ. Թ):

Երրորդ դարուն մէջ Որոգինէս՝ կ'ըսէ. «Մե-
ղաց թողութիւն կը գտնէ մեղաւորը, երբոր
ամօթը մէկդի թողած կը խոստովանի իր մեղ-
քերը Աստուծոյ քահանային» (Ճառ Բ. վասն
'ի Դ. Գլ. Ղևտական գրոցն): Ուրիշ տեղ ալ՝
լաւ խոստովանահօր մը յատկութիւնները յի-
շելով կ'ըսէ. «Զգոյշ եղիր և ջանայ այնպիսի
անձ մը գտնելու՝ որուն քու անօրէնութիւն-
ներդ պիտի խոստովանիս… որ գիտնայ հի-
ւանդաց հետ հիւանդ ըլլալ, լացողներուն հետ
լացող, և միանգամայն գիտնայ կարեկից և
ցաւակից ըլլալ» (Ճառ Բ. 'ի Սաղմ. Լէ):

Սուրբն Աթանաս որ չորրորդ դարու հայրց
մէկն է՝ կ'ըսէ. «Ինչպէս որ մարդս մկրտեալ 'ի
քահանայէ, կը լուսաւորուի 'ի սրբոյ Հոգ-
ւոյն, այսպէս ով որ իր մեղքերը կը խոստովա-

նի, քահանային միջնորդութեամբը իր մեղացը թողութիւնը կը գտնէ» (Հաւաք. Սրբոց Հարց՝ 'ի լատին բարբառ, Հտ. 22)։

Հինգերորդ դարուն մէջ Սուրբն Ամբրոսիոս այսպէս կը խօսի. «Ոչ ոք կրնայ արդարանալ մինչև որ իր յանցանքները չխոստովանի» (Յղ. Արքայութեան Գլ. 44)։ Եւ Պաւլինոս որ նոյն Սուրբին վարքը գրած է, կ'ըսէ թէ շատ անգամ խոստովանցնելու ատեն սիրտը ելլելով կու լար։

Վեցերորդ դարուն մէջ Սուրբ Գրիգոր Մեծն, աւետարանին՝ Ղազարէ եկ արտաքս խօսքը մեկնելով՝ կ'ըսէ. «Ինչո՞ւ 'ի խորս խղճի ձերոյ ծածկէք ձեր մեղքերը. խոստովանութեան ատեն դուրս հանեցէք զանոնք. դուրս գայ մեռեալը, այն իսկ է խոստովանեցէք մեղքը, և քահանային պաշտամամբը կ'արձըկուիք ձեր յանցանաց կապերէն» (Ճառ ԻԶ)։

Եօթներորդ դարուն մէջ Սուրբ Կեսարիոս Արլի եպիսկոպոսը, մեղքերը հիւանդութեանց կը նմանցընէ, խոստովանութիւնը դեղոց, ըզքահանայն բժշկի (Ճառ Է. Յղ. Ապաշ.)։

Ութերորդ դարուն մէջ մեծարգոյ հայրն Բեդա՝ կ'ըսէ. «Յայտնենք քահանային մեր ծանր բորոտութեան գարշութիւնը, և իրեն առաջնորդութեամբը ջանանք հոգինիս մաքրել» (Ի թուղթն Ս. Յակոբայ)։

Իններորդ դարուն մէջ Սուրբն Պաւլինոս ագուիլէացին, կը խոստովանի իր առ Հենրիկոս կայսր գրած յորդորանաց գրքին մէջ՝ ըսելով. «Ես անարժանութեամբ ընդունեցայ զմար-

մին և զարիւն Տեառն, առանց խոստովանու-
թեան և առանց ապաշխարութեան։»

Տասներորդ դարուն մէջ Հռոտոլփոս փլա-
վիացին, Ղևտական գրոց վրայ խօսելով՝ կ՚ը-
սէ. «Ոչ զոմանս 'ի մեղաց խոստովանիլ և
զայլս ծածկել։»

Մետասաներորդ դարուն մէջ Սուրբն Պետ-
րոս Դամիանոս՝ կ՚ուսուցանէ. «Խոստովանու-
թիւնը պարզ և յստակ պիտի ըլլայ, և ոչ թէ
մէկ մասը խոստովանիլ և միւսը ծածկել»
(Ներբ. 'ի Ս. Անդ.)։

Սուրբն Անսելմոս երկոտասաներորդ դա-
րուն մէջ, առ մեղաւորս խօսելով՝ կ՚ըսէ.
«Գացէք և պարզաբար յայտնեցէք քահանա-
յից խոնարհ խոստովանութեամբ ձեր ներքին
բորոտութեան բիծերը, որպէս զի կարենաք
սրբուիլ։»

Այս ամեն յառաջ բերած վկայութիւններ-
նուս մէջ՝ ամենևին յիշատակութիւն մը չկայ
թէ հաւատացեալք խոնարհութեան համար ի-
րարու խոստովանին, և ոչ իսկ հրապարակա-
կան խոստովանութիւն ընեն, այլ գաղտնի և
յունկանէ խոստովանութեան վրայ է խօսքը։

Թէ որ հարկաւոր ըլլար ըսածներնուս հաս-
տատութեան համար ուրիշ վկայութիւններ ալ
մէջ բերել, անկէ աւելի դիւրին բան չէր կրնար
ըլլալ։ Բայց փութալով 'ի համառօտն՝ յիշենք
միայն հոս Ոսկեբերանի ըսածը, որ պարզա-
պէս կ՚ըսէ թէ՝ «Ով որ իր գաղտնի մեղքերը կը
ծածկէ քահանայէն, դատաստանին օրը չկրնար
ծածկել բոլոր աշխարհի առջին։» Նոյնպէս Սուր-
բըն Օգոստինոս իր գրուածոց մէջ շատ տեղ

կը հաստատէ յունկանէ խոստովանութեան կարեւորութիւնը։ Ի ԾԹ ճառին մէջ կը ստգտանէ զանոնք՝ որոնք որ կ'ըսեն թէ պարզ Աստուծոյ խոստովանիլը բաւական է. և Ժ ճառին մէջ ալ կը յանդիմանէ ան մեղաւորները, որ եկեղեցւոյ բանալեաց են դիմեր, համարելով թէ քրիստոնեայ ըլլալնին բաւական է փրկութեան հասնելու համար։ Սուրբն Լեոն իր 139 Թղթոյն մէջ կ'ըսէ թէ բաւական է յայտնել քահանային գաղտնի խոստովանութեամբ իր յանցանքները։ Սուրբն Կիպրիանոս կ'ըսէ նոյնպէս, թէ ամէնքը պարտական են խոստովանիլ՝ քանի որ այս աշխարհքիս մէջն են, քանի որ կրնան խոստովանիլ, որով և ըրած հատուցումնին ընդունելի կ'ըլլայ Աստուծոյ։ Սուրբն Բարսեղ ալ կ'ըսէ յայտնապէս թէ անհրաժեշտ պէտք է անոնց խոստովանիլ՝ որոնք իշխանութիւն ընդունած են մատակարարելու աստուածային խորհուրդները։ Սուրբն Պակիանոս Պարցելոնայի եպիսկոպոսը, կ'երդուընցընէ հաւատացեալները որ վիրաւորեալ խղճերնին չծածկեն, բան մը չպահեն. և կը գանգատի ընդդէմ անոնց՝ որոնք տգէտ և անուս քահանայից կը դիմեն, որպէս զի կարենան խաբել։

Ասոնցմով և ուրիշ նոյնպիսի վկայութիւններով յայտնի կ'ըլլայ, թէ Հարք ամենայն ազգաց և ամենայն ժամանակի հաստատապէս հաւատացեր ու վկայեր են թէ Յիսուս Քրիստոս հաստատեր է ապաշխարութեան և խոստովանութեան խորհուրդը։

## § Գ

### Ընդհանուր և առանձնական ժողովք նոյն ճշմարտութիւնը կը հաստատեն.

« Խոստովանութեան խորհրդոյն աստուածային կարգաւորութիւն մը, ըլլալը՝ ալ աւելի յայտնի կ'ըլլայ և կը հաստատուի, տեսնելով թէ ինչպէս տիեզերական ու կաթուղիկէ Եկեղեցին, և առանձին եկեղեցիք գումարեալք 'ի ժողով, ընդունեցեր են այս սուրբ խորհուրդս և հաւատացելոց պատուիրեր են զայն 'ի գործ դնելու։

Ժողովն Լաւոդիկեայ որ գումարեցաւ յամին 360, երկրորդ Կանոնին մէջ կը պատուիրէ որ « Մեղաց համեմատ ապաշխարանք դրուի ապաշխարողին։ » Արդ ապաշխարանք դնելու համար հարկ է որ քահանայն գիտնայ մեղքերը և այս առանց խոստովանութեան չկրնար ըլլալ։

Շալոն քաղքին Ա. Ժողովքին մէջ որ 644ին գումարեցաւ 'ի Գաղղիա, պարտք դրին քահանայից՝ խոստովանութիւնը լսելէն վերջը ապաշխարանք դնել խոստովանողին։

Դարձեալ Ռէյմսի Ժողովքին մէջ որ գումարեցաւ 639ին 'ի Գաղղիա, սահմանուեցաւ որ աղուհացից մէջ ժողովրդապետք միայն և ոչ ուրիշ քահանայք՝ կարենան լսել իրենց ժողովրդեան խոստովանութիւնը։

Նոյնպէս Գաղղիոյ Նանդ քաղքին Ժողովքը որ գումարեցաւ յամին 656, կը պատուիրէ իր չորրորդ Կանոնին մէջ որ քահանայն կամ հո-

դաքարձուն երբոր իմանան իրենց յանձնուած անձի մը հիւանդութիւնը, մէկէն երթան անոր տունը, և կեցած խուցը օրհնեալ ջրով սրբելով՝ դուրս հանել տան հոն եղողները, և յորդորեն զհիւանդը խոստովանիլ։

Կոստանդնուպօլսոյ Գ. տիեզերական ժողովքը որ 692ին գումարեցաւ, 102 կանոնին մէջ կենթադրէ որ իւրաքանչիւր հաւատացեալք կը խոստովանին մեղքերնին. և կը սահմանէ որ քահանայք լաւ քննեն ու նային մեղաց տեսակը ու չափը, ինչպէս նաև ապաշխարողին ներկայ հանգամանքն ու վիճակը, որպէս զի փրկարար դարմաններ մատուցանեն։

Նոյնպէս Տրուլեան ժողովքը որ գումարեցաւ յամին 692, նոյն պատուէրները և զգուշութիւնները ապսպրելէն զատ, կըսէ թէ որոնք որ առեր են Աստուծմէ կապելոյ և արձակելոյ իշխանութիւն, պարտական են աղէկ նայելու և քննելու մեղաց և մեղաւորին հանգամանքը, և ըստ այնմ դեղ և դարման ընելու։

Գերմանիոյ Ա. ժողովքը որ գումարեցաւ հաւանականաբար 'ի Ռաթիզպոնա յամին 742, կ'արգելու քահանայից բանակներու մէջ չկենալ, բաց անոնցմէ՝ որոնք որ սահմանուած են անմահ պատարագը մատուցանելու, սրբոց պաշտօնը տարածելու, ու զինուորաց խոստովանութիւնը լսելու։ Ասկէ յայտնի կ'ըլլայ որ ան ատեններէն 'ի վեր կային զօրաց և բանակի յատուկ քահանայք՝ զօրաց խոստովանութիւնը լսելու համար։

Կալկուզիոյ ըսուած ժողովքը որ գումարե-

ցաւ յամին 787, Նախագահութեամբ Ադրիանոս պապին 'ի ձեռն նուիրակաց իւրոց, կը հրամայէ որ առանց քահանային խոստովանելու և ապաշխարութեան արժանաւոր պտուղ ցըցունելու ոչ ոք հաղորդութեան մերձենայ. և ով որ առանց զղջման և խոստովանելու մեռնի, այնպիսւոյն համար աղօթք չըլլուի։

Բարիզու Զ. Ժողովքը որ գումարեցաւ յամին 829, կ'արգելու քահանայից մայրապետանոցներ չմտնելու, բայց եթէ կուսանքը խոստովանցնելու համար. և եպիսկոպոսաց կը պատուիրէ որ չթողուն քահանայից հեռանալ եկեղեցիէն, որպէս զի չըլլայ թէ հաւատացեալք առանց խոստովանութեան մեռնին։

Բավիայի Ժողովքը գումարեալ 850ին, կը հրամայէ որ հրապարակական մեղաւորք հրապարակական պատիժ մը ընդունին. իսկ որոնց որ յանցանքը ծածուկ է, 'ի ծածուկ խոստովանին այն քահանայից՝ զորոնք կարգեր է եպիսկոպոսը իբրև ճարտար բժիշկ ծածուկ վէրքերը բժշկելու։

Անգղիոյ եկեղեցական Կանոնաց մէջ, որ Էտգար Թագաւորին ժամանակը գրուեցան, խել մը կանոններ ալ կան խոստովանութեան վերաբերեալ։ Ասոնց մէջ առաջինն այս է. «Ով որ խոստովանիլ կուզէ՝ պէտք է արիանայ և ամօթը մէկդի դնէ, և առանց ծածկելու խոստովանի իր անօրէնութիւնները. վասն զի առանց խոստովանութեան թողութիւն չկայ։»

Կոսթանցայի ժողովքին մէջ որ գումարեցաւ 1417ին, յետ ցըցունելու թէ խոստովանութիւնը յաստուածային օրինաց է և կարեւոր է

'ի փրկութիւն, կը դատապարտէ Վիկլեֆի առաջարկութիւնը թէ՝ «Որոնք որ կատարեալ զղջմամբ կը ցաւին, անոնց համար հարկաւոր չէ խոստովանիլ։»

Տրիտենտեան սուրբ և անուանի ժողովքը, որ գումարեալ էր 'ի 360 եպիսկոպոսաց, իր ԺԴ. Գումարման Ե. Գլ. մէջ բայայայտ կ'ըսէ. «Ընդհանրական եկեղեցին ընդունեց և հաւատացեր է միշտ, որ խորհրդական խոստովանութիւնն անձնական մեղաց՝ 'ի Քրիստոսէ Յիսուսէ հաստատուած է, և թէ յաստուածային օրինաց կարևոր է անոնց համար՝ որ մկրտուելէն վերջը մեղանչեր են։»

## § Դ

### Ապաշխարութեան հին կանոնները նոյնպէս վկայք են բաժներնուս.

Ուղղափառ եկեղեցւոյ երկու հին ապաշխարութեան կանոններուն մէջը՝ նոր ապացոյց մը կը գտնուի խոստովանութեան խորհրդին։

Յովհաննէս Ծոմապահող ըսուած Կոստանդնուպօլսոյ Պատրիարգին Կանոնագրքին մէջ, որ Զ. դարուն շարագրուած է, կ'ուսուցանէ թէ քահանայն ինչ հարցմունքներ պիտի ընէ իր ապաշխարողին 'ի խոստովանութեան. կը սահմանէ միանգամայն հարցընել մեղքին տեսակն ու թիւը. և կը յորդորէ ապաշխարողը որ թէ կուզէ գժոխքէն ազատիլ և արքայութեան արժանի ըլլալ, խոստովանի բացայայտ

իր ամենածածուկ մեղքերը առանց բան մը պահելու.

Նոյնպէս Էգբէրտոս Եօրքի արքեպիսկոպոսին յամին 732 հրատարակած կանոնագրքին մէջ նշանակուած է թէ ինչպէս ապաշխարողը պէտք է ամբաստանէ իր ներքին և արտաքին մեղքերը. ուր առ ալ կ'աւելցնէ՝ որ եթէ խոստովանահայրը անփոյթ ըլլայ աս բանս պահանջելու և սորվեցնելու իր հոգևոր որդւոցը, ինքն ալ կը մեղանչէ և պարտական է խոստովանելու։

## § Ե

### Նոյն ճշմարտութիւնը կը ցուցուի 'ի պատմութենէ.

Մինչև հոս ըսածներնուս վերջին հաստատութիւն մը ըլլայ ամենայն ազգաց պատմութեան վկայութիւնն ալ, թէ խոստովանութիւնը յաստուածային իրաւանց է, և պարտք մը ամենայն հաւատացելոց՝ որոնք 'ի մահու չափ մեղս ինկած են յետ մկրտութեան։

Աւելորդ կը սեպենք եկեղեցւոյ առաջին չորս դարերուն պատմութենէն օրինակ բերել, որովհետև նախ որ՝ արդէն վերը ցըցուցինք նախկին եկեղեցւոյ սովորութեան ինչ ըլլալը. և երկրորդ ուղղափառ եկեղեցւոյ նշանաւոր թշնամիներէն մէկուն վկայութիւնը ազատ կ'ընէ զմեզ աս բանէս։ Եւ է սա նորաղանդն Ճիպըն, հեղինակ մտայօդ գրութեան մը որ Յաղագս Անկման Հռովմէական Կայսրութեան։

Ասիկայ պատմական բացայայտ ստուգութիւններէն յաղթահարուելով, կը վկայէ մեր ըսած ճշմարտութեանը սա ոճով. « Ուսեալ մարդ մը չկրնար դէմ կենալ այս պատմական ստուգութեան, թէ պապական եկեղեցւոյն վարդապետութեանց գլխաւոր կէտերէն մէկը եղած է խոստովանութիւնը, ինչպէս որ կը տեսնուի առաջին չորս դարերուն պատմութեանց բոլոր ընթացքին մէջ: »

Ուրեմն մենք ալ սա պատճառաւ հինգերորդ դարու պատմութիւններէն կը սկսինք օրինակ բերել. և նախ կը ջանանք ցուցնել թէ եպիսկոպոսունք և քահանայք կը խոստովանէին: Սուրբն Իսիդոր Սիվիլիոյ եպիսկոպոսը հինգերորդ դարուն մէջ, մեռնելու մօտ աղաչեց իր քովի եղած երկու եպիսկոպոսներուն որ իրեն քովը հսկեն. խոստովանեցաւ իրենց ու արձակում խնդրեց: Նոյնպէս Սրբոյն Բելտիւփի վարուցը մէջ, որ ութերորդ դարու մէջ ծաղկեցաւ, կը կարդանք որ երբ այս Սրբոյն մարմինը պիտի փոխադրէին, բոլոր քահանայք նախ խոստովանեցան, և այնպէս հաւատով և երկիւղիւ իր գերեզմանին մօտեցան:

Կը խոստովանէին կրօնաւորք և կուսանք իրենց վանքերուն մէջ: Սուրբն Փիլիբերտոս հիմնադիր և աբբայ վանաց՝ եօթներորդ դարուն մէջ, տեսնելով որ իր կրօնաւորներէն մէկը մեռնելու վրայ է և խօսելու կարողութիւնը կորսընցուցեր, բայց խոստովանելու տագնապ մը կը ցուցնէ, շուտով աղօթքի կեցաւ. ու իրեն աղօթքովը հոգեվարքին լեզուն բացուելով, խոստովանեցաւ ու անկէ

ետքը մեռաւ։ Թէոդորոս Սթուտիթա յոյն միայնակեացը Սրբոյն Պլատոնի վարուցը մէջ կը պատմէ՝ որ իրեն առաքինութիւններն կը զարմացնէին իր խոստովանահայրը։ Բարիզու Դ. Ժողովքին՝ որ գումարեցաւ 829ին, ըրած որոշմունքներէն կը տեսնուի՝ որ կուսանք առանձին խոստովանահայր ունէին իրենց համար։

Կը խոստովանէին կայսերք, թագաւորք և թագուհիք։ Մարկոս Յուլիոս Փիլիպպոս կայսրը՝ որ 244ին Գորտիանոսի յաջորդեց, դառնալով 'ի քրիստոնէութիւն, Զատկին խթման օրը եկեղեցին գնաց ուրիշ հաւատացելոց հետ։ Բայց Բաբելա եպիսկոպոսը արգիլեց զինքը ներս մտնալու իր անօրէնութեանցը համար, ինչուան որ չխոստովանի. որուն հպատակելով բարեպաշտ կայսրը, այնպէս կրցաւ եկեղեցին մտնալ. (Եւսեբ. Եկեղ. Պատմ. և Ոսկ. 'ի ներբող Սրբոյն Բաբելայ)։ Սուրբն Պետրոս Դամիանոս կը պատմէ որ Հենրիկոս Դին մայրը՝ Ագնէս Աւգոստա, յոտս խորանի առաքելական ընդհանրական խոստովանութիւն ըրաւ իր մեղացը 'ի Հռովմ։ Բայց ընթերցողներուս աւելի հաստատութիւն մը տալու համար, կ'աւելցնեմք հոս այն թագաւորական խոստովանահարց անուններն որոնք պատմութեանց մէջ կը գտնուին։ Մաբիլեոն՝ Բենեդիկտեան կրօնին սրբոց վարքերէն կը հետևցնէ, որ եօթներորդ դարէն ինչուան ութերորդ դար՝ թագաւորաց խոստովանահարք իրենցմէ կ'ընտրուէին։ Սուրբն Անսբերտոս, Թէոդորիկոս Գին Գաղղիոյ թագաւորին խոստովանահայրն էր։ Ռուանի արքեպիսկոպոսը Սուրբն

Անսբերկոս Թիէրրի Թագաւորին խոստովանահայրն էր։ Ութերորդ դարուն մէջ Հարլըմոն Մանսի եպիսկոպոսը՝ Պիպինոսի խոստովանահայր եղաւ։ Սուրբն Կորբինիանոս Փրիսինգայի առաջին եպիսկոպոսը, Կոլիմուալտոս Պավիէրայի դքսին խոստովանահայրն էր։ Իններորդ դարուն մէջ Սուրբն Ալդերիկոս և Սուրբն Անսովինոս եպիսկոպոսները մէկմէկու ետեւէ Լուդովիկոս Բարեմիտ Գաղղիոյ Թագաւորին և Արևելեան կայսեր խոստովանահայր եղան։ Տասներորդ դարուն մէջ Սուրբն Ուլտարիկոս Աւգոստայի եպիսկոպոսը, Օթոն կայսեր խոստովանահայրն էր։ Տիտաքօ Փերնանտոս՝ Սպանիոյ Օրտոնեօ Թագաւորին խոստովանահայրն էր։ Մետասաներորդ դարուն մէջ Կոստանցա՝ Գաղղիոյ Հռոբերտոս Թագաւորին ամուսինը՝ Ստեփան անունով քահանայի մը կը խոստովանէր։ Երկոտասաներորդ դարուն մէջ Հենրիկոս Ա. Անգղիոյ Թագաւորին խոստովանահայր եղաւ Ատէլգուլփոս վանահայրը։

Բանակներու մէջ կը խոստովանէին։ Մեծն Կարոլոս Գաղղիոյ Թագաւոր և Արևելեան կայսր՝ որ 814ին մեռաւ, մեռնելէն ութը տարի առաջ կը հրամայէ որ իւրաքանչիւր հազարապետ իր հետը քահանայ մը ունենայ որ զինուորներն խոստովանցնէ։ Առնուլ Թագաւորը 895ին երբ զՀռովմ պաշարեց՝ զօրքը բոլոր խոստովանեցան քահանայից։ Գուլիէլմոս Մալմէզպուրի յութերորդ դարուն՝ կը գովէ Նորմանտացի զօրքերը, որ երբ անգղիացւոց հետ պիտի պատերազմէին՝ առջի իրիկուընէ խոստովաներ ու հաղորդուեր էին։ Գոնրատոս Դուքսը յա-

մին 955 Հունգարացւոց բանակը զարնելէն առաջ իր խոստովանահօր սուրբ պատարագը լսելով հաղորդուեցաւ։ Ութերորդ դարուն մէջ Ալկուինոս իր բարեկամներէն մէկուն՝ որ բանակին հետ պատերազմի կ'երթար՝ կը գրէ և կը յորդորէ որ ճամբայ ելլելէն առաջ զանց չընէ խոստովանութեամբ զօրացնելու ինք զինքը։

Մեծամեծ վտանգներու մէջ կը խոստովանէին հաւատացեալք։ Ինչպէս երբոր Սէնթ-Օմար քաղաքը Նորմանտացիներէն պաշարուեցաւ, բոլոր քաղաքացիք Աստուծմէ օգնութիւն գտնելու համար խոստովանութեամբ և հաղորդութեամբ սրբեցին զանձինս։

Հաղորդութենէն առաջ խոստովանութեամբ կը պատրաստուէին։ Վեցերորդ դարու կրօնաւոր մը՝ Անաստաս սինացի կ'ըսէ որ սրբուելու և սուրբ խորհուրդներուն մօտենալու համար պէտք է չարութենէ ետ կենալ, աղտեղութիւններէ մաքրուիլ, և խոստովանութեամբ և արտասուօք մաքրել զհոգին 'ի մեղաց. Խոստովանեցէք ուրեմն ձեր մեղքերն, կ'ըսէ, Յիսուսի Քրիստոսի՝ առ ոտս քահանայի։ Պաւլինոս Աքուիլէայի պատրիարքը՝ ութերորդ դարուն մէջ, նոյնպէս կը պատուիրէ որ հաղորդուելէն առաջ Պէտք է դիմել 'ի խոստովանութիւն և յապաշխարութիւն։ Սուրբն Փիրմինոս, որ գրեթէ նոյն միջոցներուն կը ծաղկէր, կ'ըսէ թէ որոնք որ ծանր մեղաց մէջ են, չմերձենան սուրբ սեղանոյն ինչուան որ չխոստովանին ու ճշմարտապէս չզղջան ըստ խրատու քահանային։ Թողլով ուրիշ աս տեսակ վկայութիւնները՝ նշանակենք հոս միայն նախնեացմէ միացած խոստովանու-

Թեան այս ձևը, զոր կը կարդանք սրբոյն Փուլգենտիոսի վարուցը մէջ, որ վեցերորդ դարուն սկիզբը վախճանեցաւ. «Պարտաւոր մեղաց կը համարիմ զիս, որ առանց խոստովանութեամբ պատրաստուելու, անարժանապէս մօտեցեր եմ ամենասուրբ խորհրդոյ մարմնոյ և արեան Տեառն:» Ասկէ կ'իմացուի որ նախնի հաւատացելոց անտնօրինելի պարտք մըն էր խոստովանելու հաղորդուելէն առաջ, երբոր ծանր մեղաց մէջ կը գտնուէին:

Դրոշմ ընդունելէն առաջ կը խոստովանէին: Հերալտոս Թուրի արքեպիսկոպոսը՝ որ իններորդ դարուն մէջ էր, կանոն մը հրատարակեց, յորում կը պատուիրէր որ խորհուրդը ընդունողները՝ յառաջագոյն պատրաստուին խոստովանելով, որպէս զի Հոգւոյն սրբոյ շնորհքը ընդունին:

Նախնի հաւատացեալք կը խոստովանէին մանաւանդ մեծ պահոց մէջ և եկեղեցւոյ գլխաւոր տօներուն: Կրոդոգանոս Մէցի եպիսկոպոսը որ 767ին մեռաւ, հրաման հանած էր որ կրօնաւորք ամեն շաբաթ օրեր խոստովանին. իսկ ժողովուրդը երեք մեծ պահերուն, այսինքն Զատկէն առաջ, Յովհաննու Մկրտչի տօնէն առաջ, ու մէյ մ'ալ նախ քան զԾնունդ Քրիստոսի: Հռէգինոն Աբբան որ 909ին մեռաւ, Ռուանի ժողովքին մէկ կանոնը մէջ կը բերէ, ուր որ կը հրամայուի եպիսկոպոսաց որ Թեմական այցելութիւն ըրած միջոցնին՝ քննեն տեղեկանան թէ արդեօք կը գտնուի՞ անանկ մէկը, որ ամբողջ տարի մը խոստովանանք եղած չըլլայ, և ոչ իսկ մեծ պահոց սկիզբը: Սուրբն

Էգբերտոս Եորքի արքեպիսկոպոսը, որ ութե-
րորդ դարուն մէջ մեռաւ, կը վկայէ որ Անգ-
ղիոյ մէջ ընդհանուր սովորութիւն էր Քրիս-
տոսի Ծննդենէն առաջ չէ թէ միայն եկեղեցա-
կանք, այլ և աշխարհականք բոլոր ընտանեօք
կ'երթային կը տեսնուէին իրենց խոստովանահօրը
հետ, որպէս զի կարենան ետքը սրբութեամբ
հաղորդուիլ սուրբ Ծննդեան օրը։ Եւ այս սովո-
րութիւնը, կ'ըսէ, 657էն Վիտալիանոս Պապին
օրէն 'ի վեր երկիւղածութեամբ կը պահուէր։

Նոր և լաւագոյն կեանք մը սկսանելու ժամանակ
կը խոստովանէին։ Եօթներորդ դարուն մէջ
Սուրբն Թիլեոն միանձնը, ուզելով սրբագոյն
կեանք վարել՝ 'ի մանկութենէ ունեցած մեղքե-
րը բոլոր խոստովանեցաւ քահանայի մը։ Բե-
դա մէկու մը համար կը պատմէ թէ տղակուց
ունեցած մէկ մեղքը խոստովանելով, խիստ լաւ
մարդ եղաւ և վարքը փոխեց։ Սուրբն Բավոն
Կանտի պաշտպան սուրբը՝ որ 585ին ծնած էր,
Սրբոյն Ամանդիոսի քարոզներէն սիրտը շարժե-
լով, իրեն խոստովանեցաւ ու ինքզինքը ապաշ-
խարութեան տուաւ։

Մահուան ատեն կամ ծանր հիւանդութեանց մէջ
կը խոստովանէին։ Վեցերորդ դարուն մէջ
Սամբսոնի՝ Տօլի եպիսկոպոսին վարուցը մէջ
կը կարդանք, որ հայրը մահաբեր հիւանդու-
թեանը ժամանակ ծանր մեղք մը խոստովաներ
է, զոր ինչուան ան ատեն ծածուկ պահեր է
եղեր։ Սուրբն Վոնիփակիոս գերմանացւոց ա-
ռաքեալը ութերորդ դարուն սկիզբները, Հե-
տոլբալտոս Թագաւորին գրելով կ'ըսէ որ իր
նախորդը առանց ապաշխարութեան և առանց

խոստովանութեան մեռած ըլլալով, դատապարտուած էր։ Նոյն դարուն ուրիշ սուրբի մը վարուցը մէջ կը կարդանք, որ վանքէն կ'ելլէր կ'երթար հիւանդաց խոստովանութիւնը լսելու։ Դարձեալ նոյն դարուն մէջ Մաթիլտէ Հենրիկոս կայսեր կինը, մեռնելէն քանի մը օր առաջ Մայենցայի արքեպիսկոպոսին խոստովաներ է եղեր։

Նաև մահուան դատապարտուած ողորմելիքը՝ իրենց մահուանը դատակնիքը կատարուելէն առաջ կը խոստովանէին։ Սրբոյն Կորբինիէրոսի վարուցը մէջ կը կարդանք՝ որ 730ին մեռաւ, թէ զմահապարտ մը աղօթիւք դարձի բերելով խոստովանցուց։ Նոյն տեսակ դէպք մը կը գտնանք եօթներորդ դարու մատենագրի մը մէջ, որ Տաքքոն անունով մէկը գերի ինկած ըլլալով, սպաննուելէն առաջ խոստովանեցաւ, և խոստովանահօր դրած ապաշխարանքը կատարեց։

Արդ այսչափ պատմական օրինակներէն յայտնի կ'ըլլայ՝ որ 'ի սկզբանէ եկեղեցւոյ մինչև հիմա, ամեն տեսակ մարդիկ՝ այր և կին, մեծ ու պզտիկ կը խոստովանէին։ Եւ միթէ չէ՞ այս յայտնի ապացոյց թէ խոստովանութիւնը աստուածադիր օրէնք մըն է ։ Վասն զի ինչպէս կրնայ ըլլալ որ այսչափ այլ և այլ կարգի, վիճակի ու խելքի տէր մարդիկ, կրցեր են յանձն առնուլ ու կատարել այս ծանր պարտքը՝ ուսկից բնականաբար պիտի խորշէին ու չուզենային իբրև դժուարին, խոնարհական և անտանելի բեռ մը՝ թէ որ համոզուած չըլլային, որ ոչ մարդու՝ այլ գերագոյն

քան զմարդու՝ աստուածային հրաման մըն է։ Ուրեմն տասնուինը դարերու վկայութեամբը կը ցուցուի թէ խոստովանութիւնը 'ի Քրիստոսէ հաստատուած է, որով և հարկաւոր առ փրկութիւն։

## § Զ

Նաև հերետիկոսք և նորաղանդք իրենց գործքովը կը հաստատեն այս ճշմարտութիւնը.

Անժխտելի ճշմարտութիւն մըն է որ Արիանոսք, Նեստորականք ու Եւտիքականք արևելեան աղանդաւորներն, որ 1200 և աւելի ևս տարիէ 'ի վեր հռովմէական ընդհանուր եկեղեցիէն բաժնուեր են, մինչև ցայսօր անվրէպ կը պահեն յունկանէ խոստովանութիւնը, ինչպէս որ իրենց մաշտոցէն և ուրիշ եկեղեցական գիրքերէն յայտնի կ'ըլլայ։ Եւ որովհետև աս ալ ամենայայտնի է որ տիեզերական եկեղեցիէն բաժնուելնէն վերջը չմտուցին աս սովորութիւնս, ուրեմն կը հետևի որ բաժնուելու ատեններնին հետերնին տարին, և ինչուան ցայսօր տասուերկու և տասնուչորս դար է որ անփոփոխ կը պահեն զնոյնը, իբրև հարկաւոր միջոց մը մեղանչելէ ետև արդարանալու և կամ շնորհաց արժանանալու։

Նորաղանդից այլ և այլ աղանդները նոյնպէս կը վկայեն այս վարդապետութեանս ճշմարտութեանը. որովհետև հռովմէական եկեղեցիէն բաժնուելնէն ետև, սկիզբները կը խոստովանէին ու կ'ընդունէին խոստովանութեան

հարկաւորութիւնը, և զնոյնը արդեամբ կը կատարէին։ Ասոնց մէջ անգղիական եկեղեցին կը հրամայէ խոստովանիլ երկու դէպքի մէջ։ Առաջին՝ Երբոր ծանր մեղքի մը մէջ գտնուելով կ՚ուզեն հաղորդուիլ. Երկրորդ՝ Երբ մահուան վըտանգի մէջ ըլլան։ Իսկ պաշտօնէին տուած արձակման ձևը քիչ շատ ուղղափառաց գործածած արձակման ձևին նման է, ինչպէս իրենց մաշտոցէն կը տեսնուի, և է այսպէս. «Տէրն մեր Յիսուս Քրիստոս, որ եթող եկեղեցւոյ իւրում իշխանութիւն արձակելոյ զամենայն մեղաւորս, որ ճշմարտապէս զղջայ և հաւատայ 'ի նա, թողու քեզ զամենայն զյանցանս քո վասն մեծի ողորմութեան իւրոյ. և իշխանութեամբն զոր ետ ինձ, ես արձակեմ զքեզ յամենայն մեղաց, յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ»։ Ասկէ կը տեսնուի որ անգղիական եկեղեցին կ՚ընդունի թէ Յիսուս Քրիստոս է հեղինակ աս խորհրդոյն, և թէ խոստովանութիւնը հաստատուած է Աստուծոյ խօսքին վրայ. և թէ քահանայք՝ի Քրիստոսէ Յիսուսէ ունին կարողութիւն արձակելոյ. և թէ մեղաւորք պարտական են խոստովանիլ, մանաւանդ մեծամեծ մահուչափ մեղքերնին։ Պէտք է գիտնալ դարձեալ որ 1604ին քանի մը աղանդաւորներ ուզելով որ խոստովանութեան խորհուրդը բոլորովին վերցուի, Յակոբ Ա. թագաւորը իբրև գլուխ անգղիական եկեղեցւոյ բոլոր իրեն եպիսկոպոսներովը ժողովք ըրաւ 'ի Համբթըն–Քըր յորում սահմանեցաւ որ խոստովանութիւնն առաքելական և աստուածային օրենք ըլլալով, ժողովքը չէ թէ միայն չխափա-

ներ զայն, մանաւանդ թէ կը հաստատէ։ Նու դարձեալ ամենուն ծանօթ է, թէ ինչպէս ատ վերջերս անգղիականաց մէջէն Բիւզէիսքք ըստուածները նորէն ընդունեցան յունկանէ խոստովանութեան սովորութիւնը, և ամենուն յայտնի է թէ իրենց աղանդապետը Բիւզէյ որչափ ջանք ըրած է ասոր բանիս։

Գերմանական նորաղանդից եկեղեցին ալ նոյն կարծիքին վրան է. որովհետեւ Աւգոստայի դաւանութեան իններորդ յօդուածին մէջ այսպէս նշանակուած է. « Խոստովանութիւնը ոչ երբէք վերցուած է մեր և մեր եկեղեցեաց մէջէն. որովհետեւ Քրիստոսի Տեառն մարմինը անոնց միայն կու տանք, որոնք որ նախ լաւ քննուած ու արձակումն առած են։»

Տանիմարքացւոց ու Նորվեկիացւոց մաշտոցին մէջ յօդուած մը կայ, որ առանձնական՝ այսինքն յունկանէ խոստովանութեան վրայ կը խօսի, ուր որ դրուած է նաև արձակման ձևը, որով պիտի արձակուի մեղաւորը իր մեղքերը խոստովանելէն ետքը։

Լուտեր ինքնին չէ թէ միայն խոստովանութեան դէմ չէր, այլ և կը պնդէր թէ հարկաւոր է և թէ աստուածային կարգաւորութիւն է։ 1744ին Նսլէպէն անունով մէկը՝ գերմաներէն գրուածք մը հրատարակեց՝ Ուղղափառութիւն Լուտերի անունով, որուն մէջը Լուտերի բոլոր գրուածներէն քաղելով կը սորվեցնէ անոր վարդապետութիւնը քրիստոնէական վարդապետութեան տեղով։ Հոն՝ այս հարցմանը թէ « Արդեօք խոստովանութիւնը հարկաւո՞ր է, » այսպէս կը պատասխանէ. « Տարա-

կոյս չկայ որ մեղաց խոստովանութիւնը հարկաւոր է, և նոյն ինքն Աստուած հրամայած է։ Ծածուկ խոստովանութիւնը որ այսօրուան օրս 'ի գործ կը դրուի, մեծապէս հաճոյ է ինծի, և չէ թէ միայն օգտակար կը սեպեմ զայն, այլ նաև կարևոր։» Ասկէ կը հետևի որ Լուտերի հնարած նորադաւանդութեան մէջ խոստովանութիւնը կար, և իրեն միտքն ան էր որ պահուի։

Երբոր լուտերականք ուզեցին բոլորովին վերցնել խոստովանութիւնը, մէջերնին այնչափ ու այնպիսի շփոթութիւններ ծագեցան որ Նորիմպերկի լուտերականներն Կարոլոս Եին դեսպան խաւրելով աղաչեցին որ առանձին հրովարտակով մը հաստատէ խոստովանութեան կիրառութիւնը։ Նոյնպէս Ստրասպուրկի նորադաւանդից կրօնքի պաշտօնեայք ալ նոյն տեսակ աղերսագիր մը տուին քաղքին կառավարութեանը 1670ին, որ խոստովանութիւնը չվերցուի։

Կը տեսնուի դարձեալ որ լուտերական քահանայից մէջէն կը գտնուին ոչ սակաւք՝ որոնք համոզուած ըլլալով թէ որչափ կարևոր և օգտակար է խոստովանութիւնը, կը պահանջեն զայն իրենց հօտէն։ Պ. Կրէկուար ըսուած հեղինակը իր՝ Պատմութիւն խոստովանահարց թագաւորաց ըսուած գրքին մէջ կ'ըսէ՝ որ գաղղիացի լուտերական ժողովրդապետ մը ծածուկ կամ յունկանէ խոստովանութիւնը պարտք կը համարի և կը պահանջէ իր ժողովրդենէն որ խոստովանին։ 1806ին Տէր Կօթլիպ Մէրքէլ նորադանդ աստուածաբանը գերմաներէն գրուածք մը հրատարակեց, որուն մէջ խոստովանու-

թեան կարեւորութիւնը կը ցուցընէ։ Ահի որ լա Ռըլիժիօն օրագրին՝ 1839 Մայիսի 2 Թուին մէջ կը կարդանք, որ Նորաղանդ քահանայի մը ձեռնադրութեանը միջոց, ուրիշ խել մը հարցմունքներէ վերջը՝ ձեռնադրողը հարցուցեր է նաև անոր. « Կը խոստանա՞ս ծածուկ պահելու անոնց խոստովանութիւններն, որ իրենց խըղճէն թեթևնալու համար խոստովանին քեզի.» Որուն կը պատասխանէ ձեռնադրեալը. « Այո՛ կը խոստանամ։ »

Այսպէս ուրեմն եթէ հերետիկոսք և եթէ նորազանդք կաթուղիկէ եկեղեցւոյ թշնամիներն ևս կը միաբանին իրեն հետ ընդունելու խոստովանութեան կարևորութիւնը, և աստուածային կարգադրութիւն ըլլալը։

## § Է

### Նորաղանդից պարագլուխներն ևս կ'ընդունէին այս ճշմարտութիւնը.

Երբոր խնդրոյ մը մէջ նոյն իսկ հակառակորդները նոյն բանին ճշմարտութեանը կը վըկայեն, անկէ աւելի փափաքելու բան չմնար, և կրնայ ըսուիլ թէ դատը որոշուած է։ Այս դէպքս կը պատահի խոստովանութեան խընդրոյս մէջ ալ զոր աս գրքոյկովս կը պաշտպանենք. վասն զի նոյն իսկ Նորաղանդք, որ գործքով վերցնել կ'ուզեն այս խորհուրդը, և չեն ընդունիր զայն իբրև հարկաւոր և աստուածադիր, իրենք իրենց բերնովը հակառակը կը հաստատեն։

Նախընթաց գլխոյն մէջ տեսանք մասամբ մը անոնց այլ և այլ եկեղեցեաց կամ աղանդներուն վկայութիւնը՝ թէ ինչպէս խոստովանութեան հեղինակ և սահմանող զՔրիստոս կը ճանչնան. Հոս հիմա տեսնենք իրենց երևելի և անուանի պարագլուխներուն խօսքերը, որով կը վկայեն նոյն ճշմարտութեանը։ Ասոնցմէ առաջինն է Լուտեր, որ ինչպէս վերը տեսանք՝ կ'ըսէ. «Առանձնական խոստովանութիւնը շատ աղէկ բան է և օգտակար, մանաւանդ թէ հարկաւոր։» Լուտերի համաձայն կ'ըսէ և Կալվին. «Առանձնական խոստովանութեան շնորհիւը թողութեան կ'արժանանանք անոնցմէ՝ որոնց ըսաւ Յիսուս Քրիստոս. Զոր արձակիցէք կամ կապիցէք յերկրի, եղիցի արձակեալ կամ կապեալ յերկինս։» Ասոնց արձագանգ կու տայ Մելանթոն, ըսելով. «Արձակումը՝ որով բանալեաց իշխանութիւնը կ'արձըկէ առանձինն և 'ի ծածուկ և կը թողու զմեղս, բարի է և կը զօրէ Աստուծոյ առջև. և որովհետև այսպէս է, պէտք է ընդունիլ զխոստովանութիւնը, որով արձակումն կը խնդրենք։» Դարձեալ ուրիշ պարագլուխ մը Տիւմուլէն, այսպէս կը խօսի. «Առանձնական խոստովանութիւնը զոր քահանային կ'ընենք, ամենահին բան է. վասն զի երբ հրապարակական ապաշխարութիւնը հաստատուեցաւ, մեղաւորք իրենց հովիւներուն կը խոստովանէին առանձին իրենց մեղքերը. անոնք ալ հրապարակական ապաշխարանք կը դնէին վրանին՝ եթէ այնպէս արժանաւոր դատէին, ապա թէ ոչ ուրիշ կերպով կը տնօրինէին։» Մոնթակիւ Չէսթրի եպիսկոպոսը այս

դարձուածքներով կ'ըսէ։ « Գաղտնի խոստովանութիւնն առ քահանայն՝ եկեղեցւոյ մէջ հին սովորութիւն մըն է, գեղեցիկ և օգտակար, միայն թէ խոհականութեամբ կատարուի։ Խնդրողին որ կարօտութիւն ունի՝ չենք զլանար. մանաւանդ թէ կը յորդորենք 'ի նոյն, և պարտք ևս կը դնենք անոնց որոնք 'ի դրունս մահու հասած են։ » Անտրէվ եպիսկոպոսը մեկնելով Քրիստոսի Տեառն մերոյ այս խօսքը. Երէ ումեք թողուցուք՝ թողեալ լիցի նոցա՝ կ'ըսէ. « Այս Աստուծոյ հրամանը ըլլալով, մեք չենք կրնար չափաւորել զայն կամ սեղմել։ Երեք բան կայ հոս և երեք դէմք. Նոցա ըսելովը՝ կ'իմացուին մեղաւորք. թողեալ լիցի ըսելովը՝ կ'իմացուի Աստուած. և թողուցուք ըսելովը՝ քահանաները։ Այս խօսքով ուրեմն երեք բան կը բացատրէ և երեք բան կը պահանջէ. և ուր որ երեք բան կը պահանջուի, երկուքը միայն բաւական չեն ըլլար։ » Այսչափ և այսպիսի բացայայտ վկայութիւններ կարծեմ բաւական են ցուցընելու, թէ Աստուծոյ միայն խոստովանիլը բաւական չէ արդարանալու համար, ինչպէս արդի Նորաղանդից շատերը կըսեն. մինչդեռ Քրիստոս սահմանեց որ մարդկանց ալ խոստովանինք, որ է ըսել քահանային՝ պաշտօնէին Աստուծոյ։ Իսկ Նորաղանդից այս փոփոխամտութիւնը, իրենց մոլորութեանը հետևանքն է։

§ Ը

*Այս ճշմարտութիւնս կը հաստատուի դարձեալ վկայութեամբ անհաւատ և նորագոյն իմաստասէրներուն.*

Անհաւատ իմաստասիրաց մէջ առաջին տեղին ունի ըստ գերազանցութեան Վոլթէռ՝ որ լրբութեան ու ամպարշտութեան պարագլուխն է։ Արդ սա իրեն գրուածոց մէջ այլ և այլ տեղեր խոստովանութեան վրայ՝ մեծամեծ գովեստներ կու տայ յարգութեամբ։ Իր փիլիսոփայական բառագրոց մէջ 'ի յօդուածն ժողովըրդապետ կ'ըսէ. «Խոստովանութիւնը գերազանց բան է, ու մեծամեծ եղեռնագործութեանց սանձ. Հին և անծանօթ ժամանակներէ 'ի վեր ազգ և ազինք սովորութիւն ունէին խոստովանելու, իրենց ամեն հին խորհրդոց կատարմանը ժամանակ։» Նոյն բառագրքին մէջ 'ի յօդուածն խոստովանութեան կը յաւելու. «Խոստովանութիւնը այնչափ հին է, որչափ մարդկային ազգը։» Դարձեալ 'ի Ճաշակն տիեզերական պատմութեան, այսպէս կը բացատրէ իր միտքը։ «Խոստովանութիւնը ամենածածուկ եղեռնագործութեանց մեծ սանձ մը կըրնայ սեպուիլ։ Հին իմաստունները՝ աս օգտակար սովորութեանս ստուերը միայն ընդուներ էին։ Այս տեսակ խոստովանութեան սովորութիւն կար Եգիպտացւոց և Յունաց մէջ քաւութեան տօներուն ատեն։»

Նոյնպէս Տարեգրութիւն կայսրութեան գըր-

քին մէջ, այսպիսի տեսութիւն մը կ'ընէ. «Հռովմէական եկեղեցւոյ թշնամիները որ այսպիսի օգտակար բանի մը դէմ զինեցան, մարդկանց եղեռնագործութեան ամենէն զօրաւոր սանձը վերուցին...: Նոյն իսկ հին իմաստունք աս բանիս օգտակարութիւնը հասկըցեր էին. թէ որ իրենք չէին կրցած զամենքը պարտաւորել աս բանիս, բայց գոնէ ընել կու տային անոնց՝ որոնք որ աւելի անարատ վարք մը անցնելու փոյթ ունէին...: Այսպէս ուղղափառ կրօնքը պահեց այն սովորութիւններն, որոնց ստուերը միայն՝ Աստուծոյ ուզելովը նկատեր էր մարդկային իմաստութիւնը և ընդուներ:» Վոլթեռէն վերջը հարկաւոր կը սեպենք քանի մը վկայութիւն ալ Ռուսսոյէն առաջ բերել. որ՝ ողորմութեան գործքերը աւետարանական սիրոյ ծնունդ կոչելով կ'ըսէ: «Որպիսի՜ հաստուցումներ ու դարմաններ ընել չտար քրիստոնէից՝ խոստովանութիւնն զոր կ'ընեն: Քանի՜ քանի հաշտութիւններ ու ողորմութիւններ գործել չտար հաղորդութիւնն՝ երբ ժամանակը կը մօտենայ:»

Թովմաս Ռայնալ Վոլթեռի անուանի աշակերտը, որ նշանաւոր է քրիստոնէից դէմ ունեցած ատելութեամբը, իր՝ Վաճառականութեան փիլիսոփայական ու քաղաքական պատմութեան մէջ այսպէս կը խօսի. «Ճիզուիտեանք Բարակուայի մէջ աստուածպետական կառավարութիւն հաստատեր էին, բայց քրիստոնէական կրօնքին մեծապէս օգտակար բանով մը՝ որ է խոստովանելու սովորութեամբը, որ ամենաօգտակար բան է...: Ասով յանցաւորն ինքնիրմէ

դատաւորին ոտքը կ'երթար. և փոխանակ պատժէն փախչելու, ինքը ծունկի վրայ եկած զնոյնը կը խնդրէր..: Ամենէն աղէկ կառավարութիւնը աստուածպետականն է ըստ ինքեան. բայց խոստովանութեան ատեանն ալ միատեղ պէտք է որ ըլլայ: » Մարմոնթէլ խոստովանութեան համար այսպէս կը գոչէ. « Ո՜հ ի՜նչ փրկաւէտ նախապահեստ դեղ մըն է երիտասարդական հասակին բարուցը պահպանութեանը համար ամեն ամիս խոստովանիլը. » (Յիշատակագիրք Մարմոնթելի Գլ. 1. Գիրք Ա.): Լէյպնից՝ իր Դպրոցին աստուածաբանութեան ըսուած գրոցը մէջ կը խօսի խոստովանութեան վրայ՝ համարելով զայն իբրև աստուածային պատուիրան. « Աստուածային պատուիրան մըն է, կըսէ, որ ով որ կ'ուզէ սրբուիլ՝ քահանային պէտք է ներկայանայ, խոստովանի իր մեղքերն, և ըստ դատելոյ քահանային յանձն առնու պատիժ մը մեղացը քաւութեանը համար..: Ոչ ոք կրնայ երկբայիլ որ աստուածային իմաստութեան պատկանաւոր է այս օրինադրութիւնս: Ասիկայ քրիստոնէական կրօնքին գովելի ու յարգոյ բաներէն մէկն է, որ նաև Ճաբոնացիներն ու Չինացիքը զարմացուց. որովհետև խոստովանելու հարկը շատերը մեղանչելէն ետ կը կեցընէ, և մանաւորապէս զանոնք՝ որոնք որ սովորած են 'ի մեղս. անանկ որ ես կը կարծեմ թէ բարեպաշտ, ծանրաբարոյ ու խոհեմ խոստովանահայր մը՝ հոգւոց փրկութեան համար Աստուծոյ ձեռքը մէկ մեծ գործիք մըն է: » Ուրիշ մը Տա Սա-Ուընան, այսպէս կը գովէ զխոստովանութիւնը. « Գաղտնի

խոստովանութիւնը ամենահին սովորութիւն մըն է, որով կը յայտնենք քահանային մեր խիղճը իր ամենէն մանր պարագայներովը հանդերձ. և է ամենաօգտակար սովորութիւն, զոր ոչ ոք կրնայ ուրանալ։ Վասն զի բարեկարգութիւնը պահելէն աւելի՝ ինչ ուրիշ օգտակար բան կրնայ ըլլալ եկեղեցւոյ համար։ Ժողովուրդն հարկաւոր բաներու մէջ հրահանգելու համար՝ ասկէ աւելի յարմար ու պատշաճ բան կրնա՞յ ըլլալ։ Խոստովանութիւնը հաւատոյ նեցուկն է, փրկութեան ճամբուն առաջնորդ, սնունդ և ճարակ հլութեան և ուղղախոհութեան, և վարժապետ առաքինութեան։» Լորտ Ֆից-Ուիլլեամ այնպէս համոզուած էր խոստովանութեան կարևորութեանը վրայ, որ այս ոճով կը խօսի. «Անկարելի բան է, կըսէ, առաքինութիւնն, արդարութիւնն ու բարոյականը հաստատուն հիմանց վրայ խարսխել, առանց ատենի խոստովանութեան։» Պ. Բիւզէյ գլուխ իր անուամբը եղած աղանդին, հարցուելով թէ հոգւոյ փրկութեան համար ինչ ընելու է, այսպէս կը պատասխանէ. «Որովհետև մասնաւորապէս ինձմէ խորհուրդ կը հարցնես, ուրեմն իմ ըսելիքս այս է՝ որ ամենէն առաջ հարկաւոր է ընդհանրական խոստովանութիւն մ'ըլլալու պատրաստուիլ, Աստուծոյ ձեռնտըւութիւնը խնդրելով։ Թէ որ դուն ճանչուոր մը չունիս որ զքեզ կարենայ խոստովանցնել, ես ապահով եմ որ (այս անուն) Ցարգելլին կը խոստովանցընէ։ Աղաչէ զԱստուած որ զքեզ լուսաւորէ որ դու զքեզ ճանչնաս։ Ասկէ զատ՝ անցուցած վարքդ այլ և այլ միջոցի բաժնէ. և

քննէ իւրաքանչիւր միջոցը առանձին թէ արդեօք տասնաբանեայ պատուիրանաց և եօթն մահուչափ մեղաց մէջ պակսե՞ր ես՝ խորհրդով, բանիւ և գործով, և ի՞նչպէս պակսեր, և այլն։ »

§ Թ.

Թէ ինչպէս շատերը այնպիսի կարծեցեալ իմաստակներէն իրենց մահուանը ատեն խոստովանեցան.

Տարակոյս չկայ որ մեր պաշտպանած խընդրոյն ճշմարտութեանը մեծապէս կը սատարէ կրօնքի թշնամեաց բերնին վկայութիւնը, ինչպէս նախընթաց գլխոյն մէջ տեսանք, որ կը գովէին զխոստովանութիւնն և կ'ուզէին որ նոյնն 'ի գործ դրուի։ Բայց կրնան ըսել ոմանք, թէ այդ խօսքերն ըսեր են այն իմաստասէրները՝ ոչ թէ մտաց ու ներքին համոզմամբ, այլ քաղաքական կամ մարդկային տեսութիւններով, սնափառութեամբ, և կամ տղայական ու սնոտի զարմացմամբ մը։ Արդ ցըցունելու համար որ անկեղծութեամբ էր տուած վկայութիւննին, և թէ ասոնց մէջէն շատերը արդեամբ ալ կը փափաքէին խոստովանիլ երբոր կարենան, անօգուտ չըլլար հոս յիշատակել այն իմաստասիրաց շատերուն խոստովանելու համար ցըցուցած փափաքը, և շատերուն ևս իրօք խոստովանիլը՝ իրենց մահուանէն առաջ, տեսնելով աշխարհքիս ընդունայնութիւնը, և հանդերձեալ կենաց երջանկութիւնն ու թշուառութեան անսուտ ստուգութիւնը։

Ասոնց մէջ ամենէն առաջ յիշատակութեան արժանի է Պուլէնվիյեէ, որուն գրուածոցը մէջ կը վխտան կրօնքի դէմ երգիծանքներ, ու քրիստոնէութեան հակառակ սկզբունքներ, աս այն մարդն է որուն համար կ՛ըսէ Վոլթէռ թէ Գաղղիոյ առաջին իմաստունն ու գիտունն է։ Ասիկայ ճշմարտապէս դարձի գալով մեռաւ 1722ին 'ի գիրկս հօրն Պորտաի, խոստովանելով, հաղորդուելով ու վերջին օծումն ընդունելով։ Ըստ վկայութեան իր խոստովանահօրը, սակաւք իրմէ աւելի լաւ ու բարի մահ կրնան ունենալ։

Բենեդիկտոս Մէյլէ որ անուանի է իմաստասիրաց մէջ իր երկրաբանական դրութեամբքը, որովք կը հակառակի Մովսեսի պատմածներուն, և կուսակից է միանգամայն խռովարարաց, յետս կոչեց իր մոլորական ու վնասակար դրութիւններն՝ խոնարհ խոստովանութեամբ մը. որով հաշտուեցաւ Աստուծոյ ու Եկեղեցւոյ հետ, և մեռաւ 1738ին կրօնքի ամենայն նպաստներով զօրացած։

Լա-Մէթրի նիւթական փիլիսոփան՝ որ գիրք մը գրեր և Մարդն մեքենայ է կըսէր, իր կենաց վերջերը հասած ժամանակ՝ ճանչնալով իր անճոռնի իմաստասիրութեան այլանդակ ծռութիւնը, գարշեցաւ ու սոսկաց իր փիլիսոփայութենէն. խոստովանեցաւ և հրապարականն յետս կոչումն ըրաւ՝ ուզելով որ բոլոր աշխարհք իմանայ իր զղջումը։ Խմբագիր փիլիսոփայութեան ըսուած գրոց մէջ այսպէս գրուած է. «Զգալով որ մահը կը մօտենար, հրապարակաւ իր մոլորութիւնները յետս կո-

չեց. կանչեց քահանայ մը, խոստովանեցաւ՝ առանց տարակոյս մը Թողլու իր զղջմանը վը-րայ։» Հայրն Հայէ՝ իր Յաղագս Աննիւթականութեան հոգւոյ ըսուած գրոցը մէջ՝ Մէթրիի վրայ խօսելով՝ կ'ըսէ. «Մեռաւ՝ մեծ ցաւ մը ցըցունելով իր նիւթականութեան արտառոց կարծիքներու մէջ ինկած ըլլալուն համար։ Ես զայս իմացայ անկէ որ իր վերջին հառաչանքներն ընդունեբ էր 'ի Պեռլին։»

Պուլանժէ՝ որ Յայտնութիւն հնութեանց կոչուած անցեալ դարուն ամպարիշտ ու վնասակարագոյն գրոց հեղինակն է, իր մահուան անկողնին մէջ սաստիկ ցաւելով ըրածին վրայ, կատարեալ զղջմամբ խոստովանեցաւ Լամպէր կանոնիկոսին. ու 1759ին սեպտեմբերի 16ին մեռաւ, ծանուցանելով որ չէ Թէ տրամաբանութիւնն եղեր էր զինքը մոլորցնողը, այլ փառասիրութիւնն ու փիլիսոփայական ընկերութեանց մէջ տրուած գովեստներն իր ձեռագիր գործոցը վրայ. ուստի կ'ուզէր որ բոլոր այն գրուածքները կրակը նետուին. բայց կարելի չեղաւ, որովհետև այն իմաստակաց ընկերութիւնները գողցան և աներևոյթ ըրին զանոնք։

Բազմահռչակն Մոնթէսքիէօ՝ որ իրեն Ոգի օրինաց և Ազատութիւն խորհելոյ ըսուած գիրքերովը փիլիսոփայներէն մինչև յերկինս բարձրացած է, երբոր իմացաւ որ կենացը վախճանն հասեր է, կանչեց բերել տուաւ քովը զՀայրն Քասթէլ Յիսուսեան կրօնաւորը, և իր բարեկամը. և աղաչեց որ իր կրօնակից քահանաներէն մէկը բերէ որուն կարենայ խոս-

*տովանիլ։ Հայրն Քասթէլ դարձաւ բերելով իր հետը զՀայրն Ռուէթ, որուն խոստովանեցաւ Մօնթէսքիէօ մեծաւ զղջմամբ. և 'ի ներկայութեան Ժողովրդապետին և ուրիշ երկու քահանայից, Էօթիյեաք կոմսին, իր կնոջը, բժշկին, Հարցն Քասթելի և Ռուէթի և ուրիշ ազգականներու և բարեկամներու, մերժեց և զատապարտեց ինչ որ կրօնքի ու բարոյականի դէմ բան կար իր գրուածոցը մէջ. և խոստացաւ որ եթէ ժամանակ ունենայ՝ ուղղէ ինչ որ անտեղի և ուղիղ իմաստասիրութեան և աստուածաբանութեան դէմ գրած է։ Եւ այս սրտաշարժ տեսարանէս վերջը՝ մեծաւ եռանդեամբ վերջին Թօշակը ու օծումն ընդունեցաւ, ձեռքերը ափկից բռնած՝ ձայնակից ըլլալով քահանային ամեն մէկ ըրած աղօթիցը, և այսպէս մեռաւ 1755ին փետրվարի 10ին։ Այս պատմութեանս մանրամասն ստորագրութիւնը կ'ընէ Հայրն Ռուէթ առ Կուալթիէրի գրած նամակին մէջ, որ էր Նուիրակ Պապին 'ի Գաղղիա։*

*Տիւ-Մարսէ ամպարիշտ անտարբերեայն, որ անկրօնութեան այնպիսի ամպարիշտ դպրոց մը բացեր էր՝ որ տէրութիւնը գոցել տուաւ, և որուն Գաղղիոյ նշանաւոր ընտանիքներէն մէկը երեք որդիքը դաստիարակելու համար երբոր կը յանձնէր, հարցուց ծնողացը թէ՝ ի՞նչ կրօնքի մէջ կ'ուզէք որ դաստիարակեմ. սա, կըսեմ, որուն կրօնքի դէմ ունեցած ատելութիւնը իր գրոցը մէջ կ'երեւնան յայտնապէս, վերջի շունչերուն հասնելով, լուսաւորուեցաւ Աստուծոյ շնորհքովը, ճանչցաւ իր մեծամեծ*

սխալմունքները, և ուզելով եկեղեցւոյ հետ հաշտուիլ, խոստովանեցաւ ու հաղորդուեցաւ. և երբոր վերջին խորհուրդները կ՚ընդունէր, այնպիսի զգածեալ կերպով խօսեցաւ քահանային, որ բաւական էր իմացնելու իրեն կենդանի հաւատքն ու խղճին ցաւն և կսկիծը։ Տ՚Ալամպէր գովելով զինքը կ՚ըսէ. «Անցեալ տարուան (1756) յունիս ամսուն մէջ հիւանդացաւ. և տեսնալով որ վտանգի մէջ է, խնդրեց զխորհուրդս (եկեղեցւոյ) և ընդունեցաւ մեծաւ զգաստութեամբ և անվրդով ոգւով։» Իսկ Վոլթէռ 1757ին դեկտեմբերի 6ին գրելով առ Տ՚Ալամպէր՝ կ՚ըսէ. «Կիրքս կ՚ելլէ Տիւ-Մարսէի մեռնելու ատեն ըրած վատ թացիկութեանը վրայ։»

Մօբէրթիւի անուանի աստեղաբաշխ և կաճառորդ գիտութեանց ճեմարանին, զոր Վոլթէռ կը կոչէր «Գերազանց հանճար, ամենամեծ չափաբերական, և Նոր Արքիմեդէս մը,» որն որ իր գրուածոցը մէջ կարծես թէ նիւթականութեան հակեալ կ՚երևայ և անցեալ դարուն անկրօն փիլիսոփայութեանը բոլորովին հակամէտ, իր վերջին հիւանդութեանը ժամանակ՝ երբ 'ի Պազիլէա էր, բոլորովին ինքն իրեն գալով կատարեալ կրօնասէր մը եղաւ. խոստովանեցաւ զղջալով 'ի սրտէ իր ամեն գրուածներուն վրայ, ու մեծաւ եռանդեամբ սուրբ խորհուրդներն ընդունելով՝ մեռաւ 1758ին։ Իր կրօնական պարտքերը կատարեց ձեռամբ երկու վեղարաւոր հարց, որոնք ինքը ուզեր ու կանչեր էր։ Վոլթէռ ասոր համար ալ գրելով Տ՚Ալամպերի՝ կ՚ըսէ. «Ի՞նչ կ՚ըսես դու Մօբէր-

Թիւլին համար, որ երկու վեղարաւոր կրօնաւորաց մէջ մեռաւ։»

Ֆօնթընէլ որ իմաստասիրական դպրոցը հաստատողներէն մէկն է, մեռաւ 'ի Բարիզ 1757ին յունուարի 11ին։ Ինչպէս յայտնի է՝ սուր եւ վառվռուն մտքով մարդ մըն էր, մեծ ճարտասան եւ բազմահմուտ 'ի բնաբանութեան եւ 'ի չափաբերութեան. բայց նոյն դարուն ամպարիշտ փիլիսոփայութեամբը տոգորուած, գրեց Պատմութիւն պատգամաց ըսուած գիրքը՝ զուարճալի ոճով, բայց մի չարասիրտ եւ սկեպտիկեան ոգւով։ Իր կենաց վերջի տարիները շատ ախորժով սահէպ կը տեսնուէր Հայր Բեռնարդոս վեղարաւոր կրօնաւորին հետ։ Յունվարի 1ին անսովոր հիւանդութեամբ մը հիւանդանալով՝ կանչեց ինք իր ուզելովը Սուրբ Հռոքոսի եկեղեցւոյն ժողովրդապետը, եւ խնդրեց եկեղեցւոյ սուրբ խորհուրդները. զորոնք ընդունելով մեռաւ ուղղափառապէս. «Նա, կ'ըսէ Լուքքէսինի, որ ամեն բան կը ծաղրէր, աղէկ իմացաւ որ մահուան առեն կատակ չըլլար։»

Մարքիզն Տ'Անժէր որ մեռաւ 1771ին, ծանօթ է ամենուն իր խենդ երեւակայութեամբն ու անհաւատութեամբը։ Ասիկա Բրովանսի մէջ հիւանդանալով՝ սկսաւ իր խենդ կարծիքներուն վերայ երկբայիլ. եւ հաւատքի ճշմարտութեանց վերայ լաւ մը մտածելէն վերջը, համոզուեցաւ կրօնից ճշմարտութեանը։ Իր եղբայրն՝ Էկիւյլեի նախագահը, կը պատմէր թէ ինչպէս աս ամբարտաւան ամպարիշտը վերջապէս խոնարհեցաւ ու խոստովանեցաւ. եւ մեռնելու առեն կ'աղաչէր քովը կեցող քահա-

նային որ տուն տայ իրեն թէ ինչ բանի վերայ պիտի մտածէր և ինչ աղօթք պիտի ընէր ; այս ժամանակաւորէս ահաւոր յաւիտենականութիւնն անցնելու ժամանակ։ Տ'Անժէր մարքիզին դարձին ու խոստովանութեանը կը վկայէ նաև Փրեդիրիկոս Բ. իրեն թղթագրութեանցը մէջ։

Թուլէն՝ հեղինակ գրոցն Ցաղագս բարոց ; ուր որ բնական բարոյականէ զատ՝ ոչ կրօնք և ոչ արտաքին պաշտամունք կուզէ ընդունիլ, մահուան դուռը հասած ատեն 1772ին, դատապարտեց յայտնապէս իր գայթակղական ընթացքն ու գրութիւնները, ընդունեցաւ սուրբ խորհուրդներն և մեռաւ բարեպաշտութեամբ։ Վերջին թոշակն ընդունելէն առաջ իր բարեկամներն ու վեշտասանամեայ որդին անկողնին քովը կանչել տալով՝ խօսեցաւ այսպէս. « Որդեակ իմ, լսէ ու միտքդ պահէ ըսելիքներս. Ես Աստուծոյ առջևն ելլելու վրայ եմ, որպէս զի կենացս հաշիւը տամ. ես վշտացուցեր եմ զինքը, և իրեն ողորմութեանը կարօտ եմ...։ Ես գայթակղեցուցեր եմ զքեզ իմ անկրօն ընթացքովս ու սաստիկ աշխարհասէր սկզբունքներովս։ Կը ներես ինծի. կը կատարես զայն ամենայն ինչ որ կը պահանջէ Աստուած ինծի ներելու համար։ Արդեօք կարենաս պիտի սորվիլ ինքն իրենդ իմ սորվեցուցած սկզբունքներուս դէմ սկզբունքներ...։ Լուր որդեակ այն ճշմարտութիւններն՝ որ հիմա թէ և ուշ՝ կը ցըցունեմ քեզի։ Վկայ ըլլայ այն Աստուածը զոր հիմա պիտի ընդունիմ, և որուն առջև պիտի ելլեմ քիչ ատենէն, որ՝ եթէ բանիւք, ե-

թէ գործովք և եթէ գրութիւններովս քրիստոնեայ չեմ երևցեր, ոչ եթէ մտքիս համոզմունքովս եղեր է այն, այլ մարդկային նկատմունքով, փառասիրութեամբ և կամ ասոր ու անոր հաճոյ ըլլալու համար...։ Ծունր դիր որդեակ իմ, և աղօթակից եղիր անոնց՝ որ կը տեսնեն զիս հոս ու ըսածներս կը լսեն. խօսք տուր Աստուծոյ որ այս իմ վերջին խրատներս պիտի պահես, և աղաչէ սրտանց որ ներէ ինծի։»

Գուկիւէ խորունկ երկրաչափ և Արքունի ճեմարանին գիտութեանց անդամ, որուն մահուանը համար ըսաւ Տ'Ալամպէր. «Կորսնցուցինք ճեմարանին ամենէն մեծ գլուխը,» աս մեծ մարդուս սրտէն դժբախտութեամբ հաւատոյ նշոյլն անգամ մարեր էր։ Բայց ծերութեանը ժամանակ՝ Լապէրթարի Տօմինիկեան Հօրը անաստուածութեան դէմ քարոզները լսելով՝ համոզուեցաւ, և իր մոլորութիւնները մէկդի թողլով՝ խոստովանեցաւ։ Բայց խոստովանանք ըլլալէն առաջ, բազմութեան առջև մեծաւ ցաւով սրտի իմացուց թէ ինչ պատճառաւ ինքը անաստուածից կողմը եղած էր. «Ես, ըսաւ, անաստուած եղայ, վասն զի իմ բարքս ապականեցին. Հայր իմ, աւելի սիրտս քան թէ ոգիս կարօտ է բժշկուելու։» Այնպէս անկեղծ էր իր դարձը, որ ինչուան ցմահ հաստատուն մնաց, և մեռաւ յամին 1758ին օգոստոսի մէջ։

Պիւֆոն, որ իրեն երկրաբանական դրութեամբքը ոչ սակաւ սուրբ Գրոց կը հակառակի, և ան պատճառաւ բոլոր անաստուածներէն գովուած է, իր կենաց վերջերը իրկար-

ծիքներէն հրաժարելով, Հօրն Իգնատիոսի Պու-կօլ վերարատոր քահանայէն խոստովանեցաւ մեծաւ զղջմամբ, և իրեն առջևը յետս կոչումն ըրաւ բոլոր իր գրուածոցը, և մասնաւորապէս իր բնական պատմութեանը, և այսպէս քրիս-տոնէաբար հոգին աւանդեց իր խոստովանա-հօրը բազկացը մէջ յամին 1788 'ի 16 ապրիլի։

Կոմսն Տը-Թրէսան Վոլթեռի բարեկամ, և հեղինակ շատ մը անկրօն գրուածոց, մեռնելէն ութը օր առաջ 1783ին ամենասուրբ խոր-հուրդներն ընդունեցաւ 'ի մեծ շինութիւն այլ-ոց։ Տ'Ալամպէր լսելով որ Տը-Թրէսան շատ անգամ քահանայի մը հետ տեսնուեր է, ե-լաւ իրեն գնաց ըսելով՝ որ վրադ շատ բաներ կը լսուին ու կը խօսուին աշխարհքիս մէջ որ քու բարուցդ և համբաւոյդ պատիւ չեն ըներ։ Բայց Տը-Թրէսան դժկամակութեամբ լսեց այս ազդարարութիւնը, և Տ'Ալամպէր չփոթած դուրս ելաւ քովէն, և թող տուաւ որ խաղա-ղութեամբ մեռնի։

Տը-Լանկլը՝ որ քանի մը ամպարիշտ գրու-ածք հաներ էր, և մասնաւորապէս ճեմապար-հորդութիւն մը 'ի Սպանիա, որուն մէջ երես չկայ որ կրօնքի դէմ նախատինք չըլլայ, 1807ին հիւանդանալով՝ սկսաւ խիղճը տանջել զինքը իր անցեալ կենացը համար, տեսնելով աՀա-ւոր ապագայն։ Աս յուզմանս մէջ քահանայ մը ուզեց, և մեծ ուրախութեամբ ընդունեցաւ զինքը երբոր քովը բերին։ Ամենայն փութով կարգի գրաւ իր հոգւոյն հաշիւը, սուրբ խոր-հուրդները զղջմամբ ընդունեցաւ, և քրիստո-նէական գեղեցիկ մահուամբ մը մեռաւ 1807ին

հոկտեմբերի մէջ։ Ասոր մահուանը համար մեծահռչակն Թորրիչելլի այսպէս կ'ըսէ. « Զարմանալի՜ փոփոխութիւն մը ներգործեալ ձեռամբն Աստուծոյ. Այն Տը-Լանկլը որ խոստովանութիւնը իբրև անտանելի լուծ մը կը սեպէր, և կը պարծէր իր բանի մը չհաւատալուն համար. այն որ խոստովանութիւնը կ'արհամարհէր, ծաղր ընելով զայն իբրև ինքնահաճոյ մարդկային հնարք մը. արդ լուսաւորեալ և Աստուծոյ շնորհքէն շարժած՝ կ'ընդունի զայն իբրև ճշմարիտ խորհուրդ կարգեալ 'ի Յիսուսէ Քրիստոսէ։ »

Պ. Ռոպինէ՝ Յաղագս բնութեան անուանեալ գրոց հեղինակը, որուն մէջ ամեն տեսակ արտաքոյ կարգի յանդուգն և արտառոց կարծիքներ կը գտնուին Աստուծոյ և իր ստորոգելեացը դէմ, հոգւոյ և նիւթոյ վրայ, մեռնելէն քանի մը ամիս առաջ հաւատքի գալով, այս յայտարարութիւնս հրատարակեց. « Մօտեցած ըլլալով ժամանակը որ իմ խորհրդոցս, բանիցս ու գործոցս հաշիւը պիտի տամ Աստուծոյ, հրապարակաւ և անկեղծութեամբ յետս կը կոչեմ ինչ որ ուղղափառ հաւատոց դէմ մոլորական բան մը ըսեր եմ՝ իմ քանի մը գրուածոցս մէջ, եթէ երիտասարդութեանս ժամանակ ըլլայ և եթէ յեղափոխութեան միջոց, և ամենուն համար ալ թողութիւն կը խնդրեմ Աստուծմէ և մարդիկներէն։ Կը ծանուցանեմ որ կ'ուզեմ ապրիլ և մեռնիլ 'ի ծոց կաթուղիկէ, առաքելական և հռովմէական սուրբ եկեղեցւոյ։ » Այս չափովս ալ գոհ չըլլալով, երբոր վերջին խորհուրդներն կ'ընդունէր, նորոգեց

*իր հաւատոյ դաւանութիւնը ու մեռաւ 'ի Բէն 'ի 24 մարտի 1820, ամենայն քրիստոնէական զգացմամբ՝ օրինակ և շինութիւն տալով տեսնողներուն։*

*Լարշէ անուանի յունագէտն՝ որ իր ժամանակին այլ և այլ փիլիսոփայից հետ ունեցած մտերմութեամբը՝ անկրօն եղեր էր, և իր երևելի գրուածոցը մէջ շատ տեղ ամբարշտական առաջարկութիւններ ըրեր էր, ինքն իրեն գալով սուրբ խորհուրդներուն մօտեցաւ. և յամին 1822 դեկտեմբերի 22ին բարեպաշտ քրիստոնէի մը զգացմունքներով մեռաւ։ Մեռնելէն շատ տարի առաջ գեղեցիկ յետս կոչումն ըրեր էր. ուր կ'ըսէ թէ քանի մը կարծեցեալ փիլիսոփայից հետ խօսք դրեր էր աշխատելու՝ որ եթէ կրնան՝ քրիստոնէական կրօնքը վերցնեն աշխարհքէս, և աս մտքով ծանօթութիւններ դրած էի Հերոդոտոսի գրոց տըպագրութեանը մէջ. բայց արդ անկեղծաբար կը մերժեմ այն ամեն մտածութիւններն, և բոլորովին համոզուած ուղղափառ և հռովմէական եկեղեցւոյ ամենայն վարդապետութեանց ճշմարտութեանը, անոր գիրկը կ'ուզեմ ապրիլ մեռնիլ, և կը խնդրեմ թողութիւն յԱստուծոյ և 'ի մարդկանէ։*

*Յովհ. Մարտինոս Տը-Բրատ եկեղեցւոյ հետ հաշտուելով՝ Պրեզլաւի եպիսկոպոսին խոստովանեցաւ. և իր յետս կոչմանը մէջ աս նշանաւոր խօսքերս կըսէ. « Ամբողջ կեանք մը բաւական չէ իմ անցեալ կենացս վրայ լալու, և Աստուծոյ ինծի տուած շնորհացը համար շնորհակալ ըլլալու։ »*

Լը-Ռուայ՝ քարտուղար այն ամբարիշտ ճեմարանին որ կը գումարուէր 'ի Բարիզ ընդ նախագահութեամբ Պ. Հօլպախի, երկնային լուսով լուսաւորուած մերժեց և ոտքի տակ առաւ բոլոր փիլիսոփայական անկրօն սկզբունքներն, և լմնցուց իր կեանքը զօրացեալ ամենայն կրօնական նպաստներով, և անկեղծ զղջմամբ լալով իր սխալանաց վրայ։

Շառնուա՝ նշանաւոր իր մոլեկան անհաւատութեամբը՝ որ մարդկային Բանը միայն կը պաշտէր, դատապարտուելով խռովարարներէն՝ որ Արբոյն Գերմանոսի Աբբայարանին մէջ սպաննուի, ճանչնալով իր սխալմունքները՝ այսպէս խօսեցաւ քովը եղող քահանային. « Պէտք չէ կէս մը փոխուիլ. ես քրիստոնեայ եմ. լսէ իմ յանցանացս խոնարհ խոստովանութիւնը. և որովհետև Թողութիւն կը խոստանաս, պէտք է որ ես ալ արդարութիւնը ամբողջապէս կատարեմ. արդ ուրեմն լսէ խոստովանութիւնս։ » Խոստովանութիւնը լմնցընելէն վերջը, երկնային ուրախութեամբ մը լեցուեցաւ սիրտը, և կատարեալ ապաշխարողի մը պէս յանձն առաւ իր դատակնիքն ու մեռաւ։

Ռէյնալ՝ հեղինակ այն ամբարշտական գրոց՝ որ կը կոչուի Փիլիսոփայական և քաղաքական պատմութիւն Եւրոպացւոց Հնդկաստանի մէջ ունեցած կալուածներուն և վաճառականութեանը, կնքեց իր անցաւոր կեանքը անկեղծ դարձ մը ընելով 'ի ծոց ուղղափառ կրօնից, որով կ'ըսէ իր վարուց գրիչը թէ՝ « Մեծ օրինակ մը եղաւ յետնոց։ »

Անուանին Լահարբ, որ դժբախտաբար խիստ

շատ ամբարշտական գրուածքներ հաներ էր, վերջը դարձի գալով հզօր ջատագով եղած է ուղղափառ կրօնից, զորն որ առաջ կը պարսաւէր ու ծաղր կընէր։ Այնպիսի եռանդեամբ ու զղջմամբ ընդունեցաւ եկեղեցւոյ վերջին խորհուրդներն, այնպիսի ցաւ ու կսկիծ մը ցըցուց իր անցեալ կենացը վրայ, անանկ վառեալ իղձ մը միանալու յաւիտեան Աստուծոյ հետ, վերջապէս այնպէս կուլար, կը խօսէր ու կը շարժէր, որ ներկայ գտնուողները չկրցան լացերնին բռնել։

Ֆէպրոնիոս՝ անուանի իր ամենավնասակար գրոցը համար՝ որ կը կոչուի՝ Վիճակ Եկեղեցւոյ և օրինաւոր իշխանութեան Քահանայապետին Հռովմայ, մեռաւ նոյնպէս զղջալով իր սխալմանցը վրայ. բայց մեռնելէն շատ առաջ յետս կոչումն ըրեր էր իր գրուածոցը։

Ճիաննոնէ նշանաւոր՝ իր Նէապօլսոյ քաղաքական պատմութեամբը, որով եկեղեցւոյ իրաւանց դէմ կը գրէր, երբոր աչքը բացուելով ճանչցաւ ճշմարտութիւնը, և կատարեալ զղջմամբ խոստովանեցաւ իր սխալմունքները, և երկայն գրուածքով մը յետս կոչեց ինչ որ 'ի վնաս Սուրբ Աթոռին և Եկեղեցւոյ ըսած էր։

Մելքիոր Ճիոյա որ շատ համբաւեալ էր եկեղեցականաց ու եկեղեցւոյ դէմ գրելուն համար, ծանր հիւանդութեամբ մը հասնելով այն ժամուն՝ յորում ամեն աշխարհքի խաբէական պատրանքները կը փարատին և ճշմարտութիւնը պայծառ կը տեսնուի, խոստովանեցաւ Հօրն Պարսեկայ բառնաբեան կրօնաւորին. և որովհետև ուժէ ինկած էր, իր խոստովանահօրը

բերնովներուն խնդրեց իր տուած դայթակղութեանցը հոն ներկայ գտնուողներէն՝ կրօնքի կամ բարոյականի դէմ գրածներուն համար, ու այնպէս ընդունեցաւ վերջին հաղորդութիւնը. ծանոյց դարձեալ որ եթէ ապրելու ըլլայ կը փափաքի հրապարակաւ ալ յետս կոչումն ընել:

Լավուազիէ անուանի բնալոյծը, խորհրդական խոստովանութեամբ հաշտուեցաւ Աստուծոյ հետ: — Տիւրան ընդհանրական խոստովանանք մը եղաւ բոլոր կենացը մէջ ըրած մեղքերուն: — Մուլավի խոստովանեցաւ Պարիւէլ քահանային, և անոր ձեռքովը յետս կոչումն ըրաւ: — Պօղոս Օլավիտ, Մարմոնթէլ, Ճէրարտ, Թոմաս, Բալիսօ, Մէրսիէ և ուրիշ անաստուած փիլիսոփաներ զղջմամբ և քրիստոնէաբար մեռան, կրօնքի ամենայն նպաստները ուզելով և ընդունելով: Այս բազմաթիւ օրինակներովս կը ճշմարտի այն ոսկեղինիկ առածը, զոր ութևտասներորդ դարուն անուանի մատենագիրներէն մէկը կ'ըսէր սովորաբար իմաստակներուն վրայ խօսելու ատեն. Մարդս քանի որ կ'ապրի՝ համարեցէք թէ փիլիսոփայ ըլլայ. բայց մեռնելու ատեն փիլիսոփան ալ կը դառնայ մարդ կըլլայ: Նոյն բանը կը խոստովանի նաև Պայլ՝ 'ի մէջ բերելով անաստուածի մը խօսքը որ կըսէր գանգատելով. Իմ աղանդակիցներս երբոր մահուան անկողնոյն մէջ կիյնան, պատիւ չեն ըներ ինծի, բայց իրենք զիրենք ալ անպատիւ կ'ընեն՝ յետս կոչումն ընելով և ուրիշներուն պէս խոստովանութեամբ ու հաղորդութեամբ մեռնելով: Վոլթեռի աշակերտներէն ալ գրեթէ

քան մը՝ դարձի եկած, ու իրենց մահուան ատենը խոստովանութեամբ ու Աստուծոյ հետ հաշտուելով մեռած են։

§ Ժ

Եղան դարձեալ ոչ սակաւ կարծեցեալ փիլիսոփայք՝ որ մահուան ատեն փափաքեցան խոստովանելոյ, բայց փափաքնուն չհասան.

Շատ անգամ կը գտնուին այնպիսի ամպարիշտներ ալ, որ մտքերնին կը դնեն թէ մեռնելու ատեննին զղջալով Աստուծոյ շնորհացը արժանի կըլլան, և աղէկ խոստովանութեամբ մը յաւիտենական փրկութեան կը հասնին։ Բայց ցաւալին այն է՝ որ այսպիսեաց փափաքը շատ անգամ պարապը կ'ելլայ. որովհետև այն վերջի վայրկեաններուն՝ կամ այն է որ ժամանակ չեն ունենար, կամ մտքերնին ու լեզունին կը բռնուի, և կամ չեն ունենար այն շնորհքը՝ զորն որ բոլոր իրենց կենացը մէջ արհամարհեցին. և այսպէս՝ կը ճշմարտի իրենց վրայ այն անհոգ և յանդուգն մեղաւորաց համար եղած սպառնալիքը թէ՝ Ցանկութիւն մեղաւորաց կորիցէ։ Ասոնց կարգէն եղան անցեալ դարուն անուանեալ փիլիսոփայներէն շատերը, որոնք կը կարծէին անմտութեամբ թէ մահուան ատեն կարենան դարման ընել իրենց անօրէնութեանցը և հաշտուիլ Աստուծոյ հետ, բայց չարաչար խաբուեցան։ Սոքա թէպէտ և դժբախտաբար իրենց վախճանին հասած չըլլան, բայց իրենց ունեցած բաղձանքն ալ բաւական է 'ի հաստա-

տութիւն մեր խնդրոյն. որովհետեւ ըսել է թէ կը ճանչնան եղեր ճշմարտութիւնը և թէ որչափ հարկաւոր է խոստովանութիւնը փրկութեան հասնելու համար, բայց անհոգութեամբ կամ արհամարհութեամբ պակսեր են իրենց պարտքը կատարելու։

Այս դժբախտներուն մէջ առաջինը կրնայ սեպուիլ Վոլթէռ՝ անհաւատներուն նախահայրը, որ կրօնքի և բարուց դէմ ամենէն աւելի լրբութեամբ և ծաղրելով խօսեր է։ Նա՝ որ առողջ եղած ատենը կը հայհոյէր ստէպ ամպարշտութեամբ Կրօնքը և կրօնքին Հիմնադիրը ըսելով «Կորսուի այն վատանունը,» և կը պարծէր որ ինքը միայն բաւական էր ջնջելու աշխարհքէս քրիստոնէական կրօնքը. երբոր մահուան վտանգի մէջ կը տեսնէր զինքը, խելքը գլուխը ժողվելով լեզուն կը փոխէր, և ճշմարիտ զղջման նշաններ տալով քահանայ կը կանչէր ու յետս կոչումն կ'ընէր։ Իր վրայ ունեցած տեղեկութիւններնէս կը տեսնուի որ երեք անգամ վտանգաւոր կերպով հիւանդացաւ։ Առաջին անգամ 1723ին երբոր Մեզոն գիւղին կառավարչին քովն էր՝ ծանր կերպով հիւանդանալով տեղւոյն աւագերէցը կանչեց ու խոստովանեցաւ իրեն։ Այս ըսածներնուս ստուգութեանը կը վկայէ նոյն ինքն Վոլթեռի թուղթը՝ որ գրեց Պարոն Պրըթվիլի 1724ին յունվարի մէջ։ Երկրորդ անգամ հիւանդացաւ 1769ին 'ի Ֆէրնէյ՝ Ճինէվրայի մօտ. և նորէն քրիստոնէութիւնը միտքն իյնալով՝ խոստովանեցաւ. և նոյն տարին մարտի 30ին օրինաւոր կերպով յայտարարութիւն մ'ըրաւ, որուն մէջ

ընդ. այլ բանս, կ'ըսէ որ ուղղափառ կրօնքն
է միայն ճշմարիտ կրօնք, ուսկից դուրս փրկու-
թիւն չկայ, և այն պատճառաւ կ'ուզէ ինքն ալ
նոյն կրօնքին մէջ մեռնիլ. և ըսածին ճշմար-
տութեանը ապացոյց՝ կ'աշխատի կալվինական-
ները դարձի բերելու, պատարագ կը տեսնէ,
և ուրիշ եկեղեցական հանդէսներու ներկայ
կը գտնուի։ Երրորդ անգամ տեսնելով որ կե-
նաց վերջերը հասած է, կանչեց իրեն Կոթիէ
քահանայն, որ անբուժելեաց հիւանդանոցին
'հոգևոր վերակացուն էր, գրելով անոր այս-
պիսի հրաւիրանաց տոմսակ մը. «Դուք, տէր,
խոստացաք ինծի գալ ու խոստովանանքս լսել.
արդ կաղաչեմ որ յօժարիք յանձն առնուլ այս
աշխատութիւնս, և որչափ կարելի է շուտով
դայք.» (Բարիզ 26 փետրուար 1778)։ Գնաց ի-
րեն Կոթիէ, որուն խոստովանեցաւ Վոլթէռ. և
ետքը 'ի ներկայութեան նոյն խոստովանահօրը,
Մինեօ քահանային և Վիլըվիէյ մարքիզին՝
յայտարարութիւն մը գրեց և ստորագրեց.
զորն որ առաւ Կոթիէ, և Վոլթեռի ուզելովը
տարաւ Սուրբ Սիւլբիկիոսի ժողովրդապետին,
անկէ ալ Բարիզու Արքեպիսկոպոսին, ցըցու-
նելու և իմանալու համար թէ արդեօք բաւա-
կան էր այն յայտարարութիւնը։ Եւ երբոր Կո-
թիէ պատասխանը առած դարձաւ, չկրցաւ
հիւանդին քով մտնալ. որովհետև իր կուսա-
կիցներն ու աշակերտները քովն առած՝ չթողու-
ցին որ Աստուծոյ պաշտօնեայն կարենայ մօ-
տենալ քովը. բայց եթէ երբոր զգայութիւնն
ու ճանաչողութիւնը կորսնցուց, և երբ բան
չէր իմանար և ոչ քահանային ձայնը կը լսէր։

Վոլթէռ այն իր կենացը վերջի վայրկեաններուն ահաւոր տեսարան մը եղած էր։ Նա որ երեք ամիս առաջ Թէատրոնի մէջ պսակուելով՝ երբ յաղթանակաւ Բարիզու մէջ կը պտըտցընէին, ամբարտաւանութեամբ արբեցեալ կը գոչէր՝ ի՞նչ է այս. փառքի մէջ խեղդել մեռցնել կուզեք զիս, հիմա ոչ թէ փառքի մէջ մեռնելէն կը վախնայ, այլ ընդհակառակն կատաղութեամբ և յուսահատութեամբ կը մեռնի։ Իր երկայն հոգեվարքութեանը մէջ մերթ կը կատաղէր, մերթ խղճովը կը տագնապէր, երբեմն կը յանդիմանէր, երբեմն կը հայհոյէր. այնչափ էր իր կատաղութիւնն որ ինչուան իր քանի չափ հաւատարիմ աշակերտներն ու ընկերները՝ որ բոլորտիքը առեր էին, քովէն վռընտեց՝ ըսելով. «Գացէք կորսուեցէք. դուք էք պատճառ որ ես այս թշուառ վիճակիս մէջ կը գտնուիմ. անիծեալ այն փառքը զոր պատրաստեցիք ինծի։» Թրօնշէն իր նորագանդ բժիշկը, կ'ըսէ թէ Ովրեստեսի կատաղութեանը ինչ ահաւոր նկարագիր ալ ըլլայ, Վոլթեռին կատաղութեանը մէկ ստուերն է. և շատ կը փափաքէի, կըսէ, որ իր այն ահաւոր մահուանը ներկայ գտնուէին նոքա ամենքն որ այս ամպարշտիս գրուածքներովը մոլորած էին։ Ռըշլիէօ Մարաջախտը այնպէս սարսափեցաւ, որ փախչելով մեռնողին խուցէն, ահաբեկած այս խօսքերս կը կրկնէր. «Խիստ ահաւոր է աս տեսարանս, մարդ չկրնար տեսնալ։»

Տ'Ալամպէր ու Տիտրօ Վոլթեռի երկու մտերիմ բարեկամներն, որ ինչուան ցմահ քովը կեցած՝ չթողուցին որ քահանայն քովը մօտե-

նայ, Աստուծոյ արդար դատաստանը այնպէս ըրաւ, որ իրենց ալ նոյնը պատահեցաւ ինչ որ իրենք իրենց վարդապետին ու ընկերոջը ըրեր էին։ Տ'Ալամպէր մեռնելէն առաջ ուզեց խոստովանիլ ու հաշտուիլ Աստուծոյ հետ. ուստի քովիններուն ապսպրեր էր որ երբոր Սուրբ Ժերմենի ժողովրդապետը գալու ըլլայ, անպատճառ իր քովը բերեն։ Խեղճ ժողովրդապետը տասն անգամէն աւելի եկաւ հիւանդ փիլիսոփային տունն, ուզեց ներս մտնալ, բայց Քոնտորսէի և ուրիշ անոր պէս իմաստակներու հնարքներովը ոչ երբէք կրցաւ ներս մտնել. և այսպէս մեռաւ խեղճ Տ'Ալամպէր առանց խոստովանելու։ Լահարբ իր Թուղթերուն մէջ կը վկայէ որ՝ «Ես իր քովը գտնուող փիլիսոփայներուն մէկուն բերնէն լսեցի, թէ Տ'Ալամպէր վատ մարդ էր։» Իրեն աս կարծեցեալ վատութեանը ապացոյց մը կը սեպեն այնպիսիք Տ'Ալամպերի կտակը, որ կը սկըսի քրիստոնէական կրօնքին մեծագոյն և պատկառելի խորհըրդոյն անուամբը ըսելով՝ «Յանուն Հօր, և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ։»

Նոյնպէս Տիտրո ալ մեռնելու ատեն ուզեց կրօնքի պարտքերը կատարելու։ Շատ անգամ Տը-Թէրսաք Սուրբ Սիւլբիկիոսի ժողովրդապետին հետ տեսնուեցաւ ու խօսեցաւ, և պատրաստ էր հրապարակաւ յետս կոչումն ընելու իր մոլորութեանցը։ Բայց իր նենգաւոր բարեկամները գեղ տարին զինքը, ուր որ մեռաւ առանց քահանայի երես տեսնելու։

## § ԺԱ

*Քաղաքագիտութեան կամ զինուորութեան մէջ նշանաւոր անձինք, մահուան առենին զղջումի գալով խոստովանեցան.*

Հռչակաւոր Օռլէանի Դուքսը, որ գահակալել ուզելով՝ Լուդովիկոս ԺԶի դէմ ազգային խռովարարաց ժողովքին գլուխ եղած էր, 1793ին մահուան դատապարտուելով՝ զգաստացաւ ու բանտին մէջ ընդհանրական խոստովանանք եղաւ Լօթրինժէ քահանային: Իրեն դարձին ու զղջման մանրամասն հանգամանքը պատմելով աս քահանայն իր մէկ թղթին մէջ՝ որ գրած է 'ի Թուան 1797ին յուլիսի 27ին, կըսէ. « Օռլէանի Դուքսը առջևս ծունր դրած հարցուց ինծի թէ արդեօք ժամանակ կա՞ր ընդհանրական խոստովանանք մ'ըլլալու. և երբոր ըսի թէ կայ, բոլոր կենացը ընդհանուր խոստովանութիւն մ'ըրաւ: Երբոր խոստովանութիւնը լմնցաւ, ճշմարիտ և գերընական զղջման զգացմունքով մը հարցուց ինծի թէ ի՞նչ կը կարծես արդեօք, Աստուած կ'ընդունի՞ գիս իր ընտրելոց կարգը: Ես սուրբ Գրոց խօսքերովը ցըցուցի իրեն՝ որ իր ճշմարիտ զղջումը, Աստուծոյ անսպառ ողորմութեանը վրայ ունեցած վստահութիւնն և յօժարութեամբ մահը յանձն առնուլը՝ անշուշտ կը փրկեն զինքը: Ան ատեն վրայ բերաւ. Ես անպարտ եմ այն ամբաստանութիւններէն որ վրաս եղած են. Աստուած ներէ ամբաստանողներուն, ինչպէս ես կը ներեմ:

Բայց արժանի եմ աս մահուանս 'ի քաւութիւն մեղաց իմոց. որովհետեւ գործակից եղայ անմեղի մը սպանութեանը (Լուդովիկոսի ԺԶի), և ասոր համար ահա կը մեռնիմ ես. բայց նա այնչափ բարի է որ չկրնար չներել ինծի. Աստուած զինքն ալ զիս ալ Սուրբ Լուդովիկոսի հետ ընկերակից ընէ։ Բացատրել չեմ կրնար (կ'ըսէ նամակիս գրողը), իր մեծ համակերպութիւնը, իր հառաչանքներն, իր գերաստուածային փափագը կրելու ինչ պատիժ որ ըլլայ, եթէ աս աշխարհքիս վրայ և եթէ 'ի հանդերձեալն՝ որպէս զի քաւէ իր մեղքերն, որոնց համար երկրորդ անգամ արձակումն խնդրեց, երբ կախաղանին քովը հասան։»

Նոյն Լօթրինժէ քահանայն կը վկայէ որ Օռլէանի դքսէն զատ, նոյն բանտին մէջ խոստովանեցուցեր է նաև Բիւսթին զօրավարը, Կորսա, Կարտիէն, Վիժէ և ուրիշ Նուիրակներ։

Թալէյրան, ինչպէս յայտնի է 'ի պատմութենէ, գաղղիական խռովութեան ժամանակ մէկդի ձգելով իր եպիսկոպոսութիւնը, ընդդէմ եկեղեցականաց եղած օրինադրութեանցը կատաղի պաշտպաններէն մէկն եղեր էր, և Նաբոլէոնին քաղաքական վարչութեան մէջ ալ բազուկը։ Ասոր առջին դրաւ Տիւբանլու բարեպաշտ քահանայն՝ որ հիմա եկեղեցւոյ արդիւնաւոր հայրապետներէն մէկն է, իր մէկ գրուածքը որ կը կոչուէր՝ Քրիստոնէի մը օրը ըստ Պօսիւէի։ Այս գրքին մէջ կարդալով Թալէյրան այն գլուխը որուն վերնագիրն էր՝ «Քրիստոնէին պատրաստութիւնը վերջին մահուան խոստովանանքն ըլլալու,» շատ զգացուեցաւ

և պատրաստուեցաւ խոստովանելու․ և իրօք ալ խոստովանեցաւ Տիւքանլուին 1838ին մայիսի 17ին։ Նշանակութեան արժանի է որ բոլոր խոստովանութեան միջոցը հիւանդը խոստովանահօրը ձեռքէն բռնած չէր թողուր զայն 'ի նշան գոհութեան և մխիթարութեան։

Մեծն Նաբոլէոն Ա․ որ իր փառաւորութեան օրերը բոլոր իր կրօնասիրութիւնը այն էր՝ որ տօնական օրերը երաժշտական նուագներով զուրցուած պատարագ մը միայն կը տեսնար, երբոր Սուրբ Հեղինէ կղզին աքսորուեցաւ, սկսաւ խելքով իր կրօնական պարտուցը վրայ մտածել․ ախորժելով կրօնական գրքեր կը կարդար, և կ'ուզէր որ ուղղափառ քահանայ մը գտնուի քովը․ պատարագ կը տեսնէր և ուրբաթ օրերը առանց մսեղինի պահօք կ'անցընէր։ Կը ճանչնար խոստովանելու հարկը, և կ'ուզէր խոստովանիլ․ բայց Վինեալի քահանային՝ որ միշտ իր հետն էր, խոստովանելու մեծ դժուարութիւն մը կը զգար, երիտասարդ և իրեն խիստ ընտանի ըլլալուն համար։ Ըստ ծննդներնուս հաստատութիւն նոյն իսկ Նաբոլէոնի խօսքերը մէջ բերենք, որ ըսած է այն անձին որ կը յորդորէր զինքը խոստովանելու․ «Խոստովանութիւնը, կըսէր Նաբոլէոն, աստուածային օրինադրութիւն մը ըլլալուն համար՝ ամենահարկաւոր է․ ուրիշին զմեզ ճանչցընել տալով, զմեզ լաւ կը ճանչնանք։ Խոստովանութիւնը խիղճերնուս անսխալ առաջնորդն է, և մեղաց ինչ ըլլալը մեզի աղէկ կը սորվեցնէ․ բարւոյն մէջ զմեզ կը հաստատէ, և Աստուծոյ հետ կը միացնէ․ և այսպիսի բանի

մը ո՞վ կրնայ հակառակիլ։ Բայց խոստովանութիւնը մտերմաբար սիրտ բանալ մըն է, և այնպիսի փափուկ գործ մը՝ որ աս բանիս մէջ մարդ չկրնա՛ր ինքն իր անձին հրամայել. անոր համար ամեն մարդ ազատ պէտք է ըլլայ իրեն խոստովանահայր մը ընտրելու. և ես ունի՛մ արդեօք այս ազատութիւնը։ Վինեալի քահանայն երիտասարդ է ու բոլոր օրը ընկերութիւն կ'ընէ ինծի, և ձեզի պէս ինծի հետ ընտանի է։ Աղոյգ է որ գիտուն և հաւատքով մարդ է, բայց այդ բաւական չէ ինծի. խոստովանահայր ըլլալու համար բաւական փորձ չէ։ Պօնավիդա քահանայն (որ մեկնած էր), ո՜հ անիկայ սուրբ մարդ էր։ Թէ որ Նանթի եպիսկոպոսն հոս ըլլար, հիմա մէկէն իրեն խոստովանանք կ'ըլլայի. ինքը մինչև հիմա գիս ուզածին պէս ճամբայ բերեր էր։ » Այսպէս կը խօսէր Նաբոլէոն, ինչպէս որ Պօթէրն ասպետը կը պատմէ իր համառօտ գրութեանը մէջ որ կը կոչուի. Կրօնական զգացմունք և վերջին վայրկեանք Նաբոլէոնի 'ի Սուրբ Հեղինէ։ Բայց թէպէտ և մեծ դժուարութիւն կը զգար Նաբոլէոն այն երիտասարդ Վինեալի քահանային խոստովանելու, բայց այնու ամենայնիւ Աստուծոյ շնորհքովը յաղթեց ինքն իրեն, խոնարհեցաւ յոյս երիտասարդ քահանային, և խոստովանեցաւ իրեն՝ առաջուց քանի մը անգամ առանձին հետը խօսելէն ետքը։ Նորվէն և Մարշան պարոնները որ Նաբոլէոնի հետ մէկտեղ գտնուելով եղածին ականատես վկայք էին, ասանկ կը պատմեն. « Ապրիլի 20ին պատարագի սեղանը պատրաստուեցաւ, և պատարագը լմննալէն

վերջը կայսրը խոստովանելով վերջին օծումը առաւ։ Կայսրը (կը շարունակէ Նորվէն) կը փափաքէր որ նոյն օրը նաև վերջին Թօշակն առնու, բայց հիւանդութիւնը թող չտուաւ։ » Վերջին օծումը առնելէն վերջը Նաբոլէոն Մոնթոլոն զօրավարին դառնալով ըսաւ. « Երջանիկ կը սեպեմ զիս որ պարտքերս կատարեցի. կը փափաքիմ որ դուն ալ նոյն բաղդն ունենաս մահուանդ ատեն։ Ես կարօտ էի այս խորհրդոցս....։ Քանի որ գահին վերայ էի չէի կատարած, վասն զի իշխանութիւնը կը Թմրեցնէ զմարդ, բայց միշտ հաւատք ունեցեր էի. զանգակաց ձայնը ինծի քաղցր էր. քահանայ մը երբ տեսնէի ինծի պատկառանք կ'ազդէր։ Կ'ուզէի ես գաղտուկ ընել աս բաներս. բայց ղայն այլ տկարութիւն մը կը սեպեմ։ Կ'ուզեմ զԱստուած փառաւորել. հրաման տուր որ քովի խուցս խորան մը պատրաստուի, ուր դրուի 'ի բազմոցի Ամենասուրբ Հաղորդութիւնը։ Ձեմ գիտեր որ Աստուած ինծի առողջութիւն տալ կուզէ՞. բայց այնու հանդերձ կուզեմ խնդրել զայն իրմէ։ Եռօրեայ պաղատանաց մաղթանքներ ընել տուր։ Բայց չէ. ինչո՞ւ քեզի ընդունայն հոգ և մտածութիւն պատճառեմ. դուն իշխանազն ես, կարելի է որ Թշնամիներ ունենաս, և կրնան ըսել որ դու քեզմէ ընել տուիր այդ բաները. անոր համար ես անձամբ կ'ուզեմ հրաման տալ։ » Յաջորդ օրը հրաման տուաւ Նաբոլէոն իր սպասաւորին որ մատուռը պատրաստէ. ետքը զՎինեալին կանչելով յանձնեց իրեն ալ որ ըստ իր կարգադրութեանցը այն մատուռը պատրաստուի։

Այս միջոցիս հոն ներկայ գտնուողաց մէկուն ծիծաղելու ձայնը լսելով՝ սաստիկ բարկացաւ Նաբոլէոն, և ըսաւ կանչելով. «Եթէ դու անաստուած ես, ես կը հաւատամ Աստուծոյ, և եմ քրիստոնեայ, ուղղափառ և հռովմէական. կ'ուզեմ կրօնքի հրամայած բոլոր պարտքերը կատարել, և ընդունիլ այն ամեն նպաստներն զոր կը մատուցանէ։» Ետքը Վինեալիին դառնալով՝ ըսաւ. «Հայր սուրբ, դու ամեն օր պատարագ ըսէ ինծի համար և մեռնելէս վերջն ալ շարունակէ, ինչուան որ թաղուիմ։ Մեռնելուս պէս կուրծքիս վրայ խաչ մը դիր, և ջանա որ խորանը գլխուս վերեւը ըլլայ։ Կ'ուզեմ դարձեալ որ ամեն օր Սրբութիւն Սրբոցը 'ի բազմոցի դրուի, ու եռօրեայ աղօթքները կատարուին։» Նաբոլէոնի այս բարեպաշտական գեղեցիկ եռանդը՝ անհաճոյ երևցաւ Պէրթրան զօրավարին, և համարձակեցաւ ըսել կայսեր՝ թէ այդ ըրածները քաղաքականապէս աղէկ չէին երևնար, որովհետև աւելի կրօնաւորի մը կը վայլեն՝ քան եթէ հինաւուրց աշխարհական թագաւորի մը։ Այս խօսքիս վրայ Նաբոլէոն գլուխը վեր վերցնելով, արմունկին վրայ յենած՝ ըսաւ եռանդեամբ. «Զօրավար, ես հոս իմ տանս մէջն եմ. ոչ քեզմէ հրաման կընդունիմ և ոչ ալ կուտամ. ուրեմն դու ինչ կը խառնուիս. մի՞թէ ես քու տանդ բաներուն կը խառնուիմ։» Այս լսելով զօրավարը գլուխը կախեց դուրս ելաւ, և ուսերը թօթուելով վեղարաւոր կրօնաւոր է կըսէր. իսկ Նաբոլէոնի հրամանները ամենայն մասամբ կատարուեցան։

Մեծապէս կը ցաւէր Նաբոլէոն որ ործալուն

պատճառաւ չէր կրնար վերջին Թօշակն առնուլ։ Բայց ապրիլի 29ին, ինչպէս կը կարդամք բժշկին օրագրութեանը մէջ, Աղբիւրին յատակ ու զովացին ջրին սիրտ խառնուկը անցնելով՝ կըրցած կայսրը նոյն օրը վերջին թօշակն ընդունի։ Իր կենացը վերջի շաբաթները, ինչպէս կը վըկայեն Մոնթոլոն ու Մարշան, կայսրը Վինեալիին հետ կուզէր մինակ ժամանակն անցընել, և այս առանձնախօսութեանցը համար ըսաւ օր մը Պէրթրան զօրավարին. Ոչ եթէ Գորսիկացի ըլլալուն համար կ'ուզեմ զինքը, այլ վասն զի քահանայ է։ Ուրիշ անգամ մ'ալ. Ես այնչափ բարեպաշտ չեմ, որ հաղորդուելու արժանի ըլլամ. բայց և ոչ ալ անանկ ամպարիշտ որ արքապղծութիւն ընեմ։ Նաբոլէոն գոհ չըլլալով մի անգամ հաղորդուելուն վրայ, մայիսի 3ին նորէն հաղորդուեցաւ, ինչպէս կը վկայէ Անդոմարքի բժիշկն իր յիշատակագրութեանցը մէջ. « Մայիսի 3ին, կըսէ, կէս օրուան ժամը երկուքէն վերջը ջերմը նուազեցաւ, ամենքը քովէն քաշուեցան. միայն Վինեալին հիւանդին քովը մնաց. և քիչ ատենէն իմացանք որ կայսրը վերջին օծումն առեր էր։» Մայիսի 5ին կայսրը ձեռքերն ամփոփելով խաչաձև կուրծքին վըրայ դրաւ, և իրեն վերջի խօսքը Աստուած իմ բառերն եղան։ Իրեն կտակին մէջ այսպէս գրած է. « Ես կը մեռնիմ կաթուղիկէ, առաքելական և հռովմէական կրօնքին մէջ, յորում ծներ եմ յիսուն տարի առաջ։» Այսպէս ահա կը մեռնի մեծ Դիւցազնը, կը մեռնի ճշմարիտ դիւցազնի մը պէս, վասն զի ճշմարիտ քրիստոնէի մը պէս կը մեռնի։

Հռովմայ վերջին խռովայոյզ հասարակապետութեան ժամանակ 1849ին, երկու հազարապետք՝ Մանարա և Մէլարա անուամբ, քրիստոնէական ոգւոյ արիական օրինակ մը տուին իրենց բարեպաշտական մահուամբը։ Առաջինը որ իրեն քաջութիւններովը շատ անուանի եղած էր բոլոր բանակին մէջ, ինչպէս որ նոյն ժամանակի լրագիրները կը պատմեն, բազմաթիւ հրացանից գնտակներէն մահացու վիրաւորեալ՝ երբոր դեռ ժամանակ ունէր հոգին հոգալու, փութաց նախանձաւոր քահանայ մը կանչել տուաւ. և խոստովանելով անոր խոնարհաբար և մեծաւ եռանդեամբ, վերջին Թօշակն ու օծումն ալ ընդունեցաւ, 'ի մեծ շինութիւն ներկայ գտնուողներուն, ինչպէս կը վկայէ իր խոստովանահայրը։

Երկրորդը որ Մէլարա կը կոչուէր, նոյնպէս հազարապետ էր ապստամբաց բանակին մէջ. ասիկայ ալ առաջինին պէս նոյն տարին և նոյն օրերը պատերազմի մէջ առած վէրքերէն մահուան վտանգի մէջ գտնուելով, առաջին մըտածութիւնն ու փափաքն այն եղաւ որ իր ժողովրդապետը կանչեն իրեն, որպէս զի իր ըստ հոգւոյ պատրաստութիւնները տեսնէ։ Անպատմելի բան է իր ցըցուցած հաւատքն ու վստահութիւնն առ Աստուած. ևս առաւել թէ ինչպիսի եռանդեամբ սուրբ Խորհուրդներն ընդունեցաւ, ինչպէս կը կարդանք սակաւուք՝ իր խոստովանահօրը տուած տպագիր տեղեկութեանց մէջ։ Շատ ըլլայ մէջ բերել հոս իր վերջին խօսակցութիւնն որ ըրաւ ներկայ գըտնուողներուն՝ իր խոստովանահօրը բերնովը.

« Ոչ թէ, կ՚ըսէր մեռնելէն վախնալով սուրբ խորհուրդներուն կը մօտենամ, այլ կրօնական զգացմամբ, և որպէս զի ճշմարիտ քրիստոնէի մը ունեցած պարտքերը կատարեմ, զոր կը սորվեցնէ կաթուղիկէ եկեղեցին, որուն մէջ կ՚ուզեմ մնալ ինչուան կենացս վերջին շունչը և ցուցընել իմ որդիական հպատակութիւնս իրեն և իր երևելի գլխոյն. և ներումն կը խնդրեմ նախ յԱստուծոյ և յետոյ 'ի մարդկանէ՝ իմ սխալանացս համար, եւ առաւել անոնց՝ որոնցմով զայլս գայթակղեցուցեր եմ։ » Այսպիսի արդարև քրիստոնէավայել զգացմունքներով նոյն տարին յուլիսի 30ին կէսօրուան դէմ հոգին աւանդեց ամենայն քաղցրութեամբ ու հանդարտութեամբ։

Այսչափ անուանի անձանց՝ օրինակներուն վրայ զոր յառաջ բերինք, աւելցնենք ուրիշ երկուք ալ, որոնք իրենց մահուան ատեն փափաքեցան խոստովանիլ, բայց փափաքներնուն չհասան։ Ասոնցմէ առաջինն է Սանդէռ՝ գաղղիական հասարակապետութեան զօրավարն, որ Լուդովիկոս ԺԶին գլխատման օրը թմբուկներուն աղաղակաւը, խափանել տուաւ խեղճ թագաւորին ձայնը որ չը լսուի։ Սա տեսնելով զինքը յաւիտենականութեան դուռը մօտեցած, և ինքն իրեն գալով ուզեց լռեցնել իր խղճին աղաղակը. ուստի ըսաւ որ կանչեն իրեն Տրնէօյլի քահանայն։ Բայց ինչուան որ քահանայն հասաւ, ինքը վերջի շունչերը կուտար, որով առանց խոստովանելու մեռաւ։

Երկրորդն է Պարա, Գաղղիոյ գլխաւոր խռովարարներէն մէկը։ Ասիկայ 1829ին մեռնե-

լուն մօտ, ըսաւ իր քովը կեցողներուն որ քահանայ մը բերեն իրեն. բայց անոնք ըսին որ այդ բանիդ համար դեռ շատ ժամանակ ունիս։ Քիչ մը վերջը աւելի յայտնի կերպով իր փափաքն յայտնեց, որ կ'ուզէր Բարիզու արքեպիսկոպոսին հետ տեսնուիլ. բայց քովինները չիմանալու զարկին, և այսպէս խոստովանելու փափաքով միայն մեռաւ։

## § ԺԲ

### Նոյն իսկ բնութեան ձայնը կ'ազդէ մեզի որ մեղքերնիս խոստովանինք.

Մարդս որ բանական էակ է, պէտք որ յամենայնի բանին թելադրութեանցը մտիկ ընէ, և առանց անոր հաւանութեանը բան չընէ։ Իսկ ընդ հակառակն՝ երբ փոխանակ բանին թելադրութեանցը մտիկ ընելու, կը սկսի անոր դէմ գործել, մանաւանդ ծանր դէպքերու մէջ, կըզգայ մէկէն իր յանցանացը պատիժը, խիղճը կը սկսի տագնապել զինքը, սրտին հանդարտութիւնը կը կորսնցնէ և ծանր տրտմութիւն մը կը տիրէ վրան։ Այս թշուառ վիճակիս մէջ իր խեղճութեանը դարման մը կը սկսի փնտռել. և ետևէ կ'ըլլայ այնպիսի կարեկից սիրտ մը գտնելու, որ կարենայ սփոփել զինքը, ուղղել ու մխիթարել։ Բայց ո՛վ կրնայ այս պաշտօնս կատարել, բայց եթէ նա՝ որ պաշտօնեայ է այն Աստուծոյն որ մեղաց չարիքը դարմանելու, և զմարդ կորստենէն փրկելու համար մարդ եղաւ։ Այո, միայն ճշմարիտ Աստուծոյ

պաշտօնեայն է, որ իրմէ ընդունած իշխանութեամբը, կրնայ ապաշխարող ոգին իր գրկացը մէջ ընդունելով՝ ներել իրեն, և շնորհել այն ցանկացեալ խաղաղութիւնը։ Առանց խոստովանութեան, ինչ որ ալ ընէ մեղաւոր մը՝ կատարեալ խաղաղութիւն չկրնար գտնալ. վասն զի Աստուծոյ անհուն սրբութիւնը՝ որուն դէմ կը մեղանչենք, այնպիսի վախի և երկբայութեան մէջ կը ձգէ զմեզ մեր մեղաց թողութեանը համար, թէ արդեօք ստուգապէս ներողութեան արժանի եղեր ենք թէ ոչ, որ մինչև յանյուսութիւն կը տանի։ Եւ ահա քրիստոնէական կրօնքը աս թշուառութեան առջևը առնելով, Աստուծոյ ողորմութեանը ատեան մը կը ցըցունէ մեզի, ուր արդարանալ ուզող յանցաւորը կարձըկուի իր մեղքերէն. և քահանայն իր աստուածային խօսքերովը կը լուայ ու կը սրբէ անոր հոգին իր աղտեղութիւններէն, և իր նախկին անմեղութիւնն և գեղեցկութիւնը կուտայ իրեն։

Այս ճշմարտութեանս կը վկայեն նոյն իսկ Սանսիմոնեան աղանդաւորներն իրենց մէկ օրագրին մէջ՝ ըսելով. «Ո՜հ որչափ մեծ մխիթարութիւն է յանցաւորի մը, և ի՜նչ մեծ ուրախութիւն անմեղի մը համար՝ գիտնալ թէ ում կրնայ բանալ իր սիրտը, ցըցունել իր վէրքերը, դնել անոր առջևը իր խեղճութիւնը, ապահով ըլլալով որ բժիշկ մը, մխիթարիչ մը և բարեկամ մը կը գտնայ իրեն։ Արդեօք կը գտնուի՞ մարդ մը, որ կենացը մէջ կարօտութիւն զգացած չըլլայ իր սիրտը ուրիշի մը բանալու։ Ո՞վ շնորհակալ չըլլար իր բարեկամին, որ գայ ձեռ-

քէն թունէ և կարեկցութեամբ մը հարցընէ իրեն թէ՝ ի՞նչ ունիս։ Ու ի՜նչ աւելի մեծ բարեբարութիւն՝ որ նոյն ինքն եկեղեցին յանուն Աստուծոյ կարեկցաբար այս հարցմունքը ընէ մեղաւորին, և այնու կրօնական մտերիմ հաւատարմութեամբ, որպիսի է խոստովանութիւնը, որով և մենք սրտերնուս այս պէտքը լեցընելու ատեն, պարտքերնիս ըրած կ'ըլլանք։»

Այս նիւթիս նկատմամբ լսելու արժանի է, ինչ որ կըսէ Տը-Մէսթրի իր գրոցը մէկուն մէջ. «Ասկէ աւելի ինչ բնական բան կրնայ ըլլալ, կըսէ, որ սիրտ մը խնդրէ ուրիշ սիրտ մը՝ յայտնելու անոր իր գաղտնիքը։ Եղկելին իր խղճէն կամ սաստիկ ցաւէն հալած մաշած, կարօտ է մտերիմ բարեկամի մը՝ որ ունկն դնէ իրեն, խրատ տայ և մխիթարէ զինքը. Թունաւորուած աղիք մը՝ որ կը գալարի ու կը կծկի թոյնը դուրս թափելու համար, ճշմարիտ բնական օրինակ ու պատկեր մը կրնայ ըլլալ այն սրտին՝ որ թունաւորուեր է մեղօք. այնպիսին կը նեղի, կը տագնապի, կը ցաւի ու կը տխրի. բայց չկրնար հանգչիլ, ինչու որ չգտնէ բարեկամ ու բարեսէր ունկնդիր մը, յոր կարենայ թափել իր յանցանացը թոյնը։»

Թէ նոյն իսկ բնութեան ձայնը կ'ուսուցանէ մեզի խոստովանութեան խորհուրդը՝ անկէց ալ յայտնի է, որ երբեմն մարմնաւոր առողջութեան ալ մեծապէս կ'օգնէ։ Անուանի Թիսո բժիշկը կը պատմէ՝ թէ Լօզաննա քաղաքին մէջ օրիորդի մը շատ ծանր և վտանգաւոր հիւանդութեանը դեղ կընէ եղեր։ Օրիորդը իմանալով որ կեանքը վտանգի մէջ է, վերահաս մա-

հոգւոյն վախէն այնպէս կը խռովի և կը տանջ-նայի, որ գրեթէ յուսահատութեան մէջ կ'իյ-նայ: Բժիշկը տեսնալով որ այս բարոյական հիւանդութիւնը կրնար խեղճին կեանքը աւելի կարճեցնել, կ'ըսէ հիւանդին քովը կեցողներուն՝ որ կրօնական նպաստները մատակարարեն: Երբոր քահանայն կը կանչեն, կընդունի իբրև իրեն վերջի մնացած յոյսն ու բարիքը, և անոր ըսած մխիթարական խօսքերովը կը հանդարտի, միտքն ու սիրտը կը դարձնէ առ Աստուած իր յաւիտենական օգուտը մտածելու, և այնպէս կ'ընդունի սուրբ Խորհուրդները: Երկրորդ օրը երբոր բժիշկը կուգայ՝ կը զարմանայ կը մնայ տեսնելով հիւանդին հանդարտութիւնն ու խաղաղ վիճակը. Ջերմը դադրէր էր, հիւանդութեան վտանգաւոր նշանները փոխուեր էին, համառօտ ըսելով՝ քիչ ատենի մէջ կ'առողջանայ օրիորդը: Թիսօ՝ Թէպէտ և նորաղանդ էր, բայց շատ ախորժելով կը պատմէր այս դէպքս, և զարմացմամբ մը կը գոչէր. Ո՛վ ինչ մեծ զօրութիւն ունի խոստովանութիւնը ողջափառաց մէջ:

Ամի Պատէլ ճինեվռացի նորաղանդ բժիշկը, գրուածք մը հրատարակեց աս վերջերս, այս ու մակագրով. Բժշկական—աստուածաբանական տեսութիւնք խոստովանութեան վրայ: Այս գրութեանս մէջ կը ցուցընէ թէ ինչ մեծ ազդեցութիւն ունի խոստովանութիւնը հիւանդաց վերայ, մանաւանդ բարոյականը մեծապէս կ'ազդէ ընականին վրայ. և կը յանձնէ ամենայն փութով, որ անհոգութիւն չըլլուի աս բանիս գործադրութեանը վրայ, մանաւանդ՝ Բողոքական

ընկերութեան մեծ օգուտ կը բերէ ։ Նորաղանդ բժշկիս այս ջանքն ու գեղեցիկ մտածութիւնը, շատ աւելի պէտք է որ ունենան ուղղափառ բժիշկները, որ շատ անգամ վախնալով թէ հիւանդին վրայ այլայլութիւն մը չբերեն, կ'ուշացնեն մատուցանելու այս բարոյական ու հոգեւորական դեղս, որով ոչ սակաւք առանց խոստովանութեան կը մեռնին, և որոնց համար իրենք պիտի ըլլան պատասխանատու Աստուծոյ ահաւոր ատեանին առջև ։

## § ԺԳ

### Խոստովանութենէն առաջ եկած օգուտները՝ կը ցուցնեն իրեն անհրաժեշտ կարևորութիւնը.

Խորհրդական խոստովանութենէն առաջ եկած օգուտները չէ թէ միայն անձնական են՝ խոստովանողին միայն, այլ և ընկերական, որովհետև բոլոր ընկերութեան ալ մեծապէս կ'օգտեն ։

Ամենքը գիտեն որ երբոր մեղաւոր մը դարձի եկած՝ կը խոստովանի ինչպէս որ պէտք է ամենայն պատշաճական պատրաստութեամբ, իր ամեն մեղացը՝ որչափ ալ մեծ և ծանր ըլլան՝ թողութիւն կը գտնայ. կը հաստատուի նորէն 'ի սրբարար և 'ի բարեգործական շնորհըս. նորէն կընդունի Հոգւոյն սրբոյ շնորհքները. և շնորհք մը գործանեայ, որով կարենայ փորձութեանց դէմ դնել և արդարութեան մէջ յարատևել ։ Մեղացը թողութեան հետ կը թողուի յաւիտենական պատիժն ալ, որուն մա-

հուշափ մեղօք արժանի եղեր էր. կրնայ նաև այն ժամանակաւոր պատիժներուն ալ՝ որ աշխարհքիս վրայ և կամ քաւարանին մէջ պիտի կրէր՝ թողութիւն գտնել, եթէ բոլորով սրտիւ և կատարեալ զղջմամբ լայ իր անցեալ մեղքերը, որով 'ի մեղս գտնուած միջոցը գործած բարեգործութիւններն ալ նորէն արդիւնական կ'ըլլան իրեն համար, որ առաջ մահացու մեղքովը մեռեալ էին։ Միով բանիւ, Աստուծոյ հետ հաշտուելովը մեծ խաղաղութիւն ու անդորրութիւն մը կը գտնէ իր խիղճը, և առատ մխիթարութիւն ըստ հոգւոյ։ Քրիստոսի պաշտօնէին այն քաղցր ու մխիթարական խօսքերովը՝ Ես արձակեմ զքեզ, կը կործանի այն որմը որ յաւիտեան կը բաժնէր զինքը Աստուծմէ իր մեղացը համար. կը խորտակի այն ծանր ու դառն կապանքը, որով դժոխոց գերի եղած էր, և կը ջնջուի յաւիտենական մահուան դատակնիքը. որով ինքը նոր կեանք մը կըստանայ, և կըլլայ մասնակից ազատութեան որդւոցն Աստուծոյ, և ժառանգութեան երկնաւոր և անմահ թագաւորութեան։

Կը պատմուի 'ի վարս Հօրն Պրիտենի, որ երբ աս սրբակաց անձը գեղի մը մէջ քարոզութիւն կ'ընէր, հեծելազօրաց սպայ մը անցնելով հոնկէ՝ եկեղեցին մտաւ. և լսելով թէ ինչ հարկաւոր բան է խոստովանութիւնն, և թէ լաւ խոստովանելու կերպը ո՛րն է, միտքը դրաւ որ խոստովանի, և արդեամբ ալ միտքը դրածը կատարեց՝ խոստովանելով լալագին և մեծաւ զղջմամբ։ Արձակման ժամանակն իրեն այնպէս մը կուգար, որ ծանր բեռ մը ուսերէն կը վերցը-

նեն։ Եւ երբոր աւանդատունը կեցած էր, բացաւ բերանը բազմութեան առջև և այս կերպով խօսեցաւ 'ի շինութիւն և 'ի բարի օրինակ ամենուն. «Տեարք իմ, հաւատացէք ինծի որ բոլոր կենացս մէջ ասանկ քաղցրութիւն մը չեմ զգացած, ինչպէս կզգամ հիմա, քանի որ Աստուծոյ շնորհացը մէջ հաստատուեցայ. չեմ կարծեր որ Լուդովիկոս ԺԵ. որուն երեսուն և վեց տարի անընդհատ ծառայեր եմ, ինծմէ աւելի երջանիկ եղած ըլլայ՝ իր ամենայն արքայական վայելքներովն ու զուարճութիւններովը, որոնց մէջն որ ընկղմած է. ինքը բնաւ այնպէս գոհ եղած չէ, ինչպէս որ ես գոհ եմ քանի որ իմ մեղացս ահագին բեռը վրայէս նետեցի։»

1813ին մէկ մեծ մեղաւոր մը որ ոչ միայն ուրիշ շատ անարգ ախտից այլ և ամօթալի անժուժկալութեան ալ տուեր էր ինք զինքը երկար ատենէ 'ի վեր, բարեպաշտ քահանայի մը հանդիպելով՝ միտքը դրաւ որ վարքը փոխէ, և կարգէ դուրս ցաւագին և կատարեալ զղջմամբ խոստովանեցաւ իր մեղքերը, և այնպիսի խընդութեամբ մը սիրտը լեցուեցաւ, որ ստէպ ստէպ ամենասուրբ խորհուրդներուն կը մերձենար. և Աստուծոյ շնորհքովը զօրացած, ծանր և դժուարին հիւանդութեան մը համբերութեամբ համբերելով՝ երջանիկ մահուամբ կընքեց իր կեանքը։

Այսպիսի օրինակներ անբաւ են ամեն տեղ և ամեն ուղղափառ ժողովրդոց մէջ, որոնց վկայք են Աստուծոյ պաշտօնեայքը, որոնք շատ անգամ տեսած են ապաշխարող աչքեր որ ա-

նուշ արցունք կը թափեն, և սրտեր որ քաղցր կը հառաչեն. ո՜րչափ անգամ լսած են ապաշխարողին բերնէն թէ չէի կարծեր որ մեղքերէն թեթևնալը այանկ քաղցր բան է եղեր. ո՜հ որպիսի սրտանց հեծեծանքներ, ո՜րչափ շնորհակալութիւն և բորբոքեալ սիրոյ ներգործութիւններ չեն ըներ Աստուծոյ՝ ճշմարիտ ապաշխարող հոգիները, գոչելով սրբոյն Օգոստինոսի հետ՝ թէ շատ աւելի հաճոյք զգացեր են հրաժարելով իրենց զբօսանքներէն ու հեշտութիւններէն, քան թէ զանոնք վայելելու ժամանակնին։ Ահա ասոնք են փոքր 'ի շատէ խոստովանութեան անձնական օգուտները, զոր բազումք 'ի հաւատացելոց քիչ շատ իրենք իրենց վրայ փորձած են։

Տեսնանք հիմա խոստովանութեան ընդհանուր ընկերութեան ըրած բարիքը։ Ասոնք այնչափ մեծ են և յայտնի և այնչափ բազմաթիւ, որ չէ թէ միայն ուղղափառ մատենագրաց լեզուն ու գրիչը շարժած են 'ի գովութիւն այս խորհուրդիս, այլ նաև ուղղափառութեան դէմ եղողներէն շատերունը, ինչպէս որ տեսանք վերը Է և Ը. յօդուածոց մէջ։ Տեսանք Զ. պարբերութեան մէջ, թէ ինչպէս Նորիմպերկի ու Ստրազպուրկի մէջ նորաղանդից պաշտօնեայք, տեսնելով որ խոստովանութիւնը վերցուելով, ամենամեծ ապականութիւն բարուց սկսաւ տիրել ժողովրդեան մէջ, խնդրեցին աշխարհական իշխանութենէն որ նորէն հաստատուի խոստովանութիւն. և միթէ ասիկայ բաւական փաստ մը չէ՞, խոստովանութեան մեծապէս օգտակար ըլլալուն։ Իրաւ որ, կ'ըսէ

Պ. Ռոսսէ, խոստովանութիւնը անքաւ եղեռնագործութիւններ կը խափանէ, չնութիւններ, կնաթողութիւններ, թշնամութիւններ, և այլն և այլն։ Ասոր վրայ կրնանք աւելցնել նորաղանդ Քլաւս Հարմ՝ բրուսիացի քահանային վկայութիւնը, որ 1829ին Պէռլինի Աւետարանական ըսուած օրագրին մէջ կը հաստատէ թէ ամեն բանէ աւելի թախանձանօք թագաւորէն խնդրելու բանն այն է որ խոստովանութիւնը հաստատէ, վասն զի այն է զօրաւոր ճար մը բարուց զեղծման առջևն առնելու։ Վերը Ը. յօդուածին մէջ յիշատակեցինք, ըստ վկայութեան նորաղանդ Ռայնալ մատենագրին, թէ ինչ մեծամեծ օգուտներ ըրաւ խոստովանութիւնը Բարակուայի հասարակապետութեան մէջ, ուր յանցաւորները ինքն իրենուն կուգային դատաւորներուն առջին յայտնելու զղջմամբ իրենց յանցանքը և արժանաւոր պատիժը խնդրելու։ Խոստովանութեան ընդհանուր ընկերութեան ըրած այս օգուտներուն կը վկայէ նաև Ջէրութթի հեղինակը, որ Միրաբոյին մեծ բարեկամն էր, այսպէս ըսելով. «Մեղքերէ զզուումն ազդել, կամ ապաշխարանք, թումբ և արգել մը դնել անզգամութեանց դէմ, անմեղութեան զօրաւոր օգնականութիւն մը տալ, գողութիւններն արգելուլ, և եղածներուն հատուցմունք ընել, խաղաղութեան, միաբանութեան, հպատակութեան, արդարութեան և ամենայն առաքինութեանց սէրը սնուցանել և զօրացնել, արմատաքի խլելով սրտերէ ախտից չար սովորութիւններն, անմիաբանութիւններն ու ըմբոստութեան ոգին, առնք

բոլորն ալ խոստովանահօր պաշտօննեն. և վրայ կը բերէ թէ խոստովանութենէ աւելի յարմար բան չկայ, անստգիւտ պահելու բարուց ուղղութիւնը. անոր համար հասարակաց օգտի ամենակարևոր բաներէն մէկն է։» Կարդացողն կը կարծէ թերևս որ բարեպաշտ մարդու մը վըկայութիւն ըլլայ այս մէջ բերածնիս. բայց Չէրուքթի անցեալ դարու համբաւաւոր խռովարարներէն մէկն էր, և երանի թէ իր ըսածները իրեն նմաններցը վրայ ազդեցութիւն ընէին։ Աս կերպ օգտաշահ դաս մ՚ալ կու տայ Ռուսսօ Թագաւորաց, իր Էմիլիա ըսուած գրքին մէջ. «Ձեր հիմակուան իշխանութիւնը, կ՚ըսէ, առանց տարակուսի շնորհապարտ է քրիստոնէութեան. որ նոր զօրութիւն մը տուաւ անոր, և պակսեցուց ապստամբութիւններն և արիւնհեղութիւնը քիչցուց։ Եւ այս յայտնի կ՚երեւնայ՝ երբ արդի կառավարութիւններն հիներուն հետ բաղդատուին։ Այս փոփոխութիւնս դաստիարակութեան արդիւնքը չէ. որովհետև կը տեսնանք գիտութիւն ծաղկած տեղուանք ալ՝ որ մարդկութեան աւելի յարգ և մեծարանք մը չտրուեցաւ։ Ըսածիս հաստատութիւն են աթենացւոց, եգիպտացւոց, հռովմէական և չինու կայսերաց անգթութիւնները։ Գթութեան և ողորմութեան գործքերը աւետարանին արդիւնքն են։ Ուղղափառաց մէջ խոստովանութիւնը ի՛նչ փոխարինութիւններ և ի՛նչ հատուցմունքներ ընել չիտար։»

Այս ըսածներնուս ճշմարտութիւնը ցուցընելու համար՝ խիստ շատ օրինակներ կրնայինք մէջ բերել, բայց մենք մէկ քանին միայն յի-

չենք հոս։ Ուղղափառ զվիցցերացի մը իր ճամբորդութեանը մէջ մեծ գումար մը դրամոյ գըտաւ. և խոստովանահօրը յայտնելով, անոր յորդորմամբը Պէռնայի քաղաքական վարչութեան քով յաւանդ դրաւ, մինչև որ տէրը ելլէ։ Այս դիպուածս խիստ մեծ ազդեցութիւն ըրաւ Նորաղանդից վրայ։ Ուրիշ տեղ մ'ալ զատկական խոստովանութեանց ժամանակ, ուղղափառ քահանայ մը Նորաղանդից պաշտօնէի մը մեծ գումար մը դրամոյ խաւրեց, ուսկից բոլորովին յոյսը կտրած էր Նորաղանդ պաշտօնեայն։ Այս մարդս որ ուղղափառութեան դէմ ըլլալով ամենայն սուրբ խորհուրդները կ'արհամարհէր ու ծաղր կ'ընէր, աս բանէս այնպէս փոխուեցաւ, որ անկէ վերջը առիթ մը եղածին պէս՝ հառաչելով կ'ըսէր. «Պէտք է ընդունինք որ խոստովանութիւնը շատ լաւ բան է ։» Տիկինն Տը-Ժանլիս իր մէկ գրուածքին մէջ կը պատմէ, որ վեց ամիս առաջ Թագաւորական պալատին մէջ 10,000 ֆրանգի արժէքով բան մը գողցըւած էր. և կարելի բան չէր գողը գուշակելը։ Բայց վեց ամիս վերջը Սուրբ Եւստաքէոսի ժողովրդապետը բոլոր գողցուած բաները՝ որ իրեն յանձնուած էին, պալատը դարձուց։ Ֆէ Ֆէպա անուն օրագրին 1839 ապրիլի 9 թուոյն մէջ կը կարդանք, որ Պօլիէօ բանտին առաքինի խոստովանահայրը, հինգ տարուան մէջ 20,000 ֆրանգէ աւելի իրենց տիրոջը դարձուց. ասով յայտնի կ'ըլլայ, որ ատեանին ընել չկրցածը՝ խոստովանութիւնը առանց բռնութեան կ'ընէ։

Այսչափ օրինակներ, որ հազարաւորներէն հազիւ թէ մէկ քանին դրինք, կը ցուցընեն՝ թէ

ինչ անբաւ օգուտներ ունի խոստովանութիւնը եթէ իւրաքանչիւր մարդու առանձին, և եթէ բոլոր ընկերութեան միանգամայն. որով յայտնի կ'իմացուի թէ որչափ մեծ և հարկաւոր բան է։

## ԳԼՈՒԽ Գ

### ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹԵԱՆ ԴԷՄ ԵՂԱԾ ԱՌԱՐԿՈՒԹԻՒՆՆԵՐ

### § Ա.

*Խոստովանահայրը կը խօսի.*

Խոստովանութեան դէմ եղող իմաստակներէն շատերը, որպէս զի խոստովանութեան յարգը կոտրեն և արգելուն զուրիշները որ չխոստովանին, շատ մը գրպարտութիւններ կ'ընեն, որոնց մէկն ալ այս է. կ'ըսեն թէ խոստովանահարք խոստովանութեան մէջ իմացածնին ուրիշին կը յայտնեն։ Բայց ո՛վ չգիտեր որ խոստովանահայրը խոստովանութեան մէջ լսածէն և իմացածէն չկրնար և ոչ բառ մը դուրս հանել, և այս խոստովանահօր մեծ պարտք մ'է 'ի բնական, յաստուածային և յեկեղեցական օրինաց։ Նախ ըսինք 'ի բնական օրինաց. վասն զի բնութիւնը մեզի կը սորվեցընէ, որ այն բանն որ մենք մեզմէ չէինք կրնար գիտնալ, այլ ուրիշ մը մեր վրայ ունեցած վստահու-

*թեամբը կը յայտնէ, մենք ալ պէտք է մեր պատիւը պահելով՝ իրեն վստահութեանը արժանաւոր ըլլանք, իր գաղտնիքը ոչ ումեք հաղորդենք։ Այս բնական պարտքին վրայ կ՚աւելնայ նաև աստուածայինը. վասն զի Քրիստոս Տէրն մեր այս խորհուրդս հաստատելու ատեն, իրեն միակ նպատակն էր հաւատացելոց տըկարութեանը համեմատ և իսկապէս օգտակար խորհուրդ մ՚ըլլայ իրենց, ինչպէս կ՚ուսուցանէ մեզի աւանդութիւնն ալ. և թէ որ խոստովանահօր աստուածադիր պարտք մը չըլլար գաղտնիք պահելու, տարակոյս չկայ որ օգտակար չէր ըլլար մարդուս խոստովանութիւնը։ Երրորդն է ըսինք եկեղեցական օրինադրութիւնը. որովհետև եկեղեցին ամենախիստ պատիժներ դրած է, որոնք որ խոստովանութեան կնիքը կը լուծեն. ինչպէս օրինակի համար, եթէ քահանայ մը աս յանցանացս մէջ գտնուի, կարգընկէց կ՚ըլլայ, և խստակրօն վանքի մը մէջ կը բանտուի մինչև ցմահ։ Ուստի ամենայն կերպով ապահով կրնայ ըլլալ ապաշխարողը, որ իր մեղքերը խոստովանահօրմէն զատ ուրիշը չիմանար։*

*Խոստովանահայրը այնպէս պարտաւորուած է լռութիւն պահելու, որ ինչուան կեանքն ալ կորսընցնելու վտանգի մէջ ալ ըլլայ, չի կրնար խոստովանութենէն գիտցածը յայտնել ուրիշի մը, և պատրաստական է ամեն բան յանձն առնուլ, քան թէ թեթևագոյն մեղք մը դուրս հանել։ Այս բանիս գեղեցիկ օրինակ մը եղած է Յովհաննէս Նէպոմուկէնօ, խոստովանահայր Յովհաննա կայսրուհւոյն, որ Վինկէսլաւոս կայ-*

ներ՝ Պոհեմիացւոց Թագաւորին ամուսինն էր։ Այս կայսրը յիմարական խորհրդով ուզելով իմանալ իր լծակցին մեղքերը, միտքը դրաւ որ իր խոստովանահօրմէն կընայ իմանալ։ Ի սկզբան կերպ կերպ խոստումներով ուզեց համոզել զինքը, բայց անօգուտ եղան։ Վերջը սկսաւ սպառնալիքներ ու ծեծ 'ի գործ դնել. բայց ասանցմով ալ իր վախճանին չհասաւ։ Վերջապէս յուսահատած կը սպառնայր զինքը մեռցնելու. որուն սուրբը աներկիւղ պատասխան տուաւ թէ՝ « Կրնաս սպաննել զիս, բայց ոչ խօսեցնել։ » Անգութ և բարբարոս Թագաւորը՝ տեսնելով որ ընաւ կերպով մը իր վախճանին չկրցաւ հասնիլ, Մոլտաւա գետը նետել տուաւ զսուրբը, որով խոստովանութեան գաղտնիքը պահելու համար՝ մարտիրոսութեան նախանձելի պսակովը պսակուեցաւ Երանելին։ Աս դիպուածս պատահեցաւ 1383ին. ու 1719ին, երբոր սուրբին նշխարաց արկղը բացին, տեսան որ բոլոր մարմինը մոխիր դարձեր էր, և լեզուն միայն ողջ, անարատ ու վարդագոյն կեցեր էր՝ 'ի մշտնջենաւոր նշան աստուածային հաճութեանը. և բազումք ականատես եղած են աս հրաշիցս, և ցայսօր ամեն տարի բազում ուխտաւորք կը դիմեն 'ի յարգութիւն իր նշխարացը, և իրեն հրաշազարդ լեզուին։ Նոյնպէս Երանելին Սարքանտէր, որ էր Օլմիցի թէմին մէջ ժողովրդապետ մը, չարատանջ մահուամբ կեանքը վճարեց, որպէս զի խոստովանութեան անլուծանելի կնիքը չքակէ։

Արդեօք հասարակաց օգտի մը համար կըր-

նայ խոստովանահայր մը խոստովանութեան կնիքը լուծել։ Չէ. այնչափ որ եթէ տէրութեան մը կործանման վտանգ ալ ըլլայ, չկրնար դարձեալ իր խոստովանութենէն գիտցածը դուրս հանել։ Յիսուսեան Հայրն Կառնէ, Յակոբ Ա. Սկովտիոյ Թագաւորին ժամանակ, 'ի խոստովանութենէ գիտնալով որ տէրութեան դէմ դաւադրութիւն մը կար, ոչ ումեք յայտնեց դաւադրութեան վերահաս վտանգը. ուստի 1606ին աս բանիս համար անիրաւ տեղը մահուան դատապարտուեցաւ, և աստուածային համակամութեամբ յօժարակամ մեռաւ։

Ըսածներնէս յայտնի կ'ըլլայ որ և ոչ քաղաքական ատեանը կրնայ պարտաւորել խոստովանահայր մը որ իր գիտցածը յայտնէ դատաւորին՝ յօգուտ այլոց. և աս բանիս նկատմամբ կրնայ խոստովանահայր մը թէ որ պէտք ըլլայ՝ երդմամբ ալ հաստատել, թէ ինքը այդ բանը չգիտեր։ Վասն զի խոստովանահայր մը յատենի խոստովանութեան, 'ոչ իբրև մարդ կը նստի, այլ իբրև Աստուծոյ փոխանորդ, և կերպով մը իբրև ինքն Յիսուս Քրիստոս. և ապաշխարողն ալ ոչ թէ մարդու, այլ իբրև Աստուծոյ փոխանորդին, իբրև Յիսուսի Քրիստոսի կը յայտնէ իր յանցանքները. ասով քահանային պաշտօնը կ'ըլլայ գերմարդկային, որով անկախ և ազատ 'ի մարդկային դատաստանաց. անանկ որ ոչ դատաւոր մը, ոչ թագաւոր մը, ոչ եպիսկոպոս մը, և ոչ պապը ինքնին կրնայ խոստովանահօր մը խոստովանութենէ գիտցածներուն վրայօք բան մը հարցնել. և եթէ հարցնելու ալ ըլլայ, խոստովանահօր պարտ-

*քըն՝ է բացէ 'ի բաց մերժել այնպիսի սրբապիղծ հարցման պատասխանը։ Սուրբն Թովմաս կ'ըսէ որ՝ «Մարդը՝ իբրև մարդ միայն կրնայ հարցուիլ դատաստանի մէջ. ուստի ատ պատճառաւ, խոստովանահայր մը իր խղճին առանց վնասելու կրնայ ըսել որ ինքը չգիտեր զայն՝ զորն որ ոչ իբրև մարդ, այլ իբրև Աստուած գիտէ։»*

*Այս ճշմարտութիւնս նաև աշխարհական ատեաններն ալ ընդունած են, որով յամին 1810ին օգոստոսի 17ին, Գաղղիոյ մէջ առորնագոյն ատեանը երբ կը բռնադատէր խոստովանահայր մը, որ 'ի խոստովանութենէ գիտցածը յայտնէ, բարձրագոյն ատեանը աղատ ըրաւ քահանայն այդ պարտաւորութենէն, ասանկ վճռելով. «Դատաւորք պէտք է մեծարեն և մեծարել տան խոստովանութեան գաղտնութիւնը. անանկ որ ոչ երբէք խոստովանահայր մը պէտք է պարտաւորուի գիտցածը յայտնելու, և ոչ իսկ պէտք է հարցուի խոստովանութեան մէջ լսածներուն վրայօք։» Նոյն ճշմարտութիւնը կամայ և ակամայ ընդունած են նաև Նորաշխարհ տէրութեանց ատեաններն ալ. օրինակի համար 1813ին Միացեալ Նահանգաց Նիւ-Եօրք քաղքին մէջ, ատեանը ուղղափառ քահանայի մը հարցումն ըրաւ գողութեան մը վրայօք, որ ինքը 'ի խոստովանութենէ կրնար գիտնալ։ Երբոր քահանայն չուզեց պատասխան տալ, վերնագոյն ատեանը անպարտ արձակեց զինքը աս պարտաւորութենէն՝ ըսելով. «Երբոր քահանայի մը, որ իր խոստովանորդւոց գաղտնեացը աւանդապահ*

է, խղճին վրայ բռնութիւն ըլլալ, այդ ուրիշ բան ըսել չէ, եթէ ոչ զրկել ուղղափառները իրենց խորհուրդներէն:»

Բայց կարելի է ըսեն ոմանք՝ թէ կրնայ ըլլալ, որ խոստովանահայր մը խենթենալով, կամ միտքը ցնդելով՝ առանց իսկ ուզելու խոստովանութեան գաղտնիքը յայտնէ: Որչափ որ կարելի կրնայ երեւնալ այս առարկութիւնս, նոյնչափ ալ մէկալ կողմանէ կը տեսնենք որ աստուածային նախախնամութիւնն այնպէս հսկեր է խոստովանութեան գաղտնեացը վերայ, որ ոչ երբէք թողուցեր է որ յայտնուի: Թէպէտ շատ օրինակներ կան խենթեցած խոստովանահարց, բայց և ոչ մէկ մը որ խոստովանութիւնը յայտնած ըլլայ. և որ զարմանալին է, շատ անգամ տեսնուած է որ այն իրենց յիմարական անհաստատ երեւակայութիւնը նիւթէ նիւթ անցնելով, ինչուան խոստովանաբանին քով եկեր հասեր են, բայց և ոչ բառ մը ըսած են լսած մեղքերնուն վրայօք. շատ անգամ ալ եղած են հետաքրքիր մարդիկ, որ չարութեամբ հարցումներ ըրեր են այնպիսի խոստովանահարց խոստովանութենէ գիտցած բաներնուն վրայօք. բայց անոնք չէ թէ միայն այսպիսի անմտութեանց պատասխան չեն տուած, այլ և կատղելով քովերնէն վռնտեր են: Այսպէս պատահեցաւ Հուլպէր քահանային, որ մտքի հիւանդութեան պատճառաւ խենթանոցը դրուած էր. իր ծանօթներէն ոմանք այցելութեան գացած ըլլալով իրեն, հարցուց մէջերնէն մէկը թէ՝ դու որ խոստովանահայր եղած ես, ըսէ մեզի տեսնանք քանի

մը բան...։ Հազիւ թէ լսեց աս խօսքերս, կատաղելով սկսաւ կանչել. «Ով անօրէն ամպարիշտներ որ ինծմէ խոստովանանքի բան կուզէք իմանալ, շուտ կորսուեցէք ասկէց. չէք գիտեր որ աստանկ բանի վրայ խօսիլ չըլլար։»

Ասկէց աւելի զարմանալի է Աստուծոյ նախախնամութիւնը, որ ոչ երբէք թող տուեր է անկարգ օրինազանց քահանայի մը այն աստիճան անօրինիլ՝ որ ինչուան խոստովանութեան գաղտնիք մը յայտնած ըլլայ. յայտնի է թէ Լուտերի ատեն որչափ քահանայք ու կրօնաւորք ամպարշտեցան, ինչուան կրօնքնին ու հաւատքնին ալ ուրանալով և ամեն տեսակ անկարգութեանց տալով զիրենք, բայց ոչ երբէք խոստովանութեան կնիքը լուծող մը գտնուեցաւ. նոյնը կը տեսնուի նաև Գաղղիոյ խռովութեան ատեն, որ այնչափ ցաւալի զեղծմանց և՝ անկարգութեանց մէջ, այս անօրէնութեանս օրինակ մը չկայ. այնպէս որ և ոչ այսպիսի անկարգ կենաց ետևէ եղող զինով քահանայից բերնէն խօսք մը կրցեր են առնուլ. այլ ինչ որ խենթեցած քահանայից համար պատմեցինք վերը՝ նոյնը հանդիպեր է ասոնց ալ։

Արդ այս ամեն ըսածներէս յայտնի կ՚ըլլայ, որ ոչ խոստմամբ, ոչ սպառնալեօք, ոչ մեղաքաղցութեամբ, և ոչ իսկ հաւատուրացութեամբ և կամ զեղծմամբ վարուց, եղեր է խոստովանահայր մը որ իր խոստովանորդւոց գաղտնիքը դուրս հանէ։ Եւ նոյն ամենազօր նախախնամութիւնն Աստուծոյ կը հսկէ միշտ խոստովանողաց՝ որ ինչ և իցէ մեղքերը երբէք չյայտնուին։

## § Բ

### Խոստովանահայրը կը սրդողի.

Այս առարկութիւնը առջինէն աւելի անտեղի կ'երեւայ մեզի։ Նախ և առաջ պէտք է գիտնալ, որ խոստովանահայրը՝ Քրիստոսի Յիսուսի պաշտօնեայն, փոխանորդն ու տեղակալն ըլլալով, այնպէս կարեկցութեամբ ու քաղցրութեամբ կը վարուի խոստովանորդւոց հետ, ինչպէս որ կը վարուէր Քրիստոս մեղաւորաց հետ՝ երբոր երկրիս վրայ էր։ Քրիստոս Տէրն մեր՝ մեր երկնաւոր վարդապետը, ոչ երբէք խստութեամբ վարուեցաւ ապաշխարող մեղաւորաց հետ, որոնք որ կուգային իրմէ Թողութիւն խնդրելու. նոյնպէս քահանայն ալ ապաշխարող հոգին այնպէս կ'ընդունի, ինչպէս ընդունեցաւ Քրիստոս Մատթէոս մաքսաւորը, Զաքէոսը, Մագթաղենացին ու շնացող կինը, և ուրիշ ամեն տեսակ մեղաւորները։ Խոստովանահայր մը մեղաւորին ծանր մեղքերը լսելով, ոչ կը սարսափի և ոչ ալ կ'այլայլի, այլ մանաւանդ աւելի մխիթարուելու պատճառ ունի, որ խոստովանութեան միջոցաւը, սատանային գերի եղած հոգի մը դժոխոց իշխանութենէն ազատելով՝ Քրիստոսի ծառայ կընէ։ Լաւ գիտէ խոստովանահայրը, որ Քրիստոսի ըսածին պէս, իբրև բժիշկ հոգւոր՝ իր ճարտարութիւնը հիւանդներուն վրայ պիտի ցըցունէ, ևս առաւել ծանր հիւանդներուն՝ քան թէ առողջներուն վրայ. վասն զի «Ոչ է պիտոյ

բժիշկ ողջոց, այլ հիւանդաց.» Եւ թէ քահանայ եղեր է՝ ոչ թէ արդարներն 'ի շնորհս Աստուծոյ կոչելու, այլ մեղաւորները. և այն է բուն քահանային պաշտօնը։

Բայց ենթադրենք թէ խոստովանահայրը կը սրդողի, միթէ մեղաւորն ալ կերպով մը յանդիմանութեան արժանի չէ՞, զԱստուած անողորմաբար վշտացնելուն համար։ Իսկ խոստովանահօրը սրդողելուն վախճանն ի՞նչ է. ան չէ՞ որ մեղաւորը զգաստանայ, ճանչնայ իր մեղքերուն ծանրութիւնն ու չարութիւնը, զգածուի սուրբ երկիւղիւ մը, ու ետ կենայ նորէն մեղանչելէն։ Ուրեմն՝ ապաշխարողը փոխանակ վախնալու այն յանդիմանութենէն, պէտք է փափաքի որ խոստովանահայրը թոյլ չըլլայ, հարկաւոր եղած խստութիւնն ընէ, և իբրև հոգևոր հայր խրատէ և յանդիմանէ. պէտք է մտածէ որ աւելի լաւ է՝ խոստովանահօր մը յանդիմանութիւնը լսել, քան թէ Քրիստոսի այն ահաւոր ատենին առջին զինքը բարկացած տեսնել. և այս է ահա՝ ուսկից ազատելու համար զանիկա՝ կը ստիպուի խոստովանահայրը երբեմն սրդողած երևցնել ինքզինքը, իբրև գորովագութ հայր մը, իր որդւոյն մեծագոյն բարեացը համար։

§ Գ.

### Մեղքերս խոստովանելով՝ խոստովանահայրը համարմունքը կը կորսնցընէ վրաս.

Այս մտածութիւնս կերպով մը սրտերնուս խորը թաղուած հպարտութեան հետեւանք մըն է, որով չուզեր ապաշխարողը յանցաւոր երեւնալ խոստովանահօր առջեւ. որ ընդ հակառակն եթէ խոնարհութիւն ունենար, որ հիմն է ամենայն քրիստոնէական առաքինութեանց, չէ թէ միայն աս տագնապս չէր կրեր, այլ նաեւ կը փափաքէր որ իր ինչ ըլլալը գիտնայ խոստովանահայրը, եւ իր արժէքէն աւելի համարումն չունենայ վրան. վասն զի ինչ օգուտ ունի մեզի, որ մարդիկ լաւ համարումն ունենան վրանիս, եւ յետոյ յաւիտենական դատապարտութեան արժանի ըլլանք: Եւ դարձեալ խոստովանահայրը՝ որ գերմարդկային ու աստուածային իշխանութեամբ մը Քրիստոսի փոխանորդութիւնն ունի, միթէ ինքն ալ ուրիշներու պէս տկարութեամբ զգածեալ չէ՞. չի՞ կըրնար ինքն ալ իր խոստովանորդւոյն պէս մեղանչել, եւ թերեւս քան զայն ալ աւելի բազմաթիւ ու ծանր մեղաց մէջ իյնալ. եւ ահա ասոր համար գիտէ կարեկից ըլլալ: Թող որ խոստովանահայրը տեսնելով իր ապաշխարողին ճշմարիտ զղջմն ու դարձը, փոխանակ համարումը կորսնցընելու, աւելի սէր ու համարումն կունենայ վրան՝ երբ կը տեսնայ անոր զգաստութիւնն ու խոնարհութիւնը, որ կ'ուզէ

իր հոգւոյն վնասուցը դարման տանիլ, և իբրև հիւանդ մը բժշկի կը դիմէ։ Ի՞նչպէս կրնայ սըրդողիլ. միթէ իմաստուն բժիշկ մը կրնա՞յ սրդողիլ հիւանդին թէ ինչու հիւանդացեր ես, և կամ հիւանդանալէդ վերջը ինչու խորհուրդ հարցնելով, խրատ խնդրելով դարման կ'ուզես ինծմէ. ո՛չ ապաքէն կարեկցելով հիւանդին, իր ջանքն ալ անոր ջանիցը վրայ կ'աւելցընէ, որ կարենայ թեթևցնել իր վշտակրութիւնն. և սոտվ բնականապէս իր վրայ հոգ ու դարման տանելուն համար, վրան աւելի գութ ու սէր մը կ'ունենայ։ Ահա ասոնք են խոստովանահօր մը մտածութիւններն ու զգացմունքը, ծր և իցէ մեծ մեղաւորի մը նկատմամբ որ իրեն հոգևոր բժշկութեանը կը դիմէ. վասն զի լաւ գիտէ քահանայն որ սխալիլը ամենուն է, բայց սխալմունքը ճանչնալն ու անոր դարման տանիլը սակաւուց տրուած է. և է գործ իմաստութեան, և Աստուծոյ մասնաւոր շնորհացն արգիւնք։ Ապա ուրեմն ոչ ոք 'ի մեղաւորաց պիտի վախնայ որ խոստովանելով համարումը կը կորսնցընէ, այլ մանաւանդ թէ կը ստանայ։

§ Դ

Մեղք ունիմ զոր խոստովանահօր ընելու կամաչեմ.

Ո՛հ քանիներ արդեօք այս անխծեալ ամօթովս դատապարտեալ, այսօրուան օրս կը տանջուին անշէջ գեհենին մէջ. և քանիներ

ընդ հակառակն յաղթելով և ոտքի տակ առնելով աս ամօթը, փրկութեան հասներ և անընդպատ ուրախութեամբ կը զուարճանան այս օր երկինքը։ Պէտք է աղէկ մտածենք որ կամ հոս աս ամօթը պիտի կրենք, և ան ալ միայն մէկու մը առջև, որ լսելն ու մոռնալը մէկ կ'ընէ. և կամ Քրիստոսի ահեղ հրապարակին առջև, ուր որ բոլոր բովանդակ մարդկութիւնը ներկայ պիտի գտնուի. և որ ցաւալին է՝ հոն ալ մեր ակամայ խոստովանութիւնը ոչ միայն անօգուտ պիտի ըլլայ մեզի, այլ ճշմարիտ և յաւիտենական ամօթով պիտի լեցընէ զմեզ, և ամենուն մտքին մէջը անջնջելի պիտի մնան մեր ամօթալի մեղքերը։ Եւ դարձեալ պէտք է գնենք մտքերնիս, որ չէ թէ մեր պարտքը կատարելու համար՝ խոստովանելէն ամըչնալու է, այլ մեղք ընելէն։ Անգամ մը Սոկրատայ աշկերտներէն մէկը վատահամբաւ տունէ մը դուրս ելլելու ատեն, տեսաւ հեռուէն որ Սոկրատ դէպի իրեն կու գար, ու մէկէն ներս քաշուեցաւ։ Բայց Սոկրատ որ տեսած էր զինքը, երբոր տանը առջևը հասաւ, անունով կանչեց զինքն ու ըսաւ. «Դուրս ելիր հոնկէ, ուր մտնալու ատեն պէտք էիր ամըչնալ, և ոչ թէ ելլելուդ։» Աս մտածելով այնչափ հին ու նոր օրինաց մէջ դարձի եկող սուրբերը չամըչցան ապաշխարելու. և իրենց դարձովը անմահական անուն ու փառք ժառանգեցին։ Ասոնց մէջ նշանաւորներէն մէկն է Սուրբն Օգոստինոս Հիպպոնայ եպիսկոպոսը, որ իր ապաշխարութեամբը և առ Աստուած դարձովը գոհ չըլլալով, ուզեց յայտնել՝ չէ թէ միայն իր

ժամանակակիցներուն, այլ նաև մեզ յետնոցս իր մեղքերն և իր ինչ ըլլալն՝ իր խոստովանութիւն անուանեալ գիրքովը, որ աս վախճանիս համար գրած է։ Բայց միթէ ասով իր անունը աւրեց կամ վատահամբաւ եղաւ մարդկութեան առջև. ո՞չ ապաքէն այսչափ դարերէ 'ի վեր խորաններու վրայ, ու մեր սրտերուն մէջ կը մեծարի ու կը փառաւորուի։ Վերջապէս ուրիշ ճամբայ չկայ. կամ ամօթը յաղթելով փրկութեան հասնելու է, և կամ չկարենալով յաղթել՝ դատապարտիլ։ Եթէ ողորմածն Աստուած հրամայած ըլլար հրապարակական խոստովանութիւն ընել՝ որպէս զի մեղաց թողութիւն գտնենք, հարկ էր որ ընէինք՝ յաւիտենական դատապարտութենէն խալըսելու համար։ Բայց որովհետև բարեգթութեամբ՝ մեր մարդկային տկարութեանը զիջանելով, առանձնական և ծածուկ խոստովանութիւն միայն կը պահանջէ մեզմէ, մէկու մը միայն յայտնելով մեր մեղքերը, և այն ալ մեր ուզած և ընտրած քահանային, ինչ դժուարութիւն ուրեմն կը մնայ խոստովանելու մեր ամօթալի մեղքերը ևս, երբ նա ալ՝ որուն կը խոստովանինք, մեզի նման ողորմելի մարդ մըն է, և Քրիստոսի օրինակաւը ամենայն սէր և գթութիւն կը բանեցընէ, դիւրացնելով մեզի մեր խոստովանութիւնը, և իրեն երկնային պաշտօնովը՝ փակելով մեր առջին դժոխքին դռները, և արքայութեան դռները բանալով։ Ո՞վ է, որ ծովը ինկած ըլլալով, ձեռք չերկընցներ ան բարերար նաւաստւոյն որ զինքն ազատել կ'ուզէ։ Կամ ո՞վ է՝ որ անդունդի մը մէջ ինկնալու ատեն, սի-

րով յանձն չառնուր այն թեթեւ ցաւը, որ բարեկամ ձեռք մը իր մազերէն բռնելով՝ խալըսէ զինքը այն վտանգէն։ Նոյնպէս նաեւ մեղաւորը՝ ազատելու համար այգ. անել անդունդին մէջ ինկնալէն, որուն եզերացը քով կը գտնուի իր մահացու մեղքերովը, պէտք է որ խոստովանելու թեթեւ պատիժն ու ամօթը յանձն առնու, որպէս զի կարենայ ազատիլ յաւիտենական մահուանէն։

Այն խեղճ ողորմելիներն որ այս ամօթոյս չկարենալով յաղթել, կամ դէշ կերպով խոստովանանք եղեր են՝ ծածկելով մեղքերնին, և կամ չեն ուզած խոստովանիլ՝ և ան պատճառաւ դատապարտուեր են, արդեօք ինչ անողորմ ցաւով չեն տանջուիր այսօրուան օրս մեղքերնին պահելնուն համար։ Եթէ կարենային նորէն կենդանանալ, տարակոյս չկայ որ իրենց ամենէն աւելի ծանր և ամօթալի մեղքերն ալ՝ չէ թէ միայն քահանայի մը առանձին, այլ հրապարակի մէջ բազմութեան առջին ալ խոստովանելու չէին ամաչեր, միայն թէ կարենային ազատիլ իրենց պատիժներէն։ Բայց այն խեղճ հոգիներուն համար, ալ ճարճարակ չկայ։ Սակայն անոնք որ այս գրքոյկս կը կարդան, կրնան դեռ դարման տանիլ իրենց չարեացը՝ թէպէտ և ամենամեծ ըլլան մեղքերնին, անառակ որդւոյն պէս դիմելով Աստուծոյ ոտքը և խոնարհելով իրեն պաշտօնէին առջին՝ որ իբրև հայր բարեգութ պատրաստ է ընդունել զիրենք իր գիրկը և սիրով վարուիլ հետերնին։ Իսկ ով որ յամառելով իր մեղքը կը ծածկէ, վախնայ որ իրեն ալ նոյնը չպատա-

հէ, ինչ որ պատահեցաւ սպանիացի դժբախտ օրիորդի մը։

Սրբակաց քարոզչին մէկը՝ որ 'ի Սպանիա քարոզութիւն կ'ընէր, հիւանդ օրիորդէ մը կանչուեցաւ, որ ծանր վտանգի մէջ էր։ Այս օրիորդս լսած ըլլալով առաջուց այս քահանային ոգեշահ քարոզները, միտքը դրեր էր որ իրեն խոստովանի։ Շատ ուրախութեամբ ու սիրով ընդունեցաւ զխոստովանահայրը, և արտասուախառն հեկեկանօք կատարեց իր խոստովանութիւնն, 'ի մեծ ցնծութիւն և 'ի շինութիւն խոստովանահօրը։ Խոստովանահայրը ամեն բան լմնցընելով, իր կրօնակից ընկերոջը հետ՝ որ առաքինական ու սրբակեաց անձն մըն էր, վանք դարձաւ։ Իր սրբակեաց ընկերը վանք դառնալուն պէս, մէկէն մեծաւորին երթալով կը յայտնէ, որ այն միջոցին որ այդ օրիորդը կը խոստովանէր, հեռուէն այնպէս մը երևցեր է իրեն, որ իբրև թէ պատէն երբեմն երբեմն սև ձեռք մը երկընալով՝ օրիորդին բերանը կը գոցէր. և թէպէտ ամենայն կերպով հաւաստի էր ինքը աս տեսիլքիս վրայ, բայց չէր համարձակեր խոստովանահօրը ըսելու։ Մեծաւորը կը կանչէ մէկէն զխոստովանահայրը, և կը հրամայէ որ շուտով նորէն դառնայ իր ապաշխարող օրիորդին, ու զինքը կատարեալ զղջումի յորդորէ։ Կ'ելլայ կերթայ խեղճը գիշերով, և երբ տանը առջև կը հասնի, լացի ու ողբի ձայներ կը լսէ ներսէն. ներս մտնելով կ'իմանայ որ հիւանդին վրայ այլայլութիւն մը եկեր ու ժամ մը առաջ մեռեր էր։ Շատ կը տրտմի աս բանիս վրայ, և առանց

ձայն մը հանելու տնեցւոց, կ՚ելլայ եկեղեցի մը կ՚երթայ, և լալագին Աստուծոյ առջև ինկած կը խնդրէ, որ յայտնէ իրեն այդ խեղճ օրիորդին վիճակը։ Եւ ահա քիչ մը ատենէն կը տեսնէ յօդս կապեալ կաշկանդեալ մէկը, որ գողգոջուն ու ահաւոր ձայնով մը կ՚ըսէր իրեն. Ի զուր է. ալ ատկէ վերջը ինծի համար աղօթք մի՛ ըներ. ես այն օրիորդն եմ որ քիչ առաջ քեզի խոստովանեցայ. բայց ամօթալի մեղք մը ծածկելուս համար, որ քանի տարի առաջ մէկու մը հետ ըրեր էի, և ամօթէս բնաւ չէի կրցած խոստովանիլ, յաւիտենական տանջանաց մատնուեցայ։ Աս ըսելով՝ աներևոյթ կըլլայ ահաւոր ձայն մը հանելով։ Ո՜վ քանիներ այսպէսով յաւիտենական տանջանաց դատապարտուած են։

## § Ե

### Խոստովանահայրը խիստ է և սաստիկ պահանջող.

Շատ անգամ լսուած գանգատներէն մէկն ալ այս է, թէ խոստովանահայրը շատ բան կը պահանջէ 'ի խոստովանորդւոց. անձանց ու ընտանեաց հանգամանքը չի կշռեր. չնայիր թէ որպիսի ժամանակի մէջ կ՚ապրինք. թէ որ ընտանեաց մէջ կենալու ըլլար, ամեն բան աչքովը կը տեսնէր, և ան ատեն ուրիշ կերպով կը դատէր. բռնութեամբ սուրբ կ՚ուզէ ընել զմարդ. սաստիկ խղճահար է, և կ՚ուզէ որ ամենքը ի-

րեն պէս մտածեն ու ընեն։ Ասոնցմով և ուրիշ աս տեսակ խօսակցութիւններով, հազիւ թէ տարին մէկ մը կը խոստովանին, ան ալ առ հարկի, չուզելով, և որ չարն է անմեղներուն միտքը կը պղտորեն։ Տարակոյս չկայ որ այդ պիսիներն քրիստոնէութեան անունն ունին և ոչ հոգին. իրենց հաճոյքը ու խելքին համեմատ կ'ուզեն գործել, և ոչ ըստ Աստուծոյ. և թէ փոյթերնին չէ խոստովանութեամբ թողութիւն ընդունել մեղքերնուն, ու յաւիտենական փրկութիւն գտնել։ Վասն զի այն որ իր հոգւոյն փրկութեանը հոգ ու խնամք ունի, և իր մեղացը թողութիւն կը փափաքի, չէ թէ միայն չտժգոհար իր խոստովանահօրը վրայ, այլ նաև կը փափաքի որ խոստովանահայրը իր գիտցածին և ուզածին պէս ուղղէ զինքն և խրատէ, առաջնորդելով իր յաւիտենական փրկութեանը ըստ Աստուծոյ կամացը, և ոչ ըստ իւր ախտաւոր ու ակար տեսութեանցը։

Միթէ կրնա՞յ բամբասել մէկը զբժիշկը, ըսելով թէ սաստիկ պահանջող է, և կ'ուզէ որ ամեն ապսպրածներն անվրէպ կատարուին. մինչդեռ գիտէ բժիշկը ինչ որ կ'ապսպրէ. գիտէ որ այն դեղը անվրէպ կարևոր է ան հիւանդութենէն ազատելու համար. և որպէս զի վերադարձ չընէ հիւանդութեանը՝ այս կամ այն զգուշութիւններն կարևոր են։ Նոյնպէս ոչ երբէք չափազանց պահանջող կրնա՞յ ըսուիլ խոստովանահայր մը, որ իր խոստովանորդւոյն հոգևոր հիւանդութիւնները ճանչնալով, կը պահանջէ որ այդ հոգևոր դարմաններն ընէ, որպէս զի 'ի յաւիտենական մահուանէ կարե-

նայ ազատիլ։ Միթէ մեծ յանդգնութիւն մը չէ՞ հիւանդի համար, որ ինքը ուզէ հրամայել բըժշկին, ու ինքն իրեն դեղերն ընտրէ, չուզած դեղերը չառնէ. այդպիսի հիւանդը փոխանակ առողջանալու, իր մահը կ'երագէ։ Յար և նման մեղաւոր հոգի մըն ալ, որ հոգևորապէս հիւանդ ըլլալով, եթէ անհնազանդ գըտնուի իր հոգևոր բժշկին, մեծապէս վախ կու տայ իր յաւիտենական փրկութեանը վրայ։

Ըսածներնէս ցարդ յայտնի կ'ըլլայ, որ խոստովանորդին պարտական է յամենայնի հնազանդիլ հոգևոր հօրը, միտքը դնելով որ իր բարւոյն համար կ'ընէ՝ ինչ որ կ'ընէ։ Բայց աս բաներուս ճշմարտութիւնը ան ատեն միայն լաւ պիտի հասկընանք, երբ աշխարհքիս տեսարանին վարագոյրը մեզի համար գոցուելով ամեն մարդկային կրքերն դադրին. և ան ատեն պիտի ճանչնանք թէ որչափ իրաւացի, մանաւանդ թէ գիջողական են եղեր մեր խոստովանահարց պահանջմունքները։ Երանի մեզ, եթէ յաւիտենական ցաւոց ու ապաշաւանաց առիթ չըլլայ մեզի այս ճշմարտութեանց գիտութիւնը։

## § Զ

### Ինծի համար տարին անգամ մը խոստովանիլը բաւական է.

Կը գտնուին ոչ սակաւք որ խոստովանութիւնը առ հարկի և իբրև ծանր ու անտանելի բեռ մը սեպելով, հազիւ թէ տարին անգամ մը կ'ուզեն խոստովանիլ։ Այսպիսիք խղճերնին

հանգչեցնելու համար, եկեղեցւոյ գոնեա տարին անգամ մը խոստովանելու խիստ պատուէրը՝ ուղածնուն պէս քաշկռտելով, կ'ըսեն թէ եկեղեցւոյ հրամանը պարզ տարին անգամ մը խոստովանիլ է, և ոչ աւելի. ուստի խոստովանահօր տարւոյն մէջ հինգ վեց անգամ մը խոստովանելու իրաւացի յորդորը՝ աւելորդ ինքնահնար խստութիւն մը, խղճահարութիւն, ու բան գործ չունեցող մարդու գործ կը սեպեն. և այն պատճառաւ կ'արհամարհեն խոստովանահօր ըսածը, և այնպիսի խոստովանահօր մը 'ի խնդիր կ'ելլեն՝ որ այդ թուլութեան ձայն չհանէ: Բայց ինչպէս որ յայտնի է՝ այս կանոնը դնողը Լատերանու Դ. ժողովն եղաւ երեքտասաներորդ դարուն մէջ. որ տեսնելով հաւատացելոց թուլութիւնը որ տարիներով չէին խոստովաներ, ստիպուեցաւ այս պատուէրըս դնելու, որ գոնեա տարին անգամ մը խոստովանին, ապա թէ ոչ եկեղեցւոյ անդամակցութենէ կը զրկուին: Արդ ժողովքին որոշումը այս որոշ և բացայայտ բառերովս է. «Ամենայն հաւատացեալ յերկոցունց սեռից, յարբունս հասնելնէն ետև, գոնեա տարին անգամ մը խոստովանին մեղքերնին... և առ նուազն գոնեա 'ի Զատկի՝ հաղորդութեան խորհրդին մօտենան:» Սուրբ ժողովքին որոշմանը մէջ կրկին անգամ գոնեա բառը դրուած ըլլալը, յայտնի կը ցուցընէ՝ որ ժողովքը կ'ենթադրէ՝ թէ տարին շատ անգամ խոստովանելու է. և եթէ մէկը ծուլանայ, գոնէ տարին անգամ մը խոստովանելու է, որ 'ի հոգևոր հաղորդակցութենէ եկեղեցւոյ 'ի սպառ չկտրուի: Բայց

ենթադրելով ալ որ եկեղեցին բաւական սեպած ըլլար տարին անգամ մը խոստովանիլը, և աւելին բնաւ չպահանջեր, միթէ հոգւոյն փրկութեանը փոյթ ունեցող մը, ինչպէս ամենքնիս պէտք է ունենանք, կրնա՞ր հանգիստ քուն ըլլալ՝ մահուչափ մեղքով մը զԱստուած վշտացնելէն վերջը, մինչդեռ չգիտեր թէ երբ և ինչ կերպով պիտի հասնի իրեն մահը։ Եթէ հանգիստ քուն կ'ըլլանք՝ ըսել է թէ չենք մտածեր մեր յաւիտենական փրկութեանը վրայ. ապա թէ ոչ՝ ո՞վ խոստացեր է մեզի զատկական խոստովանութենէ մը ետքը մեռնելնիս. ոչ ապաքէն ամեն օր ամեն ժամ ամեն վայրկեան հարիւրաւորք ու հազարաւորք կը մեռնին, ոմանք յանկարծական մահուամբ, այլք ժամանակ չունենալով պատրաստուելու բարի մահուան մը՝ զգայութիւններն կորսնցընելով, ու շատերն ալ ապաշխարելու գործունեայ կամք ու յօժարութիւն չզգալով այն տագնապողական ու շփոթութեան վայրկեանին։ Այն պատճառաւ երանի կու տայ Տէրն մեր յԱւետարանի այն ծառային, որ իր տիրոջը կամքը գիտնալով, իր ամեն պարտքը կատարած, հանգիստ սրտով կը սպասէ իր տիրոջը գալուն։ Եւ ո՞րն է արդեօք մեր երկնաւոր տիրոջ ու հօրը կամքը. մեր անձանց սրբութիւնն ու փրկութիւնը։ Բայց ո՞վ է ան մարդը որ տարին անգամ մը խոստովանելով՝ իր անձին սրբութիւնը պահէ, ու փրկութեանը վրայ փոյթ ունեցող սեպուի. կարծեմ և ոչ ոք. վասն զի նոյն իսկ այդ անհոգութիւնն որով Աստուծոյ հետ հաշտուելու անփոյթ կ'ըլլայ մէկը, ընդդէմ է աւետարանա-

կամ ոգւոյն ու խրատուցն, որ կը սորվեցընէ մեզի որ եթէ մէկու մը պարտք ունինք՝ դատաւորին առջին չելած ճամբան երթալու ժամանակ ջանանք սրբել ու մաքրել մեր հաշիւը, որպէս զի չըլլայ թէ մեր ոսոխը զմեզ բանտը ձգէ։ Արդ ո՞վ է սատանայէն աւելի չար ոսոխ, և Աստուծմէ աւելի արդար ու խիստ դատաւոր մեզի համար։ Բայց այնչափ աւելի պիտի փութանք մեր հաշիւը սրբելու, որչափ որ Աւետարանին ըսածին համեմատ՝ չենք գիտեր ոչ զօրն և ոչ զժամանակն, յորում Աստուած մեզմէ պիտի պահանջէ այդ հաշիւը. այս միայն գիտենք որ մեր չկարծած օրն ու ժամը պիտի պահանջէ։

Արդ խոստովանահօր այդ պահանջմունքը ստէպ ստէպ խոստովանելու, չէ թէ միայն աւելորդ խստութիւն չէ, այլ գովելի և առաքինական ջանք մը մեր փրկութեանը համար, մանաւանդ թէ պարտք մըն է իրեն. և երանելի է այն հաւատացեալն, որ հնազանդելով այդ յորդորանացը, արժանի կ՚ըլլայ «Զերծանել յայնմ ամենայնէ որ լինելոց է, և կալ առաջի Որդւոյ մարդոյ։»

## § Է

### Մեղք չունիմ որ խոստովանիմ.

Կը գտնուին դարձեալ այնպիսիներ ալ, որ բերաններին վարժեցուցեր են ըսելու, թէ մեղք չունինք որ խոստովանինք. վասն զի ոչ ուրիշի անիրաւութիւն ըրեր ենք, ոչ գողութիւն և ոչ

ալ մարդասպանութիւն, և այսպէս տարինե-
րով խոստովանանք չեն ըլլար. այսպիսեաց
հարցընելու է, թէ արդեօք ամեն խոստովա-
նանք եղող՝ մարդասպան, կամ գող ու անի-
րաւ աւազակ է. չէ թէ ասոնցմէ դուրս ուրիշ
շատ անիրաւութիւններ ալ կան ընդդէմ Աս-
տուծոյ, ընդդէմ անձին, և ընդդէմ ընկերին,
առանց գող ու մարդասպան ըլլալու: Ի բաց
թողլով ուրիշ մը և իցէ անիրաւութիւն, որ այս
ըսողներս կրնան ըրած ըլլալ, ես միայն կ՚ը-
սենք՝ որ առաջին և ամենէն մեծ անիրաւու-
թիւններն այն է՝ որ տարիներով գաղջութեամբ
ու պղերգութեամբ Քրիստոսի կենարար մար-
մնոյն ու արեանը չեն մօտեցած, որով մեռած
են ըստ Աստուծոյ, ու երանական յարութեան
արժանի չեն: Վասն զի Քրիստոսի Տեառն մե-
րոյ ըսածին համեմատ, «Ամէն ամէն ասեմ
ձեզ. եթէ ոչ կերիջիք զմարմին որդւոյ մարդոյ,
և արբջիք զարիւն նորա, ոչ ունիք կեանս յան-
ձինս: Որ ուտէ զմարմին իմ, և ըմպէ զարիւն
իմ, ունի զկեանս յաւիտենականս. և ես յա-
րուցից զնա յաւուրն յետնում.» (Յովհ. Գլ. Զ.
տ. 54, 55): Երկրորդ անիրաւութիւններն այն է,
որ եկեղեցւոյ բացարձակ հրամանը առ ոտն
հարկանելով՝ տարիներով չեն խոստովանած,
որով կտրուած են յանդամակցութենէ եկե-
ղեցւոյ, և քրիստոնեայ չեն սեպուիր. վասն զի
Քրիստոսի վճռոյն համեմատ եկեղեցւոյ ան-
հնազանդ եղողը և ոչ իսկ քրիստոնէական ա-
նուան արժանի է. «Եւ եթէ եկեղեցւոյն ոչ
լուիցէ, եղիցի քեզ իբրև զհեթանոսն և զմաք-
սաւոր.» (Մատ. ԺԸ. 17): Երրորդ անիրաւու-

թիւններն այն է որ ստախօս են ու մեծ ստախօս, և կ'ուզեն զԱստուած խաբել. վասն զի Յովհաննէս առաքելոյն ըսածին համեմատ. «Եթէ ասիցեմք, եթէ մեղս ինչ մեք ոչ ունիմք, զանձինս խաբեմք, և ճշմարտութիւն 'ի մեզ ոչ գոյ....: Եթէ ասիցեմք՝ եթէ ոչ ինչ մեղաք, սուտ առնեմք զնա. և բանն նորա ոչ է 'ի մեզ.» (Թուղթ. Յովհ. Առաք. Գլ. Ա, 8, 10): Արդ այն որ մեռեալ է յԱստուած, այն որ քրիստոնէական անունն իսկ չունի, ան որ ստութեամբ ճշմարտութենէ հեռու կը պտըտի, միթէ կրնայ ըսել թէ մեղք չունի. ուր թողունք որ եթէ արդարը օրուան մէջ եօթն անգամ կ'իյնայ, եթէ արդարն հազիւ Աստուծոյ առեանին առջև կրնայ երևնալ, իսկ այսպիսիք որ Քրիստոսի ըսածներուն համեմատ և ոչ իսկ արդարութեան ստուերը ունին վրանին, արդեօք քանի՞ անգամ օրուան մէջ չեն իյնար. ու ինչ համարձակութեամբ Քրիստոսի ահաւոր առեանին առջև պիտի երևնան: Անոր համար լաւ կ'ըլլայ որ այսպիսիք սաղմոսերգուին ըսածին պէս, իրենց սրտին խորը մտնան, և ան ատեն Աստուած կը փառաւորուի. վասն զի ճանչնալով իրենց տկարութիւնը, և փութալով հաշտուիլ Աստուծոյ հետ խոնարհ խոստովանութեամբ, զԱստուած կը փառաւորեն, յամօթ առնելով զսատանան, որով և Աստուծմէ ալ կը փառաւորուին թէ աստ և թէ յերկինս:

---

# ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

## ԳԼՈՒԽ Ա.

### ՑԱՂԱԳՍ ՔՆՆՈՒԹԵԱՆ ԽՂՃԻ

*Լաւ խոստովանելու համար պէտք է ըրած մեղքերնիս գիտնանք. իսկ ըրած մեղքերնիս գիտնալու համար՝ հարկ է քննենք խղճմըտանքնիս։ Խղճմըտանքնիս քննելն այնպէս հարկաւոր է, որ եթէ աս բանիս մէջ պակսինք, և ան պատճառաւ մահուչափ մեղք մը խոստովանելու մոռնանք, խոստովանութիւննիս բանի չիգար։ Քննութիւն ընելով չենք հասկընար որ ժամերով գլուխնիս ճաթեցնենք խղճերնուս վրայ մտածելով, ինչպէս խղճահարները կ'ընեն, այլ մտադիւր պարապմամբ կէս ժամ մը, աւելի կամ պակաս, մեր խղճին խորը մտնալ, և մեր սովորական խորհրդոց և գործոցը վըրայ քննութիւն մը ընել. բայց այնպիսի ուշա-*

դրութեամբ՝ ինչպէս որ մեր կարեւոր գործոցը մէջ կընենք։ Ըսինք աւելի կամ պակաս. վասն զի ով որ երկար ատենէ 'ի վեր չէ խոստովանած, որով ստէպ մեղքի մէջ ինկնալով խիղճը ծանրացուցած է, այնպիսին համբերութիւն ալ պիտի ունենայ աւելի երկար ատեն ծախելու այս քննութեանը, որպէս զի անօգուտ չըլլայ խոստովանութիւնը. իսկ ով որ ստէպ կը խոստովանի, այնպիսւոյն բաւական է քանի մը վայրկեան քննել խիղճը, իր սովորական պակասութեանցը վրայ աչք մը ձգելով։

Որոնք որ երկար ատեննուան մը քննութիւն պիտի ընեն, դիւրացնելու համար իրենց գործը, լաւ կ'ըլլայ որ մտածեն նախ մի առ մի Աստուծոյ պատուիրանացը վրայ, թէ որո՛նց մէջ պակսեր են. ինչպէս մտածել դարձեալ եկեղեցւոյ պատուիրանաց, անձնական պարտուց և եօթն մահուչափ մեղաց վրայ։ Դարձեալ քննութիւնը ուղղել խորհրդոց, բանից, գործոց և զանցառութեանց վրայ, մանաւորապէս ուշ դնելով թէ ինչ տեսակ տեղեր յաճախեր են, ինչ տեսակ մարդիկներու հետ վերաբերութիւն ունեցեր են, ու ինչ պարապմունքի ետեւէ եղեր են. որ տեսակ ախտի աւելի հակամիտութիւն զգացեր են, և ինչ տեսակ մեղքերու մէջ աւելի ստէպ սահեր են։ Ով որ ասկերպով լաւ քննութիւն մը կ'ընէ խղճի, թէ և մոռացմամբ մահուչափ մեղք մը չխոստովանի, խոստովանութիւնը վաւեր և ընդունելի կ'ըլլայ, և բովանդակ մեղացը վրայ զղջալով, յայտնի է թէ անոր վրայ ալ զղջացած կ'ըլլայ. միայն թէ խոստովանութենէն վերջը եթէ միտ-

քը գալու ըլլայ մոռցած մահուչափ մեղքը, պարտական է խոստովանելու. Նոյն մեղքը միայն՝ քահանային, և ոչ բովանդակ խոստովանութիւնը կրկնել։ Այս ըսած բաներնուս դիւրութեանը համար, այս հետևեալ կերպը կը դնենք։

### 1. Ես եմ Տէր Աստուած քո.

Խորհուրդք. Արդեօք Հաւատոյ դէմ խորհրդոց տեղիք տուեր է. արդեօք Հաւատոյ մէկ մասի մը վրայ երկբայեր է. արդեօք անվստահութիւն ունեցեր է Աստուծոյ ողորմութեանը վրայ. արդեօք վստահութիւն ունեցեր է Աստուծոյ ողորմութեանը վրայ՝ ան տեսակ բաներու մէջ, որ իրեն ողորմութեանը դէմ կ'ելլեն. կամ Աստուած ողորմած է ըսելով՝ յանդգներ է աւելի մեղանչելու. արդեօք երազոց հաւատք ընծայեր է. արդեօք լռելեայն կամ յայտնի սատանան օգնութեան կանչեր է. արդեօք աւելի կամ հաւասար Աստուծոյ՝ սիրեր է արարած մը։

Բանք. Արդեօք Աստուծոյ դէմ գանգատեր է. Կրօնքի դէմ դէշ խօսեր է. ուրիշի աւելորդապաշտութիւն մը սորվեցուցեր է. մեղք ընելուն վրայ պարծեր է. արդեօք չար խորհուրդ տալով՝ զուրիշը աղէկութենէ արգիլեր է. և կամ զուրիշը վար զարկեր է իր աղէկութեանը համար։

Գործք. Արդեօք աւելորդապաշտութիւն մը 'ի գործ դրեր է. սատանային հետ հաղորդակ-

յութիւն ունեցեր է. գէշ ու արգիլած գրքեր կարդացեր ու քովը պահեր է, կամ ուրիշի փոխ տուեր է. սրբապղծութիւն ըրեր է։

Զանցառութիւնք. Արդեօք զանցառութիւն ըրեր է անհոգութեամբ հաւատոյ գլխաւոր մասունքը գիտնալու մարդկային նկատման համար. աղէկութիւն ընելը զանց առեր է. երկար ատեն զանցառութիւն ըրեր է հաւատոյ ներգործութիւններն ընելու. զանցառու եղեր է դիմելու առ Աստուած՝ 'ի մեծամեծ փորձութիւնս. աղօթք ընելու անհոգ եղեր է։

## 2. Մի՛ առնուցուս զանուն Աստուծոյ քո ընդունայն.

Խորհուրդք. Արդեօք միտք կամ յօժարութիւն ունեցեր է զԱստուած, զՍուրբ Կոյսն և զՍուրբս հայհոյելու, կամ երդումն ընելու անոնց անուանը վրայ։

Բանք. Արդեօք հայհոյեր է զԱստուած, զԿոյսն և զՍուրբս. արդեօք առանց մեծարանաց Աստուծոյ անունը բերանը առեր է. արդեօք սրբազան բաներն, ու Աստուծոյ խօսքը ծաղրու առեր է. արդեօք առանց հարկի, կամ սուտ, և կամ բան մը առանց լաւ գիտնալու երդուընցեր է. դարձեալ երդուընցեր է չարամաղթութիւն ընելով իր անձին կամ ուրիշի վրայ. արդեօք երդմամբ բան մը խոստացեր է, առանց միտք ունենալու կատարելու։

Գործք. Արդեօք համոզեր է զուրիշը սուտ

երդումն ընելու. արդեօք ուրիշի հայհոյելուն պատճառ եղեր է։

Զանցառութիւնք. Արդեօք զանցառութիւն ըրեր է ուխտը պահելու, կամ անփոյթ եղած, և կամ սաստիկ ուշացուցած։

### 3. Յիշեա սրբել զօր շաբաթուն.

Խորհուրդք. Արդեօք հաստատուն միտք ունեցեր է կիրակի օրերը պատարագ չտեսնալու, կամ առանց հարկի աշխատելու։

Բանք. Արդեօք եկեղեցին կամ սուրբ տեղը պղծեր է՝ սնոտի կամ անպարկեշտ բաներու վրայ խօսելով, կամ անպատշաճապէս ծիծաղելով կամ ծաղրածութիւն ընելով։

Գործք. Արդեօք առանց հարկի աշխատեր կամ աշխատցուցեր է ուրիշը կիրակի կամ տօն օրեր. արդեօք եկեղեցւոյ կամ եկեղեցական դէմ մեծարանքը կորսնցուցեր է. արդեօք կիրակի կամ տօնի օրերը մեղանչելու գործածեր է՝ խաղալով, պարելով ու ուտել խմելով։

Զանցառութիւնք. Արդեօք զանցառութիւն ըրեր է տօնի օր պատարագ տեսնելու, կամ նշանաւոր մաս մը թողլու, կամ կամաւորապէս ցրուած կենալու. արդեօք իր ձեռքին տակը աշխատողներուն վրայ փոյթ ունեցեր է, որ կիրակի օր պատարագ տեսնեն կամ չաշխատին. արդեօք կիրակին սուրբ պահելու համար բարի գործքեր զանց առեր է։

## 4. Պատուեա զհայր քո և զմայր.

---

### Որդիք քննեն ինքզինքնին.

Խորհուրդք. Արդեօք ատեր են հայրերնին կամ մայրերնին, և կամ իրենց մեծաւորները. անոնց մահը ուզեր են. կամ՝ի սրտէ արհամարհեր են զանոնք։

Բանք. Արդեօք անոնց դէմ գանգատեր են. արդեօք անիծեր կամ նախատեր են։

Գործք. Արդեօք քիչ մեծարանքով վարուեր են, կամ ծիծաղեր են վրանին. արդեօք ձեռք վերուցեր են, կամ անհնազանդ գտուեր են, կամ սաստիկ սրդողցուցեր են. արդեօք իրենց յետին կամքը կատարեր են, ևս առաւել բարեգործութեանց մէջ. իրենց համար աղօթք ըրե՞ր են։

Զանցառութիւնք. Արդեօք ծնողաց կենաց հարկաւոր եղած բաները պակաս ըրեր են, կամ իրենց օգնելու անհոգ եղած են. արդեօք վերջին հիւանդութեան մէջ զանցառութիւն ըրեր են կրօնքի մխիթարութիւնները մատակարարելու։

### Ծնողք պէտք է քննեն ինքզինքնին.

Խորհուրդք. Արդեօք ատեր են որդիքնին, կամ անոնց մահուան փափաքած են։

Բանք. Արդեօք անիծեր են որդիքնին. արդեօք առջևնին անպարկեշտ բաներու վրայ

խօսեր, կամ բամբասեր, կամ վնասակար բաներ ըրեր են։

Գործք. Արդեօք բռնադատեր են որդիքնին՝ որ չուզած վիճակնին յանձն առնուն. արդեօք մեղաց կամ փորձութեան առթի մը մէջ դրեր են զանոնք. արդեօք բարկութեամբ կամ առանց պատճառի պատժելով հետերնին վարուեր են. արդեօք գայթակղեցուցեր են, զիրենք անպատշաճ գործեր առջևնին ընելով։

Զանցառութիւնք. Արդեօք զանցառութիւն ըրեր են որդիքնին պատարագի, կամ քրիստոնէական հրահանգի խաւրելու. արդեօք աղօթք կամ հաւատոյ հարկաւո՛ր բաներ սորվեցնելու անփոյթ եղեր են. քրիստոնէական դաստիարակութիւն տուած են. խրատած և յանդիմանած են երբ արժանի էին. արդեօք անհոգ եղեր են վնասակար սէրերէ ու ընտանութիւններէ զգուշացնելու. բարի օրինակ տալէ պակսեր են։

Այրն. Պէտք է քննէ ինքզինքը թէ արդեօք դառնութեամբ վարուեր է կնկանը հետ, կամ նախատեր ու ծեծեր է զինքը, և կամ առիթ տուեր է անհաւատարիմ գտնուելու. արդեօք կենաց պահպանութեան հարկաւոր եղած ապրուստն ու զգեստը տուեր է իրեն և որդւոցը. արդեօք ան ստակը որ իր ընտանեաց պիտոյիցը համար պիտի գործածէր՝ խաղի, պանդոկներու ու անառակ վարուց ծախսեր է։

Կինն. Պէտք է քննէ որ յամենայնի հաւատարիմ եղեր է ամուսնոյն. հնազանդեր է իրեն մտադիւրութեամբ և ոչ առ հարկի. արդեօք իր համարձակութեամբը տհաճութեան

պատճառ եղեր է. ճոխութեանց և աւելորդ զարդասիրութեան համար ստակ վատներ է. արդեօք տղայոց աղօթք ու կրօնական պարտքերնին սորվեցուցեր է. արդեօք տղոցը նկատմամբ մասնաւորութիւն ցըցուցած է։

Տեարք և Տիրուհիք. Արդեօք ծառայից պատարագ տեսնելուն արգելք եղեր են, կամ բռնադատեր են զիրենք աշխատելու տօն օրեր. արդեօք փոյթ ունեցեր են որ ծառայք աղօթքնին ընեն ու ատենին խոստովանելով հաղորդուին. արդեօք վարձքերնին կտրեր են. արդեօք փոյթ ունեցե՞ր են ծառայից բարոյականին վրայ, և ուղղելու միջոց ունենալով անհոգացեր են. չար օրինակ տուեր են. դէշ բանի մը վարժեցուցեր են։

Ծառայք և Աղախնայք. Պարտքերնին կատարեր են հպատակելով օրինաւոր բաներու մէջ. Տէրերուն դէմ խօսեր են. ժամանակնին դատարկ անցուցեր են. տէրերնուն ստացուածոց վրայ լաւ խնամք ունեցեր են. գողցեր, կամ վատներ, կամ որ և իցէ կերպով վնաս հասուցեր են իրենց. իրենց անհոգութեամբը տէրերնուն կողոպտուելուն պատճառ եղեր են. տան մէջ եղող տղայոց կամ ուրիշ ծառայից չար օրինակ եղեր են։

### Զ. Մի սպանաներ.

Խորհուրդք. Արդեօք ատելութիւն կամ նախանձ ունեցա՞ւ ընկերոջը վրայ. արդեօք վրէժխնդրութեան ոգի ունեցա՞ւ. արդեօք ուրիշին մահ կամ չարիք փափաքեցա՞ւ. ուրիշին մա-

հուան ու թշուառութեանը վրայ ուրախացա՞ւ. կամ ուրիշի բարւոյն վրայ ցաւ զգա՞ց, և կամ թշնամւոյն ներե՞ց։

Բանք. Արդեօք ուրիշին կամ իրեն մահը ուզե՞ց. արդեօք ուրիշին սպանութեան, կամ վնաս հասցընելու խորհուրդ տուա՞ւ վրէժխնդիր ըլլալու համար. արդեօք նախատե՞ց, չարախօսե՞ց ու բամբասե՞ց զայլս։

Գործք. Արդեօք զինքն և կամ զայլս սպաննելու փորձ ըրե՞ր է. արդեօք նախատանաց վրէժխնդիր եղե՞ր է. կամ զարկեր, վիրաւորեր և կամ սպաններ է զոք. արդեօք կռուի թշնամութեան, կամ հակառակութեան պատճառ եղե՞ր է անիրաւաբար. արդեօք չար օրինակ ու գայթակղութիւն տուե՞ր է ընկերոջը. արդեօք պաշտպան ու ձեռնտու եղե՞ր է չարագործաց։

Զանցառութիւնք. Արդեօք ընկերոջը վերահաս չարիքը խափանելու անհոգ եղե՞ր է, խափանելու միջոց ունենալով. արդեօք թշնամանաց ներելու, և կամ ուրիշի օրինաւոր հատուցումն ընելու անփոյթ եղե՞ր է։

## 6. Մի շնար.

Բանք. Արդեօք մաքրութեան դէմ անպարկեշտ խօսակցութիւններ ըրե՞ր է, և անհամեստ երգեր երգե՞ր է. արդեօք այնպիսի չարամիտ, անպարկեշտ, կամ երկբան խօսքեր ըսե՞ր է, որով լսողներուն միտքը անհամեստ խորհուրդ իյնայ. և կամ պիղծ պատմութիւններ, առասպելներ կամ դէպքեր պատմե՞ր է։

Գործք. Արդեօք անմաքուր և անվայել գործքեր ըրեր է իր անձին կամ ուրիշ նոյնասեռի կամ օտարասեռի հետ. արդեօք հաճութեամբ նայեր է անպատեհ առարկայից վրայ. արդեօք համ առնելով մտիկ ըրեր է անպարկեշտ խօսքեր, պատմութիւններ ու երգեր. արդեօք գայթակղական թատրերգութեանց, ու պարերու ներկայ գտնուեր է. արդեօք անպատեհ գործ մը ըրեր է ուրիշի առջև. արդեօք ուրիշի անմեղութիւնը վտանգի մէջ դրեր է; զուրիշը ախտի վարժեցուցեր է. ուրիշի օգնական եղեր է մեղանչելու. արդեօք գէշ մտքով անպատշաճապէս հագուեր սգուեր է. արդեօք անհամեստ գրքեր, ինչ տեսակ ըլլան, կարդացեր է, և մասնաւորապէս այն վախճանաւ արդեօք դեռ քովը պահած ունի, կամ ուրիշի փոխ տուեր է։

Զանցառութիւնք. Արդեօք զանցառու եղեր է յառթից փախչելու. արդեօք արգիլելու կարողութիւն ունենալով, զանցառութիւն ըրեր է զուրիշը 'ի մեղաց ետ կեցընելու։

Վեցերորդ պատուիրանին դէմ եղած՝ որ և իցէ խորհուրդ կամ մտածութիւն մեղք ըլլալով, աւելորդ սեպեցինք խորհրդով եղած մեղքերն յիշել հոս. որ արդէն իններորդ պատուիրանին մէջ պիտի դնենք։

## 7. Մի գողանար.

Բանք. Արդեօք զուրիշը խաբեր է ստութեամբ կամ խարդախութեամբ. արդեօք ու-

րիշի վնասուն խորհուրդ, կամ հաւանութիւն տուեր է. արդեօք ապօրինաւոր դաշինքներ դրեր է։

Գործք. Արդեօք գողցեր, կամ գողի ձեռք տուեր, և կամ գիտնալով ու մակաբերելով գողցած բան գներ է. արդեօք ընտանեաց մը տղէ բան գներ է. արդեօք անիրաւ դատի պատճառ եղեր է. արդեօք անիրաւութիւն մը ընելով չափազանց աժան բան գներ է. արդեօք գնելու կամ ծախելու ատեն խարդախութիւն ըրեր է, կամ կշիռքն ու չափը խարդախեր է. գէշ բանը աղէկի տեղ ծախեր է. արդեօք ապօրինաւոր վաշխով ստակ տուած է, կամ սուտ ստակը շիտակի տեղ. արդեօք ուրիշին ընչիցը վնաս հասուցեր է. բաժանորդութեան մէջ արդեօք անհաւասար բաժներ է. արդեօք ուրիշէն առածը ետ դարձուցեր է. արդեօք ուրիշին եղած վնասուցը հատուցումն ըրեր է. արդեօք արդարութեան կամ բարեգործութեան համար սահմանուած ստակը, կերուխումի կամ ախտից համար գործածեր է։

Զանցառութիւնք. Արդեօք զանցառութիւն ըրեր է խոստմանց կամ դաշինքին պայմաններուն վրայ կենալու. արդեօք աշխատաւորաց կամ ծառայից վարձքը կտրեր է. արդեօք իր յանձն առած պարտքերն ու կտակի պայմաններն կատարեր է. գողցուած բաները ետ դարձուցեր է. արդեօք առած վարձքին համեմատ աշխատեր է. արդեօք գտած բանը պահեր է՝ առանց տէրը փնտռելու. արդեօք ուրիշի ստացուածքը մատակարարելու ատեն անիրաւ գտնուեր է. արդեօք կարօտ աղքատաց նպաս-

տելու անհոգ եղեր է․ արդեօք ընկերոջը վնասը խափաներ է, երբոր կրնար և պարտական էր։

## 8․ Մի սուտ վկայեր․

*Խորհուրդք․* Արդեօք դատեր կամ կասկածեր է ընկերոջը վրայ՝ առանց բաւական հիմն ունենալու։

*Բանք․* Արդեօք սուտ ըսեր է, և թէ անով ընկերոջը վնաս մը եղեր է․ արդեօք առանց վստահ ըլլալու ուրիշի վրայ ամբաստանութիւն ըրեր է․ արդեօք ծածուկ պահելու բան մը, դուրս հաներ է․ և կամ որոնց որ հարկաւոր չէր՝ ընկերոջ պակասութիւնները զուրցեր է․ բամբասանաց հաճութեամբ ականջ դրեր է, կամ բամբասողը գովեր է․ շողոքորթութիւն ըրեր է․ արդեօք սուտ վկայութիւն տուեր է, կամ զուրիշը 'ի նոյն յորդորեր է․ արդեօք զուրիշը խաբեր է․ արդեօք զուրիշը համոզեր է բարի գործքէ մը ետ կենալու։

*Գործք․* Արդեօք ուրիշին վրայ ըրած չարախօսութեամբն ու բամբասանքովը, մարմնաւոր վնաս մը կրեր է նոյն անձը․ արդեօք գժտութեանց պատճառ եղեր է, կամ ուրիշի բարւոյն արգելք։

*Զանցառութիւնք․* Արդեօք կարենալով արգելուլ բամբասանքը կամ չարախօսութիւնը, զանցառու գտնուեր է․ արդեօք ուրիշի պատշաճ արդարութիւնը հատուցեր է․ արդեօք ըրած չարախօսութիւններն ու բամբասանքը յետս կոչեր է նոյն անձանց առջև, որոնք որ

զրպարտութիւններն ու չարախօսութիւնները լսեր էին։

### 9. Մի ցանկանար կնոջ ընկերի քո.

Արդեօք անմաքուր խորհուրդներու տեղիք տուեր է, կամ անպարկեշտ մտածութիւններէ համ առեր է. արդեօք անպարկեշտ գործ ընելու փափաքեր է. արդեօք հագուել սգուելու մէջ գէշ դիտումն ունեցեր է. և կամ անանկ բանի մը մէջ, որ ըստ ինքեան գործն անտարբեր ըլլայ, դիտումը մեղանչական եղեր է. արդեօք փափաք ունեցեր է անպարկեշտ գրքեր ձեռք ձգելու, կամ անպատեհ բաներ լսելու։

### 10. Եւ մի ամենայնի որ նորա է.

Արդեօք փափաքեցաւ ապօրինաւոր ճամբով ձեռք ձգելու ուրիշին բանը. արդեօք դիտումն ունեցաւ ուրիշը խաբելու՝ գնելու կամ ծախելու մէջ. արդեօք ընկերոջ բան մը կորսնցնելուն փափաք ունեցաւ. արդեօք ուրիշէն փոխ ստակ առաւ, առանց հատուցանելու միտք ունենալու. արդեօք գողնալու կամ ուրիշին վնաս հասցնելու փափաք ունեցաւ. արդեօք չափազանց սիրտը կապած է ստակի հետ։

### Եկեղեցւոյ պատուիրանաց վրայ.

Եկեղեցին Աստուծմէ ընդունած իշխանութեամբը օրէնքներ կը դնէ, որոնք պարտական ենք պահելու՝ իբրև թէ Աստուծմէ դրուած ըլ-

լային։ Արդ ով՝ որ զանցառու կ՚ըլլայ եկեղեցական պատուիրանաց դէմ, նոյնպէս պարտական է խոստովանելու այն զանցառութիւններն ալ, ինչպէս կը խոստովանի տասնաբանեան պատուիրանքներուն զանցառութիւնը։ Ուստի ապաշխարողը քննէ պիտի ինքզինքը նախ, թէ արդեօք կիրակի ու տօն օրեր անվրէպ ու ամբողջապէս պատարագ լսեր է. արդեօք ուրիշին պատարագ տեսնելուն արգելք եղեր է. արդեօք հրամայեալ օրեր մսէ ու կըթեղէններէն ժուժկալեր է. արդեօք ծոմապահութեան զանցառութիւն ըրեր է սնոտի տըղայական պատճառներով. արդեօք ուրիշին պաքը կամ ծոմը աւրելու պատճառ եղեր է. արդեօք արգելեալ օրեր միս ու ձուկ խառն կերեր է. արդեօք տարին միանգամ մը խոստովանելու պարտքը կատարեր է. արդեօք նոյնպէս հաղորդուելու պարտքը կատարեր է. արդեօք եկեղեցւոյ ուրիշ օրինադրութեանց և կանոնաց հպատակեր է։

### Ողորմութեան գործոց վրայ.

Արդեօք՝ կարողութիւն ունենալով աղքատաց օգնելութիւն ընելու՝ անհոգութիւն ըրեր է, արդեօք պակասաւորները՝ գթութեամբ ու կարեկցութեամբ խրատեր և ուղղեր է. արդեօք սիրով համբերեր է նեղութեանց. ներեր է թշնամանաց, արդարութեամբ խորհուրդ տուեր է տարակուսելոց. արդեօք իրեն ձեռքին տակը եղող տգիտաց ուսուցեր է։

### Եօթն մահուչափ մեղաց վրայ.

Արդեօք ուրիշի չգիջանելով ու չխոնարհելով՝ ամբարտաւաններ է. արդեօք ագահութեամբ իր ընտանիքն կամ զուրիշները նեղեր է. արդեօք տարապայման բարկութեամբ նախատական կամ անվայել բառեր գործածեր է. արդեօք գինովցեր, կամ շատ կերեր է, և կամ զուարճանալու համար միայն կերեր է. արդեօք ուրիշի բարւոյն նախանձեր է, կամ զինքը վատահամբաւեր է, և կամ իրեն պատահած վնասուն վրայ ուրախացեր է. արդեօք ծուլութեամբ պակսեր է առ Աստուած և առ ընկերն ունեցած պարտքերէն, և ժամանակը պարապ անցուցեր։

### Սեփական վիճակին պարտուց վրայ.

Արդեօք պակսեր. է բարի օրինակ տալէն. արդեօք իրմէ կախումն ունեցողներուն՝ քրիստոնէական կրթութիւն տալու անհոգացեր է. արդեօք պաշտօնին կամ պարապմանցը մէջ արդար, գթասիրտ և պատուաւոր եղեր է։

### Ընդհանրական խոստովանութեան վրայ.

Ընդհանրական խոստովանութիւնը ոմանց համար վնասակար, այլոց օգտակար և ոմանց համար ալ կարևոր է։ Վնասակար է խղճահարներուն, որոնք առանց բանաւոր պատճառի կ'ուզեն երբեմն երբեմն նորոգել խոստո-

վանութիւններին։ Օգտակար է այնպիսեաց, որոնք ըստ կարգի և ըստ պատշաճի ատեններին խոստովաններ են. այլ ուզելով աւելի կատարեալ ու լաւագոյն կենաց ձեռք զարնել, կամ վիճակ փոխելու վրայ ըլլալով և կամ խոնարհութեան համար, կ'ուզեն նորոգել խոստովանութիւններին։ Իսկ հարկաւոր է անոնց համար, որոնք որ նախընթաց խոստովանութեանց մէջ չարութեամբ, ամօթով կամ երկբայութեամբ մահուչափ մեղք մը և կամ մահուչափ մեղաց պարագայ մը գիտութեամբ ծածկեր են՝ և կամ սուտ ըսեր են խոստովանութեան մէջ. կամ որոնք որ առանց լաւ պատրաստութեան խոստովանելով, մահուչափ մեղք մը մոռցեր են, կամ մոռնալու վտանգի մէջ դրեր են. որոնք որ նախընթաց խոստովանութեանց մէջ կատարեալ զղջումն, և կատարեալ առաջադրութիւն չեն ունեցած. որոնք որ մեղաց առիթէն չեն հեռացած, կամ գողցած բաներնին ետ չեն դարձուցած, կամ ուրիշի ըրած անարգանացն ու անուանակոտրութեանը դարման մը չեն ըրած, և կամ գայթակղութեան առիթը չեն վերցուցած։ Այս և այսպիսի պարագայից մէջ, պարտական է խոստովանորդին ընդհանրական խոստովանանք ըլլալ բոլոր կենացը, թէ որ ամենայն խոստովանութիւնները գէշ ըրեր է. և կամ ան ժամանակէն սկսելու է, երբ սկսաւ անհոգութեամբ ընել խոստովանութիւնները. բոլոր այն մեղքերն ալ յիշելով, որոնք որ արդէն մէյմը խոստովաներ է, ըսելով միանգամայն տարին կամ ամիսը քանի անգամ կը խոստովանէր ու կը հաղորդուէր։

# ԳԼՈՒԽ Բ

## ՄԵՂԱՑ ՑԱՒԻՆ ՎՐԱՅ

*Ըստ ուսուցանելոյ Տրիտենդեան Սուրբ Ժողովոյ, լաւ խոստովանելու՝ որով և Աստուծմէ մեղաց թողութեան արժանանալու համար, երեք բան հարկաւոր է ըստ աստուածային կարգաւորութեան. այսինքն՝ Զղջումն, Խոստովանութիւն, և Հատուցումն։ Այսինքն պարտական է ապաշխարողը Ա. Ներքին ցաւ և զարշումն զգալ գործած մեղացը՝ վրայ, հանդերձ առաջադրութեամբ ոչ ևս նոյն մեղաց մէջ իյնալու։ Բ. Անկեղծութեամբ խոստովանի պիտի բոլոր մահուչափ մեղքերը, յետ լաւ մը քննելու իր խիղճը։ Գ. Պիտի ընդունի արձակումն 'ի քահանայէն, և իրմէ դրուած ապաշխարանքը սիրով պիտի կատարէ։*

### § Ա.

*Զղջման կարևորութիւնը.*

*Զիղջն կամ ապաշաւը ըստ Տրիտենդեան Սուրբ Ժողովոյն, ցաւ մըն է հոգւոյ, զարշանք կամ զզուումն գործեալ մեղաց, հանդերձ առաջադրութեամբ ոչ ևս մեղանչելոյ։ Այս ներքին ցաւն՝ որով կ'ատենք զմեղս, և հաստատապէս մտքերնիս կը դնենք նորէն չմեղանչելու՝ Աստուծմէ մեղաց թողութիւն ընդունելնուս հա-*

մար, միշտ հարկաւոր եղած է, եթէ յօրէնս ատենաբանին, և եթէ 'ի գրաւոր և 'ի բնական օրէնս, ինչպէս կ'ուսուցանէ նաև Տրիտենդեան Սուրբ ժողովը։ Առանց զղջման՝ Աստուած թողութիւն չտար. վասն զի աստուածային արդարութիւնն ու իմաստութիւնը չկրնար ներել այն մարդուն՝ որ 'ի սրտէ զղջացած չէ բրածներուն վրայ. զայս կը սորվեցնէ մեզ բնական օրէնքը, որով մենք ալ յանցաւորի մը ներելէն առաջ, այս բանս առաջնաբար կը փնտռենք։ Արդ այս ցաւս կատարեալ ըլլալու համար՝ չորս պայման կը փնտռուի. որ պիտի ըլլայ Ա. Ներքին, Բ. Գերբնական, Գ. Գերագոյն, Դ. Ընդհանրական։

## § Բ

### Ներքին ցաւ.

Ցաւը ներքին պիտի ըլլայ, այսինքն միայն բերնով կամ շրթամբք պիտի չըլլայ, այլ ներքսապէս ալ, որ է ըսել 'ի սրտէ ցաւ ու ապաշաւ պիտի զգանք։ Ոմանք զղջման բառերը բերնով կ'ըսեն, առանց մտքով ու սրտով ալ ձայնակից ըլլալու. բայց ասիկայ բաւական չէ. վասն զի աւելի սիրտը քան թէ լեզուն պէտք է շարժի, մանաւանդ թէ բաւական է բեկեալ սիրտը ու խոնարհ հոգին միայն։ Միով բանիւ՝ ամէն առաջ պիտի գայ ցաւը՝ ունկից առաջ եկաւ յանցանքը. և որովհետև յանցանքն ու մեղքը 'ի սրտէ առաջ կու գան ըստ տէրունեան բանի, ապա ուրեմն զիղջն ալ սրտէն ա-

ռաջ պէտի գայ. « Ի սրտէ անձի ելանեն խորհուրդք չարք, սպանութիւն, շնութիւն, ցանկութիւն: » Աս պատճառաւ կ'ըսէ Աստուած Յովելեայ մարգարէին բերնովը. « Դարձարուք առ իս յամենայն սրտէ ձերմէ » (Գլ. Բ՝ 22). Հոս ոչ լեզու ոչ արտասուք կը յիշուին, այլ սիրտ: Ուստի Աստուծմէ թողութիւն առնելու համար, արտաքին լացն ու ողբը, և կուրծք զարնելներն հարկաւոր բաներ չեն, այլ ներքին լաց ու ցաւ պէտք է, մտածելով թէ ինչպէս վշտացուց զԱստուած, որ ամենամեծն է ամեն տեսակ աղէկութիւններով ու բարերարութիւններով, զորն որ պէտք չէր վշտացնէր. և թէ ինչպէս աստուածային պատժոց արդարապէս արժանի եղած է: Աս անդրադարձութիւններով՝ պէտի ջանայ ապաշխարողը սիրտն ու յօժարութիւնները փոխել, նորոգել ու մաքրել, ինչպէս կ'ըսէ Եզեկիէլ. « Արարէք ձեզ սիրտ նոր, և ոգի նոր. » անանկ որ եթէ առաջ իր սիրտն ու միտքը երկրաւոր բաներու տալով զԱստուած վշտացուցեր էր, հիմա ալ իր ամեն իղձն ու փափաքը Արարչին ու երկնաւոր բաներու վրայ դնելով՝ զԱստուած գոհ ընելով ուրախացընէ: Զափ աստիճան մը չկայ աս ցաւիս, այլ Յովելեայ ըսածին պէս այնպէս սաստիկ պէտի ըլլայ, որ կերպով մը սրտերնիս պատառոտի, զԱստուած անարգելնուս համար. « Պատառեցէք զսիրտս ձեր: » Եթէ 'ի սրտէ առաջ չգայ մեր ցաւը, ըսել է թէ ճշմարիտ չէ զղջումնիս: Ուստի բաւական չէ ըսելը թէ մեղաւոր եմ, և պարզաբար մեղքերը խոստովանիլ. այլ հարկաւոր է որ խոստովա-

նելու  ատեն բաժնուի սիրտը մեղաց հաճոյքէն, ու ատէ այն մեղանչական գործերը, որ առաջ յօժարութեամբ կատարեր էր։ Ան մարդըն որ թունաւոր բան մը կերեր է, ու անով կեանքը կորսընցնելու վտանգի մէջ ինկեր է, տարակոյս չկայ որ մեծ հակառակութիւն մը կը զգայ նոյն բանին դէմ, և ոչ երբէք մէյ մ'ալ բերանը կը դնէ այն թունալից կերակուրէն. նոյն հակառակութիւնն ու ատելութիւնը պիտի զգայ մեղաւորն ալ մեղաց դէմ։ Անոր համար անոնք որ առանց կատարեալ զղջման ու հաստատուն առաջադրութեան, պարզ մեղքերնին խոստովանելով կ'ուզեն ամբողջ խղճերնին հանդարտեցնել, վախճաններնուն չեն հասնիր ինչու որ մեղքը ատելով վարքերնին չուղղեն, որուն համար հաստատուած է միայն խոստովանութեան խորհուրդը։

Պէտք է գիտնալ որ չէ թէ ամբաստանութիւնն սիրտը կը փոխէ, այլ նորոգեալ ու փոփոխեալ սրտին փրկարար և օգտակար կ'ընէ մեղաց ամբաստանութիւնը։ Սաւուղ և Դաւիթ հաւասարապէս կը ճանչնան ու կը խոստովանին մեղանչած ըլլալնին ընդդէմ Աստուծոյ։ Կ'ըսէ Սաւուղ առ Սամուէլ. « Ես մեղայ, ես անարգեցի զօրէնս Աստուծոյ, և արդ բարձ զմեղս իմ, և երկիր պագից Տեառն Աստուծոյ քում։ » Իսկ Սամուէլ փոխանակ ըսելու թէ Աստուած մեղացդ թողութիւն տուաւ, պատասխանեց. « Արհամարհեաց զքեզ Տէր։ » Դաւիթ Նաթան մարգարէին կ'ըսէ. « Մեղայ Տեառն. » որուն մէկէն պատասխանեց Նաթան. « Եւ Տէր անցոյց զքև զմեղս քո։ » Ի՞նչ

բանի արդեօք կրնանք տալ այս երկու մարգարէից հակառակ պատասխանները։ Ինչո՞ւ արդեօք այս երկու խոստովանութիւնները, որ արտաքսապէս նման են իրարու, իսկ հետևանքով ու վախճանով աննման։ Ասոր պատասխանն կու տայ Սուրբն Օգոստինոս՝ թէ խօսքերնին նոյն է, բայց սրտերնին նոյն չէ. Դաւթի սիրտը փոխուած էր, իսկ Սաւուղինը ոչ։ Դաւիթ ատեց մեղքը, գարշեցաւ մեղաց ցանկութենէն և խոստացաւ վարքը փոխել. իսկ Սաւուղ նոյնպէս չըրաւ. ոչ մեղքը ատեց, և ոչ ալ սրտով հեռացաւ մեղքէն. այլ իրեն բոլոր ցաւը մարմնաւոր բարեաց կորստեան համար էր։ Քանիներ աս կերպով խոստովանութեան ու Աստուծոյ ատենին ներկայանալով՝ ոմանք Դաւթի պէս արդարացած կ՚ելլեն, և այլք Սաւուղի պէս պարտաւոր. վասն զի առաջիններուն բերանը սրտերնին կը շարժէ. իսկ միւսներունը կը շարժի առանց իրենց իմանալուն։ Սուրբ Գիրքը այսպիսի անկատար զղջմանց խիստ շատ օրինակներ մեզի կ՚ընծայէ, որոնք որ Աստուծոյ գթութեանն ու ողորմութեանը արժանի չեն եղած. անոնց թշուառութենէն խրատուած պէտք է ջանանք մենք ալ, գոնէ կատարելապէս զղջալ ու ցաւիլ զԱստուած վշտացնելնուս համար, որ մէկ կերպով մը արժանի չէ վշտանալու։

## § Գ

### Ցաւ գերբնական.

Ցաւը, ինչպէս ըսինք՝ պէտք է ըլլայ գերբնական. վասն զի պէտք է որ առաջ գայ 'ի շնորհաց Հոգւոյն Սրբոյ, և հաւատոյ մէկ մտածութենէ մը, և ոչ բնական պատճառէ: Այս գերբնական շնորհը կը տրուի մեզի 'ի շնորհաց Սրբոյ Հոգւոյն, եթէ մենք ալ գործակից ըլլանք Աստուծոյ շնորհացը, կանխելով խնդրել զայն 'ի բոլոր սրտէ, երբ սրտերնիս գեռ կապուած կը տեսնենք մեղաց չար ցանկութեան հետ. գիտենք վստահութեամբ առ Աստուած, համոզմամբ թէ առանց իր շնորհացը բան չենք կրնար ընել, ինչպէս է իրօք: Պէտք է ըսինք առաջ գայ հաւատոյ մէկ մտածութենէ մը. վասն զի զղջումը գերբնական մէկ պատճառէ մը պէտք է յառաջ գայ, զոր հաւատոյ լուսով ճանչցած ըլլանք, որ Աստուծոյ ու յաւիտենական կենաց հետ վերաբերութիւն ունենայ, և ոչ թէ սոսկ բնական, երկրաւոր և մարդկային պատճառէ մը առաջ եկած ըլլայ:

Առոյգ և ծաղկահասակ երիտասարդ մը, ենթադրենք որ քիչ ատենի մէջ՝ մարմնական մեղաց համար կը հիւծի կը մաշի, պատի գոյն կ'առնէ, և հազիւ թէ ոտքի վրայ կրնայ կենալ: Այս վիճակիս մէջ ինքը կ'ողբայ ու կ'ատէ զմեղքը փափաքելով որ գործած չըլլար: Բայց ինչու. վասն զի կը տեսնէ որ այդ մեղքերուն համար, իր ծաղիկ հասակին մէջ մահուան

գուռը հասեր է, և կեանքը օրերով ու ժամերով չափուած է։ Այս ցաւս, ինչպէս յայտնի է, իր անձը սիրելէն առաջ կու գայ, իր էութենէն՝ որ եղծանելու վրայ է, և ոչ զԱստուած սիրելէն զոր վշտացուցեր է. և ասով սոսկ բնական պատճառէ մը առաջ կու գայ, որ Աստուծմէ թողութիւն ընդունելու համար բաւական չէ։ Օրիորդ մը կը ցաւի ու կ'ողբայ մարմնական ու անկարգ մեղաց մը վրայ. վասն զի երբոր այս մեղաց հետեւանքէն ուրիշները ճանչնալու ըլլան իր անկարգութիւնը, պատիւը կը կորսընցնէ, ու չկրնար մէջ մ'ալ կարգուիլ։ Ասիկայ ալ նոյնպէս մարդկային ու երկրաւոր վախճանով մը զղջալուն համար, անարժան է թողութեան։ Անտիոքոս՝ Աստուծոյ ժողովուրդը հալածելէն, ու տաճարին սուրբ անօթները յափշտակելէն ու պղծելէն վերջը, հիւանդացաւ ու ըրած մեղացը վրայ սկսաւ զղջալ, ողբալ ու արտասուել. խոստանալով որ ետ դարձնելով սրբազան անօթները, Հրէից ալ ամեն տեսակ հատուցումն ընէ։ Ըստ արտաքին երեւութին կատարեալ ապաշխարող մը կը տեսնուի. այլ ըստ արդեանց և ըստ էութեան՝ սուտ ապաշխարող ու կեղծաւոր մըն է։ Վասն զի ոչ թէ զԱստուած վշտացնելուն, և ուրիշ գերբնական վախճանի մը համար կը զղջայ, այլ բնական վախճանի մը համար, ինչպէս օրինակի համար առողջութիւնն ու կեանքը կորսընցնելու վախէն. ու աս պատճառաւ Աստուծմէ թողութեան արժանի չեղաւ։ Ո՛հ քանի՛ քրիստոնեայք մեռնելու ատեննին արտաքսապէս զղջացած կ'երեւան, բայց թո-

ղութեան չեն արժանաւորիր․ վասն զի զղջալնուն մէջ Աստուծոյ սիրոյ սկզբնաւորութիւն մը, կամ զինքը վշտացնելնուն վրայ ցաւի զգացում մը չկայ։

Աս պատճառաւ պէտք է որ ապաշխարողը աւելի ազնուագոյն վախճանի մը համար զղջայ, որուն մէջը հանդերձեալ կենաց ակնկալութիւն մը, Աստուծոյ սէրը, կամ գոնէ սիրոյ սկիզբ մը ըլլայ։ Արդ գերընական զղջման պատճառները, որն որ հաւատքը մեզի կը սորվեցնէ չորս են․ Ա․ Աստուծոյ բարութիւնն ու կատարելութիւնը զոր անարգեցինք․ Բ․ Յոյս արքայութեան հատուցման․ Գ․ Երկիւղ պատժոց դժոխոց․ Դ․ Մեղաց տգեղութիւնն ու այլանդակութիւն։ Առաջին զղջման նպատակը՝ որ պարզ Աստուած է, կատարեալ կ'ընէ զղջումը․ միւս երեքը անկատար կ'ընեն բայց ոչ անզօր բոլորովին, հաւատոյ ճշմարտութեան մը վրայ հաստատուած ըլլալով հիմը։

Անկատար զղջումը հաստատուած է մեղքը ատելու ու անկէ 'ի սպառ խորշելուն վրայ, կամ մեղաց այլանդակութեանը համար, և կամ անկէ առաջ եկաց մեր հոգւոյն մեծ վնասուն համար։ Աս տեսակ զղջման մէջ, եթէ մեղքը հաւատոյ լուսով քննենք ու գերընական պատճառներու համար, սոսկումն ու ատելութիւն կը զգանք մեղաց դէմ՝ ինչպէս քիչ առաջ վերը ըսինք, որոնք երեքի կրնան վերածուիլ․ Ա․ Տեսնելով մահուչափ մեղքը Աստուած, արդարապէս սրդողած՝ կրնայ զրկել զմեղաւորը յաւիտեանս արքայութեան փառքէն․ Բ․ Կրնայ զինքը յաւիտեանս դժոխք

խաւրել. Գ. Հաւատոյ լուսով կը ճանչնայ, որ մեղանչելովը Աստուծոյ դէմ ատելի ու գէշ գործ մ'ըրաւ: — Երեք որդիք հօրերնուն հետ սեղան նստած ատեննին, վիճաբանութեամբ գլուխնին կը տաքնայ, հայրերնին մահացու հարուածներով կը վիրաւորեն, ու կը փախչին կ'երթան: Ես պահուըտած տեղերնին հանդիպելով իրենց, կը տեսնամ որ կուլան: Ուզելով իրենց լալուն պատճառն իմանալ, կը հարցնեմ առաջինին թէ ինչո՞ւ կու լաս. որուն կը պատասխանէ այսպէս. Կուլամ, վասն զի հայրս իրաւամբ բարկացած զիս տունէն դուրս պիտի վռընտէ, ու ինծի ինկած ժառանգութենէն զիս պիտի զրկէ: Կը հարցնեմ երկրորդին իր լալուն պատճառը, որն որ կը պատասխանէ. Հայրս ինծի դէմ սրդողած՝ զինքը վշտացնելուս համար, արդարութեան ձեռքը զիս կրնայ մատնել, որպէս զի ըստ արժանեացս պատժուիմ: Իսկ երրորդն ալ ասանկ պատասխան կու տայ. Ես ալ կուլամ, վասն զի հօրս դէմ ձեռք վերցընելով, անպիտան ու եպերելի գործ մը ըրի: Ահաւասիկ նմանութեամբ մը Անկատար զղջման պատճառներն ու կերպը: Աս պատճառներուս համար զղջալը, ինչպէս՝ արքայութեան կորստեան, դժոխքի արժանանալուն, ու զԱստուած վշտացնելուն համար, 'ի սիրոյ արդարութեան առաջ գալուն՝ որ մասամբ մը աստուածային սիրոյ ծնունդ է, բաւական կ'ըլլայ Աստուծմէ թողութիւն ընդունելու համար: Բայց աս ալ պէտք է գիտնալ, որ յաւիտենական պատիժներէն վախնալով միայն զղջալը, բաւական չէ թողութեան հա-

մար, եթէ այն վախին հետ յարակից չըլլայ նաև Աստուծոյ երկիւղը, որ իբրև արդարադատ դատաւոր իրաւամբք կը պատժէ. դարձեալ անոր համար ալ ցաւելով թէ ինչպէս իրեն արդարութիւնք ոտքի տակ առաւ։ Ապա թէ ոչ պարզապէս տանջանաց վախին համար զղջալը, բնական պատճառէ առաջ եկած է, և է անբաւական ցաւ մը, որուն մէջ ազնուական և գերագոյն նպատակ մը չկայ, ինչպէս կը տեսնենք Աստուծոյ երկիւղին մէջ, որ գերբնական ու ազնուագոյն վախճան մը ունի։ Օրինակի համար Փարաւոն ութերորդ պատժէն ետքը՝ սկսաւ խոստովանիլ թէ մեղանչեց, և ճանչցաւ որ Աստուած արդարապէս պատժեց զինքն ու իր ժողովուրդը։ Բայց որովհետև այս խոստովանութիւնս Աստուծոյ ճշմարիտ երկիւղէն առաջ չէր գար, այլ պարզ պատժոց վախէն, ան պատճառաւ չարդարացաւ։ Եւ ինչպէս կ'ըսէ Սուրբն Օգոստինոս. «Ինքը ոչ թէ յԱստուծոյ՝ այլ 'ի պատժոց կը վախէր. և սոսկ պատժէն վախելը, Աստուծմէ վախել ըսել չէ, որ միայն արդարոց տրուած է։» Ուստի ով որ պարզ տանջանաց վախին համար կը զղջայ, անանկ որ եթէ գժոխք չըլլար նորէն կը մեղանչէր, ըսել է թէ այսպիսին բնաւ սկիզբ մը չունի Աստուծոյ սիրոյն՝ որով մեղքը չատեր, ու այնպէսով թողութեան ալ արժանի չկրնար ըլլալ։

Մեղաց ցաւին հետ միացած պէտք ըլլայ քաղաքական յոյսը. վասն զի ով որ իր մեղաց ծանրութիւնը ճանչնալով, ըսելու ըլլայ թէ՝ ինծի համար լմնցած է. ինծի դարման չկայ. ան

Ցասուցած ինծի չողորմիր. այնպիսին Աստուծոյ ողորմութենէն յոյսը կտրելով, ողորմելի Յուդային պէս 'ի կորուստ կը դատապարտուի։

Կատարեալ զղջումը կըլլայ մեղքը ատելով, ու Աստուծոյ բարութիւնն ու անսպառ կատարելութիւնը արհամարհելուն վրայ ցաւելով, որ միշտ սիրոյ է արժանի, և ոչ երբէք ատելութեան։ Մեղաւորն ինքզինքը ամփոփելով, կը սկսի անդրադառնալ Աստուծոյ սիրոյն ու իր գեղեցկութեանը վրայ, ու կը սկսի ըսել. Ի՞նչ ըրի ես. յանդգնեցայ Աստուծոյ Մեծվայելչութիւնը առ ոտն հարկանել, զՍուրբն սրբոց, զանբաւելի Բարութիւնն։ Նախատեցի իմ Հայրս, որ այնպէս բարի և սիրելի էր ու բոլոր սիրոյս արժանի։ Ո՛հ երանի թէ զինքը վշտացուցած չըլլայի. աւելի կ'ընտրէի մեռնիլ, քան թէ զինքը վշտացնել։ Թէպէտ և յոյս կամ ակնկալութիւն մը չունենայի իրմէ, ոչ երբէք կ'ուզէի զինքը վշտացուցած ըլլալ։ Այսպէս ընելով կը նմանի այն տղուն որ բարկութեան մէջ զհայրը վիրաւորելով, բարկութիւնը անցնելէն վերջը զղջումի կուգայ, կը սկսի լալ ու ողբալ ըրած յանցանացը վրայ. բայց ոչ թէ ժառանգութիւնը կորսընցնելուն, կամ բանտի դատապարտուելուն, և կամ աշխարհքի առջև ամօթ կրելուն համար. այլ սոսկ անոր համար որ իր սիրական հօրը դէմ ձեռք վերուց, որն որ չէ թէ միայն այսպիսի անարգանաց մը արժանի չէր, այլ ընդ հակառակն արժանի էր սիրոյ, ու մեծարանաց. և ինքը այնպիսի սիրելի հօր մը յարգն ու բարութիւնը չճանչցաւ։ Ահա ասիկա է կատարեալ զղջումը։

Արդ այս երկու տեսակ զղջումները իրարու հետ բաղդատելով, կը տեսնենք որ առաջինը Աստուծոյ երկիւղէն կը ծնանի, երկրորդը զԱստուած սիրելէն։ Առաջինին մէջ երկիւղը մեզի աւելի կ'ընէ զմեղս, երկրորդին մէջ սէրը։ Տարակոյս չկայ որ երկրորդը, այսինքն սիրոյ զղջումը անհամեմատ աւելի կատարեալ ու Աստուծոյ ալ հաճոյական է, քան զառաջինը։ Երկու որդւոց մէջէն՝ որոնք հայրերնին վշտացուցեր են, մէկը կ'ըսէ իրեն. Կը ցաւիմ զքեզ վշտացնելուս վրայ, վասն զի զքեզ կը սիրեմ։ Իսկ միւսը կ'ըսէ. Կը ցաւիմ զքեզ վշտացնելուս վրայ, վասն զի քեզմէ կը վախեմ։ Ահաւասիկ այս է երկու զղջմանց զանազանութիւնը։

Կատարեալ զղջման յարգը այնպէս մեծ է առաջի Աստուծոյ, որ խոստովանութենէն առաջ ալ ներած է Աստուած այնպիսւոյն. այնպէս որ եթէ ըստ պատահման առանց խոստովանութեան մեռնի, փրկութեան կը հասնի առանց տարակուսի. ինչպէս պատահեցաւ մէկ մեծ մեղաւորի մը, որ կատարեալ զղջմամբ խոստովանելու ատեն, խոստովանութիւնը չլմնցուցած՝ հոն ինկաւ մեռաւ։ Քիչ ատենէն յայտնեցաւ սրբակեաց խոստովանահօրը, որ արդէն արքայութեան փառքը կը վայելէր նոյն ապաշխարող անձը, իր կատարեալ սիրոյն ու զղջմանը համար։ Նոյնպէս երբոր անգամ մը Սուրբ Վինկենտիոս Ֆերրարեան՝ եկեղեցւոյ մէջ քարոզ կու տար, ծանուցեալ մեղաւոր կին մ'ալ ներկայ էր քարոզին. այս կինս այնպէս զգածուեցաւ սրբոյն խօսքերէն, ու իր մեղացը վրայ անանկ կատարեալ ու սաստիկ ցաւ մը

իմացաւ, որ հոն այլայլութիւն մը վրան գալով՝ ինկաւ մեռաւ։ Երբոր ամենքը իբրև պատիժ մը կը սեպէին աս բանս, ըսաւ սուրբը. Մէ՛ վախէք իր փրկութեանը համար. իր ցաւը այնպէս մեծ եղաւ, որ յուսամ փրկութեան հասած է. աղօթք ըրէք իրեն համար։ Եւ ահա յանկարծ երկնքէն ձայն մը գալով հաստատեց Սրբոյն ըսածը։ Միթէ Մագդաղենացւոյն ալ ցաւը նոյնպէս չեղա՞ւ, որ մէկ վայրկենի մէջ ամենայն մեղաց թողութիւն առնելէն վերջը, արժանի ալ եղաւ լսելու 'ի Քրիստոսէ. « Թողեալ լիցին սմա մեղք իւր բազումք, զի յոյժ սիրեաց. զի որում շատ թողուցու, շատ սիրէ, և որում սակաւ՝ սակաւ։ »

§ Դ

Ցաւ գերագոյն.

Ցաւը, ինչպէս ըսինք առաջ, պիտի ըլլայ գերագոյն. վասն զի մեղքը չարեաց մէջ գերագոյն ըլլալով, ուրեմն ցաւերնիս ու զղջումնիս ալ պիտի ըլլայ գերագոյն. անանկ որ աւելի յանձն պիտի առնենք որ և իցէ զրկանաց ու վշտաց տանիլ, քան թէ մահուչափ մեղօք մը զԱստուած կրկին վշտացնել. միով բանիւ աւելի պիտի ուզենք մեռնիլ քան մեղաց մը հաւանութիւն տալ։ Եւ այս գերագոյն ցաւն է, զոր կը պահանջէ ապաշխարողէն Տրիտենդեան Սուրբ Ժողովը, Գերագոյնն 'ի ցաւս կոչելով։ Բայց գերագոյն ցաւ ըսելով՝ չենք իմանար որ ուրիշ առթով զգացած ցաւերէն ա-

ւելի զգալի ըլլայ։ Վասն զի բնութիւննիս աւելի դիւրազգաց է ներկայ ու մարմնական ռաթէ մը յառաջ եկած ցաւի, քան հեռաւոր և հոգեկան կարեաց մը ցաւին։ Օրինակի աղագաւ այս տարի հայրս կորուսի, և միանգամայն սոյն այս տարուանս մէջ ծանր ու մահուչափ մեղօք մ'ալ զԱստուած իմ երկնաւոր հայրս վշտացուցի։ Կրնայ ըլլալ որ հօրս մահուանը համար շատ աւելի արցունք թափած ըլլամ, բայց զԱստուած վշտացնելուս ցաւն ալ սրտիս մէջ աւելի խոր և ցաւալից տպաւորութիւն մը կ'ընէ։ Արդ գերագոյն ցաւ ըսածնիս ամենևին արտաքին նշաններու վրայ կեցած չէ, այլ ներքին սրտի բեկման ու տհաճութեան վրայ, թէ ինչպէս զԱստուած վշտացուցինք, որ կենօք չափ սիրելու պարտական էինք։ Սրբուհին Թերեզա այս կանոնս կուտայ, ճանչնալու համար թէ արդեօք գերագոյն է ցաւերնիս. «Այն անձը ճշմարտապէս ունի գերագոյն ցաւ, որ հաստատապէս միտքը կը դնէ մէյ մ'ալ չմեղանչելու. և շատ աւելի կը փափաքի ամեն բան կորսընցնել, քան թէ դառնալ նորէն 'ի մեղս։» Սրբուհին Շամունէ որ աւելի յանձն կ'առնէր ամեն բան կորսընցնել, քան թէ զԱստուած՝ մեղօք, երկու հակառակ կրից մէջ գտնուեցաւ. կամ մեղանչել ու եօթն զաւկըները ազատել մահուանէ, կամ մեղքէ փախչելով զինքն ու եօթն զաւկըները սրոյ տալ. առանց երկբայելու երկրորդը ընտրեց, որպէս զի տղաքը կրօնքնին չուրանան ու զԱստուած չվշտացնեն։

## § Ե

### Ցաւ ընդհանրական.

Ցաւը պէտք ըլլայ դարձեալ ընդհանրական. վասն զի կը գտնուին անանկ մարդիկ որ քանի մը մեղաց վրայ խորշումն զգալով՝ անոնց վրայ բոլոր սրտով կը զղջան, ինչպէս ըսենք գողնալ, հայհոյել, և այլն. բայց ընդհակառակն ուրիշ մեղաց վրայ ալ սրտերնին կապուած ըլլալով, կամ թէ ըսենք մեղաց յօժարութիւն զգալով, այն մեղաց վրայ նոյն սրտով չեն ցաւիր. որով մեղքը ատելով անկէ ետ կենալու ալ նոյն յօժարութիւնը չեն զգար: Այսպիսեաց խոստովանութիւնը յայտնի է թէ անզօր և անբաւական է. վասն զի Աստուծմէ թողութիւն առնելու համար, ամեն գործուած մահուչափ մեղաց վրայ կատարեալ զղջումն, ու կատարեալ ատելութիւն ու խորշումն ունենալ պէտք է, ինչպէս կ՚ըսէ Աստուած Եզեկիէլ մարգարէին բերնովը. « Եւ անօրէնն եթէ դարձցի յամենայն անօրէնութեանց իւրոց զոր արար... կելով կեցցէ և մի մեռցի: » Օրինակով մը ըսածնիս ուզելով բացատրել, եթէ մէկը տասը հոգւոյ պարտք ունենալուն համար բանտը դրուած ըլլայ, չկրնար բանտէն ազատիլ, եթէ տասնին ալ առնելիքը չտայ. անանկ որ եթէ իննին առնելիքը հատուցանէ և մէկունը միայն մնացած ըլլայ, նոյն մէկը կրնայ զինքը բանտին մէջ պահել տալ: Ասանկ ալ ապաշխարողը ամեն տեսակ մահուչափ մեղքէն սիրտը պէտք կտրէ, և

բնաւ մեղքի մը վրայ յօժարութիւն պիտի չմնայ սրտին մէջը, և ոչ փոքու իւիք, որպէս զի Աստուծոյ հետ հաշտուելով կարենայ արդարանալ։ Վասն զի ինչպէս սիրտ մը առ Աստուած դարձած կրնայ ըսուիլ, երբ կը սիրէ դեռ մեղք մը զոր Աստուած կատէ։ Որովհետև ամեն մահուչափ մեղք ատելի է Աստուծոյ, ուստի ան մեղաց վրայ որ չենք ցաւիր, բնականապէս նոյն մեղաց համար Աստուծոյ ատելի կը մնանք, որով ուրիշ մեղաց ալ թողութիւն չենք կրնար գտնալ։ Սուրբն Սեբաստիանոս Հռոմայ Կրոմատիոս ըսուած քաղաքապետին խոստացեր էր զինքը իր ոտքի ցաւէն բժշկելու, թէ որ ունեցած բոլոր կուռքերը ջախջախէ։ Քաղաքապետը տան մէջ ունեցած բոլոր կուռքերը փճացնելով՝ մէկ մը միայն պահեց, որ ոսկի ըլլալով՝ խորտակելու ձեռքը առաջ չգնաց։ Երբոր հիւանդութիւնը չէր անցներ, յուսահատած Սեբաստիանոսի գնաց։ Բայց Սուրբը գիտնալով որ ոսկիէ կուռքը պահեր էր, հրամայեց իրեն որ ան ալ խորտակէ. և կը տեսնես ըսաւ, թէ ինչպէս առժամայն կը բժշկուիս։ Կրոմատիոս Սուրբին ըսածն ընելով՝ իսկոյն բժշկուեցաւ։ Քանի՛ ապաշխարող ոգիներ մինչդեռ ամենայն մեղքերնին կ'արհամարհեն, և սրտերնուն մէջ մէկ երկու ոսկիէ կուռքեր կը պահեն, որով ոչ երբէք բժշկութեան արժանի կ'ըլլան, ու խղճերնին չի հանդարտիր։ Արդ ապաշխարողը ամեն մեղք հաւասարապէս ատելով, պիտի ըսէ Դաւիթ մարգարէին հետ. «Զմեղս ատեցի և անարգեցի, և զօրէնս քո սիրեցի։»

## ԳԼՈՒԽ Գ

### ԱՌԱՋԱԴՐՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ

Խոստովանութիւնը արդիւնական և Աստուծոյ ընդունելի ըլլալու համար, գլխաւոր պայմաններէն մէկն ալ է առաջադրութիւնը. վասն զի, ինչպէս որ նախընթաց գլխոյն մէջ ըսինք, զղջումը անկատար կ'ըլլայ, եթէ միացած չըլլայ մեղքերն ատելով՝ անոնցմէ մահուամբ չափ խորշելու ջանից և փութոյն հետ, որուն առաջադրութիւն կ'ըսենք։ Անոր համար Տրիտենդեան Սուրբ Ժողովն ալ կ'ըսէ. Առաջադրութեամբ ոչ ևս յապագայն մեղանչելոյ։ Ըստ Սրբոյն Թովմայի, առաջադրութիւնն է գործ հաստատուն կամաց մէյ մ'ալ չմեղանչելու։ Առանց ասոր, կատարեալ չկրնար ըլլալ զղջումը։ Նման այն մարդուն որ ծանր յանցանաց համար 'ի մահ դատապարտուած ըլլալով, իր Թագաւորը վրան գթալով կ'ուզէ իր կեանքը շնորհել, տեսնելով իր ապաշաւը. ուստի կը հարցընէ իրեն թէ կը խոստանա՞ս արդեօք մէյ մ'ալ նոյն յանցանքը չգործելու։ Իսկ յանցաւորը փոխանակ իսկոյն պատասխան տալու թէ՝ Այո՛, կը սկսի դեգևիլ, երկբայիլ և վերջապէս չկրնար խոստանալ. միթէ այսպիսւոյն Թագաւորը կրնա՞յ իրաւամբ շնորհք ընել. տարակոյս չկայ թէ ոչ։ Ապա ուրեմն նոյնը ըսելու է այն ապաշխարող մեղաւորին համար ալ, որ չուզեր իր մեղքերէն ետ կենալ։ Արդ որպէս զի առա-

ջադրութիւնը ըստ Աստուծոյ ըլլայ, պէտք է որ այս երեք նշաններս ունենայ. այսինքն ըլլայ հաստատուն, ընդհանուր, և գործունեայ։

§ Ա.

Հաստատուն.

Հաստատուն առաջադրութիւնն այն է, որ որոշ կերպով ու բացարձակ միտքը կը դնէ՝ որ մէյ մ'ալ նոյն մեղաց չդառնայ, Առաքելոյն առ Կորնթացիս ըսածին պէս. «Հաստատուն եղէ-րուք, անշարժ կացէք։» Բաւական չէ ըսելը թէ՝ տեսնեմ, կը ջանամ, թէ որ կարենամ՝ ջանամ ընել, և այլն. ասոնք անհաստատ կամաց նշան-ներ ու խօսքեր են. այլ ընդ հակառակն պէտք է ըսէ. կ'ուզեմ, հաստատուն միտքս դրած եմ, ինչ որ ալ ըլլայ՝ չեմ ուզեր ասկէց ետքը մեղան-չել։ Կան ոմանք որ առժամանակեայ առաջա-դրութիւն մը կ'ընեն, ըսելով օրինակի համար. ինչուան որ զատկական խոստովանութիւնս ու հաղորդութիւնս ընեմ, ամենայն կերպով կ'ու-զեմ հեռու կենալ մեղաց առթէն. կամ ուրիշ աս տեսակ ժամանակ կամ տօն մը կը սահմա-նեն. ասոնց առաջադրութիւնը յայտնի է թէ պակասաւոր է, և չեն կրնար թողութեան ու շնորհաց արժանի ըլլալ, և յայտնի է թէ նորէն իրենց փսխածը կը դառնան։ Այս ըսելով չենք հասկըներ որ խոստովանութենէն վերջը նո-րէն նոյն մեղաց մէջ իյնալը՝ ամեն անգամուն առաջադրութեան պակասաւոր ըլլալուն նշան ըլլայ. վասն զի կարելի է որ խոստովանութեան

միջոց հաստատուն եղած ըլլայ առաջադրութիւնը, բայց վերջէն վտանգաւոր առիթ մը ընդառաջ ելլելով կամ տկարանալով, նորէն մեղանչէ։ Այս ամենահաւաստի է, որ որչափ աւելի հաստատուն ըլլայ առաջադրութիւննիս, այնչափ աւելի ալ յառթից կը փախչինք, որով միայն կրնանք զգոյշ գտնուիլ և չսահիլ նոյն առջի մեղաց մէջ։ Ով որ ճամբէ մը անցնելով՝ միանգամ փոսի մէջ ինկեր է, յայտնի է թէ այնպիսին նորէն նոյն ճամբէն անցնելու ատեն, կը զգուշանայ հեռուէն կ'անցնի որ նորէն վըտանգի չհանդիպի։

Առաջադըրութիւննիս այնպէս հաստատուն պիտի ըլլայ, ինչպէս էր երից մանկանց կամքն ու գիտաւորութիւնը, ընդդէմ կամաց ու յորդորանաց Նաբուքոդոնոսորայ. որոնք իրեն խոստմունքներն ու սպառնալիքները հաւասարապէս արհամարհելով, աներկիւղ յերեսս 'ի վեր թագաւորին կ'ըսէին. «Այս ինչ յայտնի լիցի քեզ արքայ, զի զդիս քո մեք ոչ պաշտեմք, և պատկերիդ ոսկւոյ զոր կանգնեցեր երկիր ոչ պագանեմք։» Նոյն հաստատամտութիւնը կը տեսնենք Շուշանայ վրայ ալ. որ կամ մեղաց հաւանելու, և կամ պատիւն ու կեանքը կորսընցնելու վտանգի մէջ տեսնելով ինքզինքը, աւելի յանձն առաւ արիութեամբ երկրորդը, քան թէ առաջինը։ Ահաւասիկ այսպիսի պիտի ըլլայ քրիստոնէին ալ հաստատամտութիւնն ու առաջադրութիւնը, որ աւելի յանձն առնու պատիւ, հարստութիւն, մինչև կեանքն ալ կորսընցնելու, քան մահուչափ մեղօք մը զԱստուած վշտացնել. վասն զի երկրաւոր կո-

րուստները դարմանելի են, ու անդարման է միայն յաւիտենական կորուստը։

§ Բ

Ընդհանուր.

Հաստատուն առաջադրութեան երկրորդ նշանն է որ պիտի ըլլայ Ընդհանուր. այսինքն ինչպէս բոլոր ըրած մեղքերնուս վրայ պիտի զղջանք, նոյնպէս բոլորին վրայ ալ հաստատուն և ընդհանուր առաջադրութիւն պիտի դնենք, հաւասարապէս ամենէն զգուշանալու, և ոչ մէկ մեղքով մը զԱստուած կրկին վշտացնելու։ Ապա թէ ոչ առաջադրել քանի մը մեղքէ խուպառ զգուշանալ, և յոմանց ետ չկարենալ կենալ, Աստուծոյ ու սատանայի միանգամայն հաճոյ ըլլալ ուզել ըսել է, որ է հակասական և անկարելի. կամ բոլորովին Աստուծոյ պիտի ըլլանք՝ ամեն մեղք ատելով ու ամենէն խորշելով, և կամ բոլորովին սատանայի՝ շատ կամ մէկ մեղք մը սիրելով. վասն զի, ինչպէս Յակոբոս առաքեալը գեղեցիկ կը զուրցէ, այն որ մի սպանաներ ըսաւ, նոյն արդար Աստուածը մի շնար պատուիրանքն ալ հրամայեց. աս պատճառաւ նոյն առաքեալը կը հետևցընէ բնական կերպով թէ՝ « Որ ոք զամենայն օրէնսն պահիցէ, և միով իւիք գթիցէ, եղև ամենայն օրինացն պարտապան։ » Ան որ բոլոր օրէնքը կրնայ պահել, մէկը շատ աւելի դիւրաւ կրնայ պահել եթէ հաստատուն կամք ունենայ։

Ընդհանուր առաջադրութեան մէկ յատկու-

թիւնն ալ այս պիտի ըլլայ, որ արդարացի հատուցումը պատշաճապէս ու ըստ կարի փութով պիտի կատարուի։ Օրինակի համար, մէկը թշնամութեան իրաւացի կամ անիրաւ պատճառ մ'ունեցեր է մէկումը հետ. այն վայրկենէն որ կը խոստովանի, չէ թէ միայն ամենայն թշնամութիւն կամ սրտի ոխը պիտի դադրի, այլ նաև ներելու ոգին սրտին մէջ պիտի տիրէ, ու բոլորովին պիտի մոռնայ վրէժխնդիր ըլլալու եռանդը, թէ և ամենայարմար առիթ ունենայ վրէժխնդիր ըլլալու. ապա թէ ոչ անօգուտ է խոստովանութիւնը, մանաւանդ թէ սրբապղծութիւն։ Նոյնպէս եթէ մէկը ըրած գողութիւնը խոստովանելէն վերջը, չուզենայ գողօնքը ետ դարձնել կամ ամբողջապէս և կամ մասամբ մը, և կամ ուրիշի պատճառած վնասուն չուզենայ դարման տանիլ, ընդունայն է խոստովանութիւնը և սրբապղծութիւն մեծ. աս պատճառաւ ապաշխարողը աս մեղաց ամենայն պարագաները տեղն 'ի տեղը պէտք է զուրցէ, առանց բան մը զանց առնելու, որ խոստովանահայրն ալ կարենայ պատշաճ և կարելի դարմանը մատուցանել, և ըսածները ամենայն ճշդութեամբ պիտի կատարուին։ Դարձեալ եթէ մէկը չարախօսութեամբ կամ սուտ զրպարտութեամբ ուրիշին անունը կոտրեր է, պարզ խոստովանիլը բաւական չէ այսպիսի առիթներու մէջ. այլ պէտք է նաև խոստովանահօր թելադրութեանը համեմատ, դարման տանի ուրիշի անուան տուած վնասուն, եթէ վրան աղէկ խօսելով, և եթէ ըստ հարկին յետս կոչելով իր սուտ զրպարտութիւնը։

Նոյնպէս այն որ ուրիշի գայթակղութիւն տուեր է, չէ թէ միայն պարտական է նոյն մեղքէն ետ կենալ, այլ նաև բուժել գայթակղեալ միտքերը, թէ բարի օրինակ տալով ըլլայ և եթէ խօսքով, թէ որ այնպէս պատշաճ դատէ խոստովանահայրը։ Ահա ասոնցմով հաստատուն ու ընդհանուր կ'ըլլայ առաջադրութիւնը, և բաւական՝ մեղաց թողութիւն ընդունելու։

## § Գ

### Գործունեայ.

Գործունեայ կ'ըսուի առաջադրութիւնը, երբոր ապաշխարողը հաստատապէս միտքը կը դնէ որ ամեն կարելի եղած միջոցներն 'ի գործ դնէ նորէն մեղաց մէջ չիյնալու համար, որով հատուցում մը ըրած կ'ըլլայ գործած մեղացը։ Այս պատճառաւ կ'ըսէ Սուրբն Թովմաս, որ եթէ առաջադրութիւնն հաստատուն է, պէտք է ըլլայ միանգամայն գործօն։ Իսկ թէ ինչպէս կ'ըլլայ գործօն, կ'ըսէ դարձեալ նոյն հրեշտակային վարդապետը. Արմատաքի խլէ մարդ յանձնէ մեղքը. փախչի մեղքէն ու մեղաց առիթներէն. և նոյն փոյթն ու ջանքն ունենայ բարին գործելու, ինչ որ ունեցաւ չարը գործելու համար։

Նախ և առաջ ըսինք ապաշխարողին առաջադրութիւնը այն պիտի ըլլայ, որ արմատաքի խլէ յանձնէ՝ մեղքէն յառաջ եկած մնասակար սովորութիւնները. վասն զի ով որ խոստովանութենէն վերջը բան մը չուզեր ընել ինքզինքը ուղղելու, կամաց կամաց նոյն առջի անկար-

գութեանց մէջ կ'իյնայ։ Նորէն մեղաց մէջ չիյնալու համար, մտքերնիս հաստատապէս պիտի դնենք որ Աստուծոյ շնորհքովը որ և իցէ մեղաց դէմ կրնանք զօրանալ, և Սրբոյն Պօղոսի հետ կրնանք ըսել. «Ամենայնի կարող եմ այնու՝ որ զօրացոյցն զիս։» Պէտք չէ որ ըսենք. Կ'ուզեմ ուղղել զիս այս կամ այն պակասութենէն, բայց ձեռքս չէ, չեմ կրնար, սաստիկ վարժած եմ։ Ասանկ ըսողը կ'ենթադրէ որ Աստուած մեզի անկարելին կը հրամայէ, երբ կ'ըսէ թէ մեղքը թողունք և զմեզ ուղղենք. աս կերպով Աստուած անիրաւ կ'ըլլար, եթէ մեզի անկարելին հրամայէր, այլ ինչպէս Տրիտենդեան Սուրբ Ժողովը կ'ըսէ, «Աստուած անկարելի բան չհրամայեր.» այլ բան մը հրամայելու ատեն՝ կ'ուզէ որ մենք ալ ձեռքերնէս եկածը ընենք, մեր ուղիղ բանին ազատութեամբը։ Եւ որովհետև մեր հանգերձեալ փրկութեան համար՝ բան մը չենք կրնար ընել առանց Աստուծոյ շնորհացը, անոր համար Աստուած պատրաստ է մեզի օգնելու իրեն շնորհօքը, եթէ անկեղծութեամբ և խոնարհ ոգւով իրեն դիմենք։ Սուրբն Օգոստինոս յառաջ քան զդարձն, միտքը այնպէս դրած էր որ առանց մարմնական հաճոյից չկրնար ինքը կենալ։ Բայց երբոր որոշեց որ մեղքը թողլով՝ վարքը փոխէ, ինչպէս որ ըրաւ, մեծ ուրախութիւն մը կը զգար ամեն անգամուն՝ երբ կը յիշէր թէ ինչպէս թողուց ու հեռացաւ այն մեղքերէն, ինչպէս կ'ըսէ ինքն իսկ. Ինչ որ բողջոյն առնելն տխրութիւն կը բերէր, բողջէն վերջը ուրախութեան տեղի եղաւ։ Սովորաբար կրկին ան-

կուռները՝ կամ փորձութեան միջոց աղօթք չընելէն առաջ կու գան, կամ խոստովանահօր ապսպրած զգուշութիւնը չկատարելէն, ու անոնց մէջ անհոգանալէն։

Որպէս զի գործունեայ ըլլայ առաջադրութիւնը, պէտք է 'ի մեղաց և մեղաց առիթներէն փախչիլ։ Բնական և աստուածային օրէնքը կը պահանջէ որ մեղաց մէջ ձգող մերձաւոր առիթներէն փախչինք. վասն զի կ'ըսէ Հոգին Սուրբ. « Որ սիրէ զվտանգ, կորիցէ 'ի նմին։ » Ասոր վրայ կ'աւելցընէ Քրիստոս, որ եթէ աչքդ, կամ ձեռքդ, և կամ ոտքդ զքեզ կը գայթակղեցնեն, որ է ըսել մեղաց պատճառ կ'ըլլան, կտրէ ու նետէ քեզմէ այն անդամը։ Արդեօք մարդուս համար աչքէն, ձեռքէն ու ոտքէն աւելի սիրելի ու հարկաւոր բան կրնա՞յ ըլլալ. բայց սակայն ցըցունելու համար Քրիստոս, որ ամեն բան պէտք է զոհենք, քան թէ զԱստուած վշտացնենք, ուստի այս խորհուրդս կուտայ. և ատաւել, ինչպէս ինքը կ'անդրադարձընէ, բոլոր մարմինն ազատելու համար յաւիտենական մահուան դատապարտութենէն, աւ աղէկ է աչքին, ձեռքին և կամ ոտքին մէկը կորսընցընել, քան թէ բոլոր մարմինը. ինչպէս բնութեան ձայնին հետևելով կ'ընենք՝ մեր մարմնաւոր ու նիւթական բժշկութեանը համար։ Աստուած Իսրայելացւոց հրամայած էր որ դաշնակցութիւն չընեն օտար ազգաց հետ, ու անոնցմէ կին չառնեն, որոնք որ իր սուրբ սէրը չունէին, ըսելով իրենց թէ անոնք ձեր կործանումը կ'ըլլան, զձեզ ու ձեր սիրտը կը խոտորեցնեն ու կը թիւրեն. վերջապէս հաւատքնիդ

ուրանալով, չաստուածոց կը զոհէք։ Աստուծոյ այս գուշակած չարիքն ու ապականութիւնը՝ Իսրայելացւոց վրայ ստուգուած կը տեսնենք, ինչպէս կը վկայէ սուրբ Գրոց պատմութիւնը։ Արդ երիտասարդ մը որ չար ընկերներու հետ միշտ կը կենակցի ու ընտանութիւն կ՚ընէ, միթէ կրնայ անմեղ մնալ։ Այն չար ընկերները 'ի սկզբան զինքը 'ի բարւոյ կ՚օտարացնեն, ու վերջը իրենց չարութեան թոյնը կը թափեն իր սիրտը։ Կարելի բան չէ որ երիտասարդ մը այս կամ այն աղջկան հետ ընտանութիւնները յաճախելով, կարենայ սուրբ պահել իր անձը։ Քանի մը տեսակ առիթներ կան, որ բնականապէս 'ի մեղս կը ձգեն զմարդ, եթէ անոնցմէ չզգուշանանք։ Եւա՝ փորձողին հետ արգելեալ ծառին տակը կեցած՝ խօսակցութեան բռնուելով, պտղին գեղեցկութենէն ախորժակը կը բացուի, և վերջապէս տեղիք կուտայ փորձութեան։ Դաւիթ կամաւորապէս Բերսաբէն տեսնելու վտանգի մէջ դնելով ինքզինքը, անլուր անօրէնութիւններ կը գործէ։ Դինա, յանդուգն համարձակութեամբ միայնակ քալելով Սիւքեմացւոց երկիրը, ամենամեծ մեղաց առիթի մէջ իյնալով, պատիւն ու կուսութիւնը կը կորսընցնէ։ Մի ըսեր ուրեմն թէ ես աւելի ծանրագոյն առիթներու մէջ գտնուելով՝ չեմ ինկած, չափէն աւելի չեմ յանդգնիր, երբոր վտանգը տեսնեմ, ես ինքիրմէս ետ կը քաշուիմ, 'ի հարկէ այնչափ խելք ունիմ. բայց այս ալ գիտցիր միանգամայն, որ թէ Դաւիթ մարգարէ մը, Սողոմոն մը՝ իմաստնագոյնն 'ի թագաւորս, և Պետրոս առաքեալ մը՝ գլուխ ա-

ռաքելական դաշտին, քեզմէ աւելի զգուշաւոր, ու գոնէ քեզի չափ ալ խելք ունէին, բայց սակայն ինկան. վասն զի առաքելոյն ըսածին պէս. « Ունիմք զգանձս զայս յամանս խեցեղէնս: » Սուրբն Օգոստինոս կ՚ըսէր. « Տեսայ շատ սուրբ անձինքներ, որոնք Ամբրոսիոսի ու Հերոնիմոսի պէս վստահութիւն կ՚ազդէին ինծի. և սակայն յաետքս տկարացան ու ինկան: Ուստի չիյնալու համար ուրիշ ապահով ճամբայ չկայ, եթէ ոչ մերձաւոր ու հեռաւոր առիթներէն փախչիլ, որոնք զմեզ ուշ կամ շուտ 'ի մեղս կը ձգեն: Անոր համար նոյն սուրբ Հայրն Օգոստինոս կըսէ. վախնալով փախիր, թէ որ կ՚ուզես յաղթութիւնը ձեռք ձգել: Այս ըսածնիս այն առիթներուն համար է, որոնցմէ հեռանալը դիւրին է. իսկ թէ իրօք ծանր դժուարութիւն մը ըլլայ առթէն հեռանալու, ինչպէս օրինակի համար՝ եթէ երիտասարդ մը իր ընտանեաց մէջ փորձութեան առիթ մը ունենայ, այնպիսի դէպքերու մէջ անկեղծութեամբ ամեն բան խոստովանահօր ըսելէն ետքը, հաւատքով աղօթից փոյթ գտնուելով, և խոստովանահօր ապսպրած կարևոր զգուշութիւններն ընելէն ետքը, Աստուած այնպիսին ձեռքէ չթողուր, ու շնորհքներովը կը զօրացնէ, որ մեղաց մէջ չիյնայ: Ցովսէփ գեղեցիկ Պետափրէս իշխանին քով գերի գտնուելով՝ մեղաց այնպիսի մերձաւոր առթի մը մէջ էր, որ չէր կրնար հեռանալ փախչիլ: Բայց իր կողմանէ ձեռքէն եկածը ընելով, Աստուած զօրացուց զինքը, որով բըռնական հրապուրանաց դէմ դնելով՝ կատարելապէս յաղթեց ցանկութեան մեղաց: Շուշան

որ ինքզինքը վտանգի մէջ չդրաւ, անոր համար ալ չնութեան մեղքէն ազատ մնաց։ Քանի ու քանի կոյսեր բռնաւորաց կամացը դէմ դնելով, յաղթեցին ամենայնի ու անարատ պահեցին իրենց կուսութիւնը, որոնց կարգէն են մեր փառաւորեալ կուսանքն Հռիփսիմէ և իւր ընկերքն։ Սանդուխտ, Շուշան դուստր մեծին Վարդանայ, և այլք։ Այս և ուրիշ բիւր օրինակներէն յայտնի է, որ Աստուած իւր հաւատարիմ ծառայիցը օգնութեան կը հասնի, երբ իրենք զիրենք յանդգնաբար և կամաւորապէս վտանգի մէջ չեն ձգեր, այլ դիպուածով ու ակամայ առթի մէջ կը գտնուին. անոր համար ով որ կամաւոր ու մերձաւոր վտանգներու մէջ առիթներէն չփախչիր, այնպիսւոյն ոչ օգնութիւն և ոչ թողութիւն կայ Աստուծմէ. վասն զի շատ առիթներու մէջ մեր մարմնաւոր ու նիւթական վնասովը հանդերձ, պարտական ենք յառթից փախչելու, մեր յաւիտենական փրկութեանը համար։ Քիչ տարի առաջ Եւրոպայի մեծանուն քաղաքներէն մէկուն մէջ, աշխարհասէր երիտասարդ մը դարձի գալով, ուզեց ուխտօրեայ կրթութեամբ ալ անցեալ վարուց ստահակութիւններն ողբալ ու ցաւիլ։ Շատ գովելի ջանքով կրթութիւնը լմնցընելէն ետքը, ուզեց որ իր մեղսակցին տունը երթալով՝ զայն ալ դարձի յորդորէ. երբոր յայտնեց այս միտքը իր հոգևոր հօրը, խոհական առաջնորդը մերձաւոր վտանգը տեսնելով՝ հրաման չտուաւ, այլ մանաւանդ թէ շատ ջանաց որ իր մտքէն ետ կեցընէ. բայց ճար չեցաւ, վասն զի անխոհեմ երիտասարդը ուզե-

լով փորձ մը փորձել, ելաւ գնաց իր մեղսակցին քովը։ Հոն 'ի սկզբան հոգեւորական խօսակցութիւններով սկսելով, կամաց կամաց խօսակցութեան նիւթը փոխուեցաւ. մեղաց ու ցանկութեան ոգին արթընցաւ, մինչեւ որ նորէն խիղճը արատեց թշուառ երիտասարդը, իբրեւ վերջին անգամ մը. միտքը դնելով որ անկէ վերջը ալ բոլորովին զգուշանայ։ Ցիրաւի վերջին անգամ եղաւ. վասն զի դեռ մեղքը 'ի սպառ չկատարած, հոն ինկաւ մեռաւ թշուառ երիտասարդը, Աստուծոյ բարկութեան նշանը վրան երեւցնելով։

Ի վերջոյ ուրեմն՝ գործունեայ կ'ըլլայ առաջադրութիւնը, երբոր միտքերնիս դնենք հաստատապէս որ վարքերնիս փոխելով նոր մարդ ըլլանք ըստ Աստուծոյ. նոյն ջանքը ընելով վարքերնիս փոխելու համար, ինչ որ մեղքի համար ունեցեր ենք։ Ապաշխարողը մտաց աչքը դարձընելով մէյմը իր անցեալ կենացը վրայ, պէտք է քննէ ու նայի թէ առաւելապէս ինչ մոլութեամբ զԱստուած վշտացուցեր է. և անոր հակառակ հիմա պիտի ջանայ առաքինանալ։ Հպարտն ու ամբարտաւանը, պիտի ջանայ նուաստացնել ինքզինքը խոնարհական գործերով։ Ագահը, դարման տանի պիտի իր ագահութեանը առատաձեռնութեամբ, մանաւանդ առ աղքատս։ Որկրամոլը մահացնէ պիտի ինքզինքը, ժուժկալութիւն ընելով ուտելու և խմելու մէջ։ Բարկացողը սանձէ պիտի իր կիրքը, Քրիստոսի հեզութեանը նմանելով։ Գայթակղեցուցիչը պիտի ջանայ ուրիշին միտքը շինել բարի օրինակով, բանիւք և գործով։

Ով որ մեծութեանց ու պատուոյ ետեւէ եղած է, պիտի ջանայ արհամարհել զանոնք ու սիրել զաղքատութիւնը։ Վերջապէս ինչպէս դժոխքին մէջ դատապարտեալը աւելի այն զգայութեամբը պիտի տանջուի՝ որով որ զԱստուած վշտացուց ու իր կորստեանը պատճառ եղաւ, այսպէս ալ ապաշխարողը աւելի պիտի նեղէ ու զրկէ այն զգայութիւնը՝ որով որ Աստուծմէ օտարանալով իրեն թշնամի եղաւ։ Զաքէոս այնպէս ուզեց դարմանել իր անցեալ կենաց անիրաւութիւնները, որ ունեցածին կէսը աղքատաց տուաւ, մնացածն ալ անոնց՝ որոնց անիրաւութիւն մը ըրած կրնար ըլլալ, իւրաքանչիւրին քառապատիկ հատուցանելով։ Մեծ և առաքինափայլ Տրդատ սուրբ թագաւորն մեր, երբոր ճանչցաւ քրիստոնէութեան ճշմարիտ կրօնքը, այնպէս անկեղծութեամբ հաւատաց 'ի Քրիստոս, որ իրեն թագաւորական մեծութեանը նուաստութիւն չսեպելով, խոնարհութեամբ սրբոց Հռիփսիմեանց հանգստարանին գետինը կը փորէր, լեռնէն քարեր կը բերէր, ու գործաւորի մը պէս կ'աշխատէր, որպէս զի ինքն որ զիրենք նահատակեց, գոնէ իրենց երկնաւոր փառացն ալ հաղորդ գտնուի. ասոնցմով և ուրիշ ամեն տեսակ առաքինական գործերով որ իր անձին վրայ կը ցըցունէր՝ գոհ չըլլալով, իր կենաց վերջի տարիները ծիրանին ու արքունեաց հանգստութիւնը թողլով, Սեպուհ լեռը Լուսաւորչայ մեր Հօրը ճըգնաւորանը առանձնացաւ, որ հոն բոլորովին ընդ Աստուած միացեալ իր օրերը սրբութեամբ անցընէ։ Երբոր նախարարք զինքը նորէն թագա-

ւորական աթոռը հրաւիրեցին, ինքը Աստուծոյ պաշտօնը ամեն բանէ վեր սեպելով, չուզեց իր քարանձաւը արքունեաց հետ փոխանակել, որով երկնաւոր արքունիքը փոխադրուեցաւ հրեշտակներէն ։ Ահաւասիկ այսպէս կ՚ըլլայ ճշմարիտ դարձի մը օրինակը, որ ինչուան ծիրանին ու արքունական թագը առ ոտն հարկանել կուտայ անարգ բանի մը պէս ։ Մեծն Վարդան՝ մեր հայրենեաց ու կրօնքի բարերար ու ազատարարը, իր ակամայ ուրացութիւնը շատ տարիներ ողբալէն վերջը, արեամբն ալ ուզեց ջնջել այն բիծը, որ իր մաքրափայլ խղճին վրայ աննշան հետք մը թողուցեր էր ։ Նոյնպէս Վահան Գողթնեաց իշխանը, իր անգիտութեան մանկական հասակին ուրացութիւնը սրբելու համար վրայէն, կամաւորապէս ինք զինքը վասն Քրիստոսի սրոյ և տանջանաց մատնեց, որով և պսակեցաւ 'ի Քրիստոսէ ։ Սուրբք իրենց ակամայ ու անգիտութեան մեղացը համար այսպիսի հատուցումն ըրին Աստուծոյ. իսկ մենք կը դանդաղինք նաև պարտաւորեալ հատուցումը ընելու ։

# ԳԼՈՒԽ Դ

## ԱՄԲԱՍՏԱՆՈՒԹԻՒՆ ՄԵՂԱՑ

Որպէս զի խոստովանութեան մէջ մեղաց ամբաստանութիւնը լաւ և ըստ կարգի ըլլայ, պէտք է որ այս երեք յատկութիւնս ունենայ. այսինքն ըլլայ նախ Խոնարհ, բ. Պարզ և գ. Ամբողջական, ինչպէս կ'ըսէ նաև Սուրբն Բեռնարդոս:

### § Ա

### Խոնարհ խոստովանութիւն.

Համոզուելու համար թէ հարկաւոր է խոստովանորդւոյն համար խոնարհութիւն, բաւական է քահանային պաշտօնները դիտելը, որ խոստովանութեան ատեն 'ի գործ կը դնէ. և են երեք, այսինքն հօր, բժշկի և դատաւորի. վասն զի ապաշխարողն ալ յատեան խոստովանութեան կը ներկայանայ քահանային իբրև որդի, հիւանդ, ու յանցաւոր: Խոստովանահայրը, ինչպէս 'ի մեզ անունէն ալ յայտնի է, է ըստ հոգւոյ՝ հոգևոր Հայր ապաշխարողին, և խոստովանողը նոյնպէս որդի ըստ հոգւոյ: Արդ ի՞նչ է որդւոյ մը պարտքը երբ հօրը առջև կ'ըլլայ: Որդւոյ մը պարտքն է ներկայանալ հօրը խոնարհ կերպով, ցածուն աչքերով և մեծարանօք: Անառակ որդին իր խեռութեանցը վը-

րայ զղջալով, խոնարհութեամբ հօրը ներկայացաւ, որով մէկէն թողութեան արժանի եղաւ։ Նոյնպէս Մագդաղենացին թողութեան արժանացաւ. վասն զի յաղթելով ամենայն մարդկային նկատմանց, փութաց Յիսուսի ոտքը պլլուելու։

Խոստովանահօր երկրորդ պաշտօնն է, հոգևոր բժիշկ ըլլալը. որ ճանչնալով հոգւոյ հիւանդութիւնները, պէտք է անոնց դարման տանի. իսկ ընդհակառակն ապաշխարողը հիւանդի կնիք ունի, ու կը ներկայանայ քահանային որ զինքը դարմանէ։ Արդ հիւանդի մը կերպը ո՞րը պիտի ըլլայ։ Տարակոյս չկայ որ խոնարհութեամբ իր հիւանդութեան վիճակը պէտք է բժշկին առջև դնէ, ու հպատակի իր ըսածներուն։ Նոյնը պիտի ընէ ապաշխարողն ալ առ քահանայն, իր հոգւոյն վիճակը անոր պարզելով, ու անոր կարգադրութեանցը հըպատակելով։

Քահանային երրորդ պաշտօնն է ըսինք Դատաւորի. և այս հաստատուած է 'ի Քրիստոսէ՝ դատելու համար ապաշխարողին խիղճն ու հոգին, որ իբրև յանցաւոր իր դատաւորին կը ներկայանայ։ Արդ իբրև յանցաւոր մը որ կը ճանչնայ իր յանցանքը, այնպէս խոնարհութեամբ պիտի ներկայանայ մեղաւորը քահանային ատենին, թողութիւն խնդրելով իր յանցանացը։ Ի՞նչ կ'ըսէիր այն յանցաւորին համար, որ իր դատաւորին առջև հպարտութեամբ կենայ, զինքը արհամարհելով ու բանի տեղ չդնելով. մի՞ թէ այդպիսի յանցաւորը գթութեան արժանի կը սեպէի՞ր. տարակոյս

չկայ թէ ոչ։ Այսանկ ալ ով որ հպարտ ու ամբարտաւան հոգւով խոստովանահօր առջև կ'ելլայ, առանց միտքը դնելուն անոր ամեն ըսածները կատարելու, այնպիսին տարակոյս չկայ որ թողութեան արժանի չըլլար։ Երբոր կ'ուզէ թողութեան արժանանալ, ապաշխարութեան առեններն ներկայանալու ատեն, միտքը հաստատապէս պէտի դնէ՝ որ ինքը մահուչափ մեղօք Աստուծոյ արքայական մեծվայելչութեանը դէմ մեծապէս յանցաւոր է. ողորմելի գերի սատանային, ու արժանի յաւիտենական հրոյն. ահ քանինե՛ր աս խոնարհութենէն կը պակսին։ Կ'ըլլայ երբեմն որ խոստովանահայրը ապաշխարողին օգտին համար, հարկ կը սեպէ քանի մը օր արձակումը ուշացնել, և այս պատճառաւ կը յանձնէ որ քանի մը օրէն դառնայ. կը գտնուին այնպիսիներ՝ որ դըժկամակելով աս բանիս, ինչուան խոստովանահայրը կը թողուն և ուրիշի կ'երթան. մի՞թէ ասիկայ խոնարհ ու զղջացող հոգւոյ գո՞րծ է։ Ոչ իր դիւրութեանը համար կ'ընէ աս բանս խոստովանահայրը, մինչդեռ կրկին ժամանակ պիտի կորսընցնէ, այլ մեղաւորին բարւոյն համար։ Այսպիսիք կը նմանին այն անմիտ ու խելացնոր հիւանդին, որ բժիշկ կը կանչէ ու կը պահանջէ որ մէկ տեսութեամբ մը միայն զինքը բժշկէ, չուզելով որ ուրիշ անգամ երեսը տեսնէ. ասանկ հիւանդներ յայտնի է թէ խենթանոցի մը մէջ միայն կրնան գտնուիլ, և ոչ դուրսը. և սակայն բարոյական հիւանդութեան գալով՝ այս խենթութիւնս ոչ սակաւք կընեն. վասն զի բարոյական հիւանդութեան վտանգը

այնպէս չէն զգար, ինչպէս նիւթականին։ Կ'ըլ-լայ դարձեալ որ խոստովանահայրը այս կամ այն կ'ապըստպրէ որ ընէն. բայց բանտրկուն ձեռք չտալով, կ'ելլան ուրիշ խոստովանահօր կ'եր-թան. յայտնի է թէ ասիկա բնկեալ սրտով խոս-տովանողի գործ չէ, որով և անարժան թո-ղութեան։ Կրնայ իրաւացի արգելք մը ըլլալ իր ըսածը չկարենալ ընելու համար. այն ատեն խոհարհութեամբ պարտական է խոստովանա-հօրը ծանուցանելու իր արգելքը. և այն ալ տա-րակոյս չկայ որ Աստուծմէ ընկալեալ լուսո-վը, որն որ կարելին ու բարին է՝ զայն կը հրա-մայէ. շատ է որ մենք ձեռքերնէս եկածը ու-զենանք ընել։ Ի վերջոյ կան այնպիսիներ ալ, որ փոխանակ իրենք զիրենք ամբաստանելու, զուրիշները մէջ կը քաշեն ու բոլոր յանցանքը անոնց վրայ կը ձգեն. տանը կամ նոյն փողո-ցին մէջ մարդ չմնար որ յանցաւոր չձգեն, բաց իրենցմէ. և սակայն սուսկ իրենց յանցանաց խոստովանութիւն մը պիտի ըլլայ ըրածնին։ Ա-սոնք մեր Նախածնօղաց պէս կ'ընեն, որ երբոր Աստուած կը կանչէր զիրենք որ յանցանքնին խոստովանին, Ադամ վրայէն ուզեց թօթվել յանցանքը՝ ըսելով. «Կինս զոր ետուր ինձ» և այլն. նոյնպէս Եւա ուրիշ փախուստ չկրնալով գտնալ. «Օձն խաբեաց զիս» ըսաւ, ու կարծեց որ անով ամեն բանէ ազատեցաւ։ Այլ Ա-տուած որ ուրիշ կերպով դատաստան կ'ընէր, երկուքն ալ չարաչար պատժեց, ցըցունելով որ չքմեղութիւննին չէր աժէր։ Իրենց արդար պատիժը արդարապէս մենք ալ կը կրենք, երբ այս մասիս մէջ՝ այսինքն յանցանաց և չքմե-

ղութեան, նմանինք մեր Նախածնողացը։ Խօս-
քերնիս վերջացնելով, կ'ըսենք որ խոստովա-
նութիւննիս Դաւիթ մարգարէինին պէս խո-
նարհ պիտի ըլլայ. վասն զի երբոր իմացաւ որ
ամբարտաւանութեամբ ժողովուրդը համրել
տալուն համար Աստուած սրդողեր է ու կ'ուզէ
ժողովուրդը պատժել, Աստուծոյ առջևը ին-
կած լալահառաչ կը գոչէր. «Ես մեղայ, ես
հովիւս յանցեայ, և դոքա ոչխարքդ զի՞ արա-
րին. եղիցի ձեռն քո յիս, և 'ի տուն հօր ի-
մոյ։» Ասոր վրայ Գադ մարգարէն եկաւ, զին-
քը գետնէն վերուց՝ որ Աստուծոյ առջև ինկած
կու լար, և ժողովրդեան վրայէն ալ պատիժը
անցուց։ Միով բանիւ ապաշխարողը մաքսա-
ւորին օրինակին պիտի հետևի, որ տաճարին
մէջ անկիւն մը քաշուած, մեղքերուն վրայ
խռոված լալու ատեն, և ոչ իսկ աչքերը եր-
կինք կը վերցընէր, այլ անդադար սրտէն ու
բերնէն ելածը այս էր. «Աստուած քաւեա զիս
զմեղաւորս։» Այս կերպով միայն իրեն պէս
արդարացած տուն կրնանք դառնալ խոստո-
վանութենէ մը ետքը։

## § Բ

### Պարզ խոստովանութիւն.

Ինչպէս կ'ըսէ Սուրբն Թովմաս. Յստակ ըսէ
մեղքերդ, և պարզութեամբ զքեզ ամբաստանէ։
Պարզ ըսելով կը հասկընանք նախ, որ ամե-
նայն կերպով պիտի զգուշանայ խոստովանո-
ղին աւելորդ խօսակցութիւններ ընելէն, այլ

ըսէ պիտի պարզաբար այն բաները՝ որոնք որ խոստովանահօր համար հարկաւոր են, իր հոգւոյն վիճակը հասկընալու համար։ Ոչ է պարզ խոստովանութիւնն՝ եթէ անհարկաւոր պատմութիւններ մէջ բերենք՝ մեր անձին կամ ուրիշներուն վերաբերեալ, և կամ աւելորդ տեղը մեղքի մը բացատրութիւնն երկընցնենք, մինչդեռ համառօտ կերպով կրնայ ըսուիլ, կ'ենթադրուի առանց հարկաւոր պարագայ մը դուրս թողլու. վասն զի կան այնպիսիք ալ որ համառօտ ընենք ըսելով՝ մեղաց էութիւնը չեն բացատրեր՝ հարկաւոր պարագայներ դուրս թողլով։ Կան այնպիսիք ալ՝ որ պայմանաւոր կերպով կը խոստովանին, իբրև թէ հազար տարի առաջ ըրած մեղքեր խոստովանէին. օրինակի համար եթէ բամբասեր եմ, եթէ անպարկեշտ խորհրդոց տեղիք տուեր եմ, և այլն և այլն, կը գղջամ ամենուն վրայ ալ։ Ասոնք ամենքն ալ եպերելի խոստովանութեան կերպեր են, որ խոստովանութիւնը կոչնչացնեն։ Պարզ կ'ըսուի այն խոստովանութիւնը, որ ապաշխարողը առանց դարձուածոց բանից՝ անկեղծութեամբ կ'ըսէ խոստովանահօրը իր ամեն մեղքերը, ստոյգն իբրև ստոյգ, տարակուսականը իբրև տարակուսական, առանց բառ մը աւելի կամ պակաս ըսելու, որպէս զի խոստովանահայրն իր խղճին վիճակը լաւ հասկընայ։

Անտեղի չէ հոս յիշելը համառօտիւ, որ կան շատեր ալ՝ որ պարզ անոր համար խոստովանելու կ'երթան, որ իրենց ժամանակաւոր խեղճութիւնը պատմելով խոստովանահօր դու-

թը չարժեն իրենց ողորմութիւն տալու։ Այս մտքով խոստովանութեան գացողը՝ սրբապղծութիւն կը գործէ. այս պատճառաւ Սուրբն Փիլիպպոս Ների, որ սիրոյ ու գթութեան մէջ նշանաւոր եղած էր, այսպիսեաց արձակումն չէր տար. կամ որոնք որ սոսկ մարդկային նպատակաւ մը խոստովանութեան կ՚երթային։

§ Գ

Ամբողջական խոստովանութիւն.

Ամբողջ կամ անթերի կ՚ըսուի խոստովանութիւնը, երբ անկեղծութեամբ ամեն մէկ մեղքը կը խոստովանի մէկը՝ առանց բան մը դուրս թողլու։ Ինչպէս որ զղջումն ու առաջադրութիւնը՝ իւրաքանչիւր մեղաց վրայ պէտք ըլլայ հաւասարապէս, նոյնպէս նաև ամեն մէկ մեղքը զատ զատ պէտք ըսուի. և ով որ չարութեամբ կամ երկբայութեամբ դուրս կը ձգէ մահուչափ մեղք մը, սրբապղծութիւն ընելով կոչնչացնէ խոստովանութիւնը։

Նախ խոստովանութեան մէջ պէտք ըսուի մեղաց թիւը, այսինքն քանի անգամ նոյն մեղաց մէջ ընկեր է։ Թէ որ լաւ քննելէն վերջը ինքզինքը՝ որոշ միտքը չգայ մեղաց թիւը, հաւանական կամ մերձաւոր թիւը կը գուրցուի. աւելցնելով թէ ընդհանրապէս որչափ ատեն նոյն մեղաց յուզմանը մէջ մնացեր է. որչափ անգամ սովորաբար ամիսը, կամ շաբաթը և կամ օրուան մէջ կը մեղանչէր այս կամ այն մեղքով։

Թիւէն դուրս խոստովանելու է նաև այն ամենայն պարագայները, որ մեղաց տեսակը կը փոխեն կամ կը ծանրացնեն մեղքը. օրինակի համար, ով որ եկեղեցիէ մը սկիհ գողցեր է, բաւական չէ խոստովանիլը թէ՝ Հայր սուրբ արծաթէ աման մը գողցայ. այլ պէտք է ըսէ, թէ ի՛նչ էր գողցածը և ուսկից. ասով խոստովանութեան տեսակը փոխուելով՝ պարզ գողութեան մեղքէն՝ սրբապղծութեան կը փոխուի, որ շատ աւելի ծանրագոյն է։ Նոյնպէս ով որ անհամեստ մեղք մը գործեր է, պարտական է ըսելու սեռը, մա՛նչ էր թէ աղջիկ, կարգուա՛ծ թէ կոյս, ազա՛տ անձն՝ այսինքն աշխարհական թէ ուխտիւ կամ եկեղեցական վիճակով Աստուծոյ հետ կապուած, ազգակա՛ն թէ ոչ, իր անձի՛ն թէ օտարի հետ, և այլն և այլն։ Դարձեալ ըսելու ես եթէ սրբազան տեղ հանդիպեր է մեղքը. վասն զի այս ամենայն պարագաները մեղքը կը կրկնապատկեն։ Նոյնպէս որոշ ըսելու է այն պարագայներն ալ, որոնցմով մեղքը կը ծանրանայ. օրինակի համար, ով որ հարիւր քսակ դրամ գողցեր է, բաւական չէ ըսելը թէ շատ բան գողցայ, այլ թէ որչափ բան գողցաւ. վասն զի գողցողը 'ի հարկէ համրանքն ալ լաւ գիտէ։ Նոյնպէս խոստովանելու է մեղաց հետևանքներն ալ։ Օրինակի համար, ով որ բամբասեր ու չարախօսեր է ընկերը, պէտք է խոստովանի նաև՝ եթէ այն չարախօսութեան 'հետևանքովը վատահամբաւութիւն, ու վաստակին կորուստ պատահեր է։

Միայն արտաքին կամ գործով եղած մեղ-

քերը խոստովանիլը բաւական չէ, այլ նաև խորհրդով ու ներքին եղած մեղքերն ալ խոստովանելու է։ Ուստի բոլոր անհամեստ մտածութիւններն խոստովանելու ենք, բացատրելով թէ սոսկ մտածութիւն եղան, թէ յօժարութիւն. հաւանութիւն տրուեցա՞ւ չար խորհըրդոյն. գէշ դիտաւորութիւն կամ թէ ըսենք միտք ունեցա՞նք թէ ոչ. որչափ ատեն տևեց. մեր կողմանէ ի՞նչ պատճառ տրուեցաւ, և այլն և այլն։ Նոյնպէս յիշելու է՝ թէ ի՞նչ տեսակ անձի վրայ ունեցանք այս մտածութիւնը, նոյն կերպով ինչպէս վերն ըսինք։ Կը գտնուին ոչ սակաւք որ խորհրդով եղած մեղքերը, թէ ըլլայ մեղքեն առաջ կամ ետքը, չեն խոստովանիր, այլ միայն արդեամբ կատարածնին։ Ուրիշները կը խոստովանին թէ բամբասեր են, բայց կը լռեն թէ ատելութիւն ունեցեր են, և կամ վրէժխնդրութեան հոգի։ Ուրիշ մը կ'ըսէ թէ ատեր է, բայց կը լռէ թէ որչափ ատեն, և թէ իրեն չարիքը ուզեր է։

Արդ խորհրդով եղած մեղաց վրայ խօսելնիս, հարկաւոր է որ երկու հակառակ ծայրերէն զգուշացնենք ապաշխարողը։ Կան ոմանք ըսինք՝ որ բանի տեղ չեն դներ խորհրդով եղած մեղքերը. զասոնք համոզելու համար թէ ամենայն մեղաց աղբիւրն ու արմատը սրտերնուս մէջն է, շատ է յիշելը Քրիստոսի Տեառն մերոյ վճիռը թէ՝ «Ի սրտէ անտի ելանեն խորհուրդք չարք, սպանութիւն, շնութիւն,» և այլն և այլն։ Ուստի մեղաց էութիւնը ոչ գործով կատարելուն վրայ կեցած է, այլ բուն իսկ հաւանութիւն տալուն վրայ։ Վասն զի առանց

հաւանութիւն տալու չենք կրնար մեղանչել, և այն պատճառաւ ալ խորհրդոց թիւն ու տեսակը պէտք է ըսել, ինչպէս վերն ըսինք։ Շատ անգամ կը պատահի որ մարդուս միտքը կ'իյնայ՝ ատենօք ըրած մեղաց յիշատակները, որոնց վրայ զզջացեր ու խոստովաներ է արդէն. Եթէ առանց գարշելու ու զզուելու նորէն կը սկսի նոյն մեղաց վրայ ախորժով ու հաճութեամբ մտածել, յայտնի է թէ առանց գործով մեղանչելու, խորհրդով մահուչափ կը մեղանչէ, գոգցես հաւասար գործով ըրածի չափ։ Մէկը գեղեցիկ կին մը կը տեսնէ, և կը յօժարի հաւանութեամբ մտաց՝ հետը մեղանչելու. ասիկայ ալ նոյնպէս մահուչափ կը մեղանչէ, իբրև թէ մեղքը իրօք կատարած ըլլար. « Եթէ ոք հայեսցի 'ի կին մարդ առ 'ի ցանկանալոյ նմա, անդէն շնացաւ 'ի սրտի իւրում։» Այն գողն՝ որ մարդ գալուն պատճառաւ գողօնը թողած կը փախչի, գողութեան մեղօք մեղանչած է. վասն զի գողնալու հաստատուն կամք ունեցաւ։ Այն որ ուրիշի դէմ ատելութիւն ունենալով կամ հոգի վրէժխնդրութեան, սրտով անոր թշուառութիւնն ու մահը փափաքեցաւ, յայտնի է թէ խորհրդով մահուչափ մեղանչեց։ Այս տեսակ կերպերով օրը հազար անգամ ալ կրնայ մեղանչել մարդ, երբոր հաւանութիւն կուտայ այն խորհրդոց, կամ հաճութեամբ կը մտածէ. և ամեն անգամուն որ մտածութիւնը կամ բնականաբար և կամ բարոյապէս կը դադրի՝ ու վերջը նորէն կը սկսի, մեղքն 'ալ կը կրկնապատկի։ Բնականաբար կը դադրի, երբ քնով կամ ուրիշ բանի մը զբաղելով, խորհուրդը

մօրերնէս կ՚ելլայ. իսկ բարոյապէս՝ երբ կը մերժենք խորհուրդը ու վերջինները կը սկսինք տեղիք տալ։

Իսկ միւս հակառակ ծայրն են անոնք, որոնք որ և իցէ անբարի խորհուրդ, և կամ զգայութեանց շարժումն՝ մեղք կը սեպեն. ասոնք ալ իրենց մտաց խաղաղութիւնը փարատելու համար պէտք է գիտնան, որ ըստ աստուածաբանից՝ ոչ թէ գէշ խորհուրդ կամ զգայութեանց շարժումն ունենալը մեղք է, այլ երբոր կամօք անոնց կը հաւանինք, տեղիք կու տանք ու կը յօժարինք. յայսմ պէտք է որ կամքը ուղղակի կամ անուղղակի մասնակից եղած ըլլայ, և ասկէ կը կախուի մեր մեղանչելը կամ ոչ։ Արդ յայտնի է որ գէշ խորհուրդներն և զգայութեանց դրդմունքը՝ մեր կամքէն չեն կախուիր, ինչպէս որ փորձը կը ցըցունէ. այն պատճառաւ ամենամեծ սուրբերն ալ զգացին այդ չար խորհուրդներն և մարմնոյ ապստամբ շարժումները, առանց ուզելու և առանց կարենալու խոյս տալ։ Այս ուղիղ տեսութեամբ, եթէ մենք բնաւ կերպով մը տեղիք չենք տար այդ խորհրդոց, այլ մանաւանդ թէ այն հաճոյից սկիզբն որ կը զգանք՝ կ՚ատենք ու կը գարշինք անկէ՝ իբրև ատելի Աստուծոյ, յայտնի է թէ մեզի համար վարձուց արժանի կ՚ըլլայ այդ գարշելի խորհուրդը զոր մերժեր ենք։ Իմանալու համար թէ արդեօք տեղիք տուեր ենք թէ ոչ այդ խորհրդոց, մեր հաճութիւնն ու փափաքը պիտի քննենք. եթէ կը զգանք հաճութիւն ու փափաք առ մեղս, յայտնի է թէ տեղիք տուեր ու հաւաներ ենք

չոր խորհրդին. Իսկ թէ այս փափաքս չենք զգար, նշան է թէ տեղիք չենք տուած, և Աստուծոյ առջև յանցաւորութեան բան մը չունինք, թէ և սաստիկ եղած ըլլայ գարշ խորհրդոց յարձակումը։ Ըսածնիս օրինակով մը ուզելով պարզել, ենթադրենք որ ծախու դրուած ըլլայ գեղեցիկ պատկեր մը. մէկը կուգայ ու լաւ մը նայելէն վերջը, շատ կը հաւնի ու կ'ելլայ կ'երթայ. ուրիշ մը կուգայ ու չէ թէ միայն կը հաւնի, այլ նաև կ'ուզէ գնել. երրորդ մը կ'անցնի, ու հազիւ թէ. մէյ մը կը նայի՝ կ'ելլայ կ'երթայ՝ առանց իսկ ուշ դնելու թէ ինչ տեսակ պատկեր էր. առաջինը հաճութեան մեղք զգաց, երկրորդը լրացեալ փափաքանաց, իսկ երրորդը ոչ մէկն և ոչ մէկալը։

Խոստովանութեան ամբողջութեան դէմ կը պակսին նաև անոնք, որոնք այն կերպով կ'ըսեն մեղքերնին՝ որ խոստովանահայրը որոշ չհասկընայ, կամ մեղաց ծանրութիւնը չըմբռնէ, և կամ թիւն որոշ չհասկընայ։ Օրինակի համար, ոմանք փոխանակ ըսելու թէ անպարկեշտ առարկայից վրայ նայեցայ, կ'ըսեն թէ աւելորդ կամ վնասակար հետաքրքրութիւններ ըրի։ Այլք կը խոստովանին թէ ցուցամոլութիւն ըրին, ու չեն ըսեր թէ անպարկեշտ հագուիլ սքուելով ուրիշին գայթակղութիւն եղան։ Երբեմն այս կամ այն մեղքով մեղանչեցի կ'ըսեն, և կը ծածկեն ստէպ մեղանչած ըլլալնին։ Անզգոյշ վարմունք ունեցայ կ'ըսեն անձի մը հետ, և կ'ուզեն լռել անզգուշութեան տեսակը։ Կան դարձեալ ուրիշներ ալ՝ որ մեղք մը խոստովանելնէն վերջը, կը ջանան իրենք զիրենք արդա-

քացնել, ամեն մէկ մեղքի արգահատացուցումը գտնելով։ Յայտնի է որ առանց կատարեալ ու անկեղծ խոստովանութեան ու յանցանքնիս ճանչնալու, թողութիւն չենք կրնար գտնալ Աստուծմէ։

Ի զգուշութիւն և 'ի զգաստութիւն ապաշխարողաց, այս հետևեալ դէպքս կը պատմենք, որուն կը վկայեն եկեղեցւոյ երկու մեծանուն վարդապետք, Սուրբն Անտոնինոս և Սուրբն Ալփոնսոս Լիկուորի։ Ազնուական ու բարեպաշտ օրիորդ մը՝ տկարանալով 'ի մանկութեան, մարմնական ծանր մեղքի մը մէջ ինկաւ միանգամ. բայց այնպէս ամօթ մը զգաց իր այս մեղացը վրայ, որ բոլոր կենացը մէջ չկրցաւ խոստովանիլ, թէ և առաջինն ու վերջինը եղաւ նոյն մեղքը։ Բայց չխոստովանելուն պակասութիւնը լեցնելու համար, ստէպ ողորմութիւն կ'ընէր, մարմինը կը խոշտանգէր և ուրիշ ամեն տեսակ բարեպաշտական գործեր կը կատարէր. ատոնցմով գոհ չըլլալով, և աւելի խիստ կերպով ապաշխարելու համար, գնաց կուսաստան մը փակուեցաւ, ուր սրբութեան մեծ համբաւ ու անուն ստացաւ. անանկ որ աբբասուհին մեռնելով՝ զինքը անոր տեղն ընտրեցին։ Այս պաշտօնս գովութեամբ քանի մը տարի կատարելէն վերջը, մեռաւ նոյն սրբութեան համբաւով։ Մեռնելէն քանի մը օր վերջը, երբոր մին 'ի կուսանաց գիշերով եկեղեցին գացեր էր վախճանելոյն հոգւոյն համար աղօթելու, և ահա սաստիկ աղաղակէ մը վերջը՝ կը լսէ ձայն մը որ կ'ըսէր. Ես քիչ օր առաջ մեռած աբբասուհին եմ, որ մարմնական

մեղք մը ընաւ խոստովանած չըլլալուս համար, դժոխոց դատապարտուեցայ. ինծի համար ընդունայն տեղը աղօթք մի ընէք, իմ կորուստս անդարմանելի է. այս ըսելով աներևոյթ եղաւ։ Ահաւասիկ օրինակ մը՝ որ կը ցըցունէ թէ որչափ կարևոր է յայտնել անկեղծութեամբ խոստովանահօր մեր ամեն մեղքերը։ Ոչ աղօթք, ոչ ողորմութիւնք, ոչ ճգնութիւնք, և ոչ որ և իցէ բարեգործութիւնք կրցան սրբել զեղկելին 'ի մահուչափ մեղաց իւրոց՝ առանց խոնարհ և անկեղծ խոստովանութեան մը։

## ԳԼՈՒԽ Ե

### ՀԱՏՈՒՑՄԱՆ, ԵՒ ԿԱՄ ԱՐՁԱԿԵԱԼ ՄԵՂԱՑ ԱՊԱՇԽԱՐՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ

Ինչպէս որ ինչուան հիմա շատ անգամ ըսինք, ապաշխարողէն երեք բան կը պահանջուի կատարեալ խոստովանութեան համար. զղջումն, խոստովանութիւն և կատարումն ապաշխարանաց։ Առջի երկուքին վրայ արդէն խօսեցանք, կը մնայ հիմա երրորդին վրայ խօսիլ։

Ապաշխարանքը կամ Հատուցումը՝ խոստովանութեան ոչ թէ էական, այլ ամբողջացուցիչ մաս մը կը սեպուի. վասն զի կրնայ ըլլալ որ խոստովանութենէն անմիջապէս վերջը, վերահաս մահուամբ կամ անյաղթելի ուրիշ պատճառաւ մը՝ չկարենայ ապաշխարողը իրեն

դրուած ապաշխարանքը կատարել. բայց ասով ըրած խոստովանութիւնը ամենևին վնաս մը չկրեր։ Ուրիշ բան է եթէ մէկը կամաւորապէս զանց առնէ ապաշխարանքը, մանաւանդ մահուչափ մեղաց խոստովանութենէ մը ետքը, և այս զանցառութիւնն ծանր մեղք է։

Ապաշխարանաց կարևորութիւնը յայտնի է. վասն զի որ և իցէ մեղք՝ որ է յանցանք առաջի Աստուծոյ, պատժոյ մը արժանի կ'ըլլանք արդարապէս. յանցանքնիս քաւուելով 'ի ձեռն խորհրդոյ սրբոյ խոստովանութեան, յաւիտենական պատիժը վրանէրնէս կը վերցուի. բայց կը մնայ ժամանակաւոր պատիժը, եթէ կարգէ դուրս և կատարեալ զղջում մը ունեցած չըլլանք, որ այն ատեն նաև ժամանակաւոր պատիժն ալ կը վերցուի։ Ուրեմն մեղաց արձակմանէն վերջը՝ կը մնայ ժամանակաւոր պատիժն, որ կամ այս աշխարհքիս մէջ և կամ 'ի հանդերձեալ կեանս 'ի հուր քաւարանին պիտի կրենք, ու անով ազատինք պիտի մեր պարտքէն։ Այս վախճանիս համար ահա կը դնէ խոստովանահայրը ապաշխարանքը, որ մեր մեղաց արժանաւոր ժամանակաւոր պատիժն հատուցանենք։

Կը գտնուին շատերը որ խոստովանութենէն վերջը՝ փոյթ չեն ըներ ապաշխարանքը կատարելու, աւելորդ բան մը սեպելով։ Բայց ինչպէս որ կ'ըսէ հրեշտակային վարդապետը, ապաշխարութիւնն ըլլալով հատուցումն մեղաց՝ հարկաւոր է կատարումը. ասով մեղաւորը կը զօրանայ կրկին անգամ նոյն մեղաց մէջ չիյնալու. մեղաց չար սովորութեանը կը յաղթէ,

Աստուծոյ պատիժներն իսկ կը հեռացնէ, և կը նմանի Քրիստոսի՝ որ չարչարանօք խաչին և մահուամբ մեր յանցանաց դատակնիքը ջնջեց ու պատռեց, և ինքը հատոյց մեր մեղաւորաց փոխարէն։

Կան ոմանք որ կը գանգատին խոստովանահօր դրած ապաշխարանացը վրայ՝ իբրև երկայն կամ դժուարին. այսպիսիք ըսել է թէ մեղքու Աստուած եղած նախատանաց ծանրութիւնը չեն հասկընար. վասն զի այն նախատանաց համեմատ, ինչ պատիժ բաւական կրնայ սեպուիլ՝ Աստուծոյ բարութեանը դէմ եղած անարգանքը վերցընելու համար, և յաւիտենական պատժէն ազատելնուս հատուցում մ՚ընելու համար։ Եթէ նախկին եկեղեցւոյ դրած ապաշխարանքները մէկ մը մտքերնիս բերելու ըլլանք, հիմակուան ապաշխարանքները բան մ՚ըսել չեն։ Ո՞ւր թողունք անապատականաց այն կամաւոր ապաշխարութիւնները, որ մեղի սոսկումն կը բերեն, և կարծես թէ ուրիշ տեսակ կազմուածք ունեցող մարդիկ են եղեր անոնք, որ այն նեղութեանց ու չարակրութեանց կրցեր են տանիլ։ Բայց ճշմարտութիւնն այս է՝ որ հաւատքնին աւելի կենդանի էր ու վառ, Աստուծոյ սէրը անջինջ տպաւորուած էր սրտերնուն ու մտքերնուն մէջ, որով այն բարեգութ սիրոյն դէմ եղած որ և իցէ ծանր կամ թեթև անարգութիւնը՝ այն կերպով կը պատժէին։ Ըսածներնուս խելամուտ ըլլալ ուզողները, թող կարդան հարանց ու սրբոց վարքերը. թող կարդան Ոսկեբերանի ու մեր Եղիշէ սուրբ հօրը միանձանց ճառերը, և կը տես-

նեն մեր հարց ապաշխարութեան և մեռուցման հոգին։

Մեր Նախածնօղքը մեղքերնուն թողութիւն ընդունելէն վերջը, բոլոր կեանքերնին ապաշխարութեամբ անցուցին։ Հրեայք 'ի հատուցումն մեղաց իւրեանց, քառասուն տարի անապատին մէջ թափառեցան։ Մարիամ՝ Մովսեսի քոյրը, եղբօրը դէմ գանգատելուն համար՝ եօթը օր բորոտեցաւ։ Մովսէս ինքնին, որ 'ի Ջուրսն հակառակութեան երկբայեցաւ Աստուծոյ գթութեանը վրայ, 'ի պատիժ՝ աւետեաց երկիրը մտնելէն զրկուեցաւ։ Դաւիթ Բերսաբէին պատճառաւ ըրած մեղաց թողութիւն ընդունելէն ետքը, իր սիրական որդին կորսընցուց, ու գիշեր ցորեկ այնպէս կուլար կ'ողբար իր մեղացը վրայ, մինչև, ինչպէս կ'ըսէ ինքը, ծնկուըներս ակարացան 'ի պահոց, և յատելութենէ երեսիս գոյնը փոխուեցաւ։ Սուրբն Պետրոս՝ իր ուրացութեան մեղքը ողբալու համար, դառն լուբիայով միայն բոլոր կեանքը անցուց, ամեն բանէ ինքզինքը զրկելով. և զայն ալ անանկ չափով մը միայն կ'ուտէր՝ որ կարենայ պարզ ապրիլ. իսկ անընդհատ լալէն՝ աչքերէն վար կարծես թէ մէյմէկ փոսեր բացուեր էին։ Սուրբն Մատթէոս, ըստ վկայելոյ Սրբոյն Կղեմայ Աղեքսանդրացւոյ, բոլոր կեանքը պարզ խոտեղէն ուտելով անցուց. ինչպէս նաև Յակոբոս Եղբայր Տեառն։ Ըստ վկայելոյ Սրբոյն Պօղոսի, բոլոր Առաքեալք կեանքերնին անցուցին պահօք, հսկմամբ և ամեն տեսակ ժուժկալութիւններով։ Փիլոն Եբրայեցին կը գովէ Աղեքսանդրիոյ քրիստո-

նեայքը, իրենց մեռուցմանը համար։ Սուրբն Օգոստինոս կ'ըսէ թէ, շատ ակար կանայք ու երիկ մարդիկ տեսայ, որոնք այնպիսի մեռուցումներ կ'ընէին, որ երեք չորս օր բերաննին առանց կաթիլ մը ջուր դնելու կ'ապրէին։ Մագդաղենացին երեսուն տարի անընդհատ այրի մը մէջ ճգնեցաւ։ Մարիամ Եգիպտացին յիսուն և հինգ տարի անապատին մէջ ապաշխարեց։

Եթէ մեծամեծք 'ի սրբոց աղատ չսեպեցին ինքզինքնին 'ի պարտուց ապաշխարութեան, ինչ պիտի չընեն մեզի պէս մեծ մեղաւորները։ Եթէ Յովհաննէս Մկրտիչ, որ ըստ վկայելոյ Փրկչին, իրմէ մեծ սուրբ չէ եղած 'ի ծնունդս կանանց, այն կերպով ինքզինքը կը նեղէր անապատին մէջ. եթէ մեր սուրբ հայրը Գրիգոր Նարեկացի, բոլոր կեանքը պահօք, ճգնութեամբ և անդադար աղօթակացութեամբ անցուց, ինչ պիտի չընենք մենք՝ որ Աստուծոյ հետ թշնամացեր ենք մեր մեղքերովը, ու որդի գեհենին եղած։

Ոչ սակաւք յաշխարհասիրաց մտքերնին դրած են որ ապաշխարութեամբ մարդուս կեանքը կը կարճընայ, ու ողորմելաբար ապրիլ մըն է ան կերպով կեանք անցընելը. աս ըսելով ամեն տեսակ պահք ու ծոմապահութիւն և կամ ուրիշ մարմնոյ թեթև մեռուցումներ զանց կ'ընեն, իբրև աւելորդ բեռ մը սեպելով. մինչդեռ եկեղեցին մեր մեղաց հատուցման համար դրած է, և իբրև նշան մը ու հետք նախկին հաւատացելոց եռանդանն ու սիրոյն առ Աստուած։ Եթէ այսպիսեաց ըսածը ստոյգ

ըլլար, պիտի հետևէր որ անապատաւորք ու ճգնաւորք սակաւակեաց պիտի ըլլային, մինչդեռ փորձը բոլորովին հակառակը կը ցուցընէ։ Խիստ շատ օրինակներէն, որ անթիւ են, մեծանուն խստակեաց անապատաւորաց երկարակեցութիւնը յիշենք հոս համառօտիւ, ցուցընելու համար թէ քանի սնոտի է ասոնց երկիւղն ու առարկութիւնը։ Սուրբն Իլարիոն 80 տարի ապրեցաւ. Սուրբն Մարտինոս 81. Սուրբն Մաւրիտիոս և Սուրբն Մակար 90. Սուրբն Արսէնիոս 95. Սուրբն Հերոնիմոս և Սուրբն Զոսիմոս 100. Սուրբն Յովհաննէս լըռակացը 104. Սուրբն Անտոն անապատական 105. Սուրբն Պախումէոս 100. Սուրբն Անսելմոս ու Սուրբն Ռոմուալտոս 120 տարի. վերջինս իր կենաց 100 տարին անընդհատ խիստ ճգնութեամբ անցուց։ Այս սակաւ օրինակներէն յայտնի կ՚ըլլայ, որ խստակեցութիւնը մարդուս կեանքը չկարճեցներ, այլ մանաւանդ թէ աւելի երկարակեաց կ՚ընէ. իսկ ընդհակառակն աւելի սակաւակեաց են անոնք, որոնք որ զեղխութեամբ ու փափկութեամբ ախտից ետևէ ըլլալով կեանքերնին կ՚անցընեն, ինչպէս ամենօրեայ փորձը կը ցուցընէ, և որուն կը վկայեն բնապատումք՝ յաղթեալ ՚ի ճշմարտութենէ իրաց։

Ոչ ինչ նուազ անհիմն ու երևակայական է միւս առարկութիւնն ալ, թէ խեղճ ու ողորմելի կեանք մըն է առանձին ապրիլը։ Այս բանս իւրաքանչիւրին առ Աստուած և առ փրկութիւն իւր ունեցած սէրէն ու փոյթէն կը կախուի. աշխարհասէրը աշխարհքիս անցաւոր

ու անհաստատ վայելմցը մէջ կը կարծէ իրեն երջանկութիւնը գտնալ. մինչդեռ Թշուառութիւն ու ցաւ միայն կը գտնէ. իսկ աստուածասէրը աշխարհքէս դուրս՝ յԱստուած և յերկինս կը յուսայ միայն վայելք ու երջանկութիւն գտնալ. որով այն ամենայն որ աստուածավայելուչ է և աստուածահաճոյ՝ զինքը կը զուարճացնէ ու կը յագեցնէ. ինչպէս օրինակի համար, ով որ պատկերահանութեան կամ արձանագործութեան ախորժ ու յարմարութիւն ունի, իրեն համար անկէ զատ ուրիշ արհեստ մը չկայ որ կարենայ զուարճացնել զինքն ու զբաղեցնել. իսկ ընդ հակառակն հիւսն ու որմնադիրն ալ նոյն ախորժը կը զգան իրենց արհեստին մէջ ինչ որ պատկերահանը իր արուեստին մէջ կը զգայ: Սուրբն Հերոնիմոս քարով ստէպ կուրծքը ծեծելով, ծոմապահելով, միշտ լալով ու ողբալով արքայութեան համ կ'առնէր, և հրեշտակաց դասուն մէջ կը սեպէր ինքզինքն, ինչպէս առ Եւստաքէոս գրած նամակէն կը տեսնուի: Սուրբն Փրանկիսկոս Քսաւերեան չարատանջութեամբ մարմինը ըլկելու ատեն, այնպիսի մեծ մխիթարութիւն մը կը զգար ըստ հոգւոյ, որ Շատ է Տէր իմ, շատ է, կը գոչէր: Սուրբն Օգոստինոս կը խոստովանի որ շատ աւելի մեծ հաճոյք կը զգար զգայութիւնները նուաճելով, քան թէ զգայութեանց ձայնին հետևելով: Սուրբն Պօղոս ծանր վշտակրութեանց մէջ չարչարուելու ատեն, « Առաւելեալ եմ խնդութեամբ 'ի նեղութիւնս և 'ի վիշտս » կ'ըսէ: Սուրբն Գրիգոր Լուսաւորիչ՝ Վաղարշապատու խոր վիրապին

մէջ ու Սեպուհ լերան ճգնարանը քաշուած, շատ աւելի ախորժ կ'առնէր ու կը զուարճանար, քան թէ Տրդատայ արքունիքը՝ զոր կամովին թողուց։ Սուրբն Մեսրոպ ազգին բարեացը համար աշխատելով, ու անապատներու մէջ խստամբեր վարուք կեանքը մաշեցնելով, երանելի զինքը կը սեպէր։ Ամեն ազգաց, ամեն սեռի, ամեն հասակի, ու ամեն վիճակի մարդկանց մէջէն հազարք հազարաց առաքինացեր են և արիացեր վասն սիրոյն Քրիստոսի, բիւր տեսակ չարակրութեամբք. բայց ոչ ոք տրտունջ մը կամ գանգատ մտքէն անցուցեր, կամ խեղճ սեպեր է ապաշխարութեան կեանքը։ Թէ Քրիստոսի անունն ու սէրը ինչե՛ր ընել չտար մարդուս՝ տեղեկանալ ուզողները, թող մեր Եղիշէ սուրբ վարդապետին Վարդանանց պատերազմին ութերորդ Յեղանակին վերջին յօդուածը կարդան, ուր որ կը նկարագրէ սուրբ վարդապետը երանաշնորհ նախարարաց ու իրենց փափկասուն տիկնայց ու օրիորդաց տարիներով քաշած նեղութիւնն ու զրկումները Քրիստոսի անուան և սուրբ հաւատոցն համար։

Քրիստոնէին նշանազգեստն ու ճակատագիրն է մեռուցումն և վշտակրութիւն. անոր համար կ'ըսէ Սուրբն Պօղոս. «Զի որ Քրիստոսեանքն են, զմարմինս իւրեանց 'ի խաչ հանեն կարեօք և ցանկութեամբ հանդերձ։» Եւ վերջը նոյն բանը բացատրելով կ'աւելցնէ. «Մերկացարուք զհին մարդն հանդերձ գործովք իւրովք, և զգեցարուք զնորն որ ըստ Աստուծոյն հաստատեալն է։» Քրիստոսի օրինակին հետևե-

լով որ ամենայն մեղաւորաց կը գոչէ. «Եթէ ոչ ապաշխարիցէք, ամենեքին նոյնպէս կորընչիջիք.» մենք ալ ապաշխարելու ենք որ չկորսուինք. և ապահով կրնանք ըլլալ՝ որ եթէ ունինք իր սուրբ ու անմահական սէրը, ապաշխարութիւն մը մեզի ծանր կամ դժուարին չերևնար։

Մեռուցման կամ ապաշխարութեան հոգին որ կ'ըսենք, չենք հասկընար նախնի հաւատացելոց կամ ճգնաւորաց անցուցած խստակրօն կեանքը, որ ասիկայ սակաւուց տրուած է. և ոչ իսկ եկեղեցին կը պահանջէ իր հաւատացեալ որդիքներէն զայս իբրև պարտք. այլ թէ իւրաքանչիւր ոք ըստ իւր պայմանին և կարողութեանը՝ մեռուցանէ պիտի զինքը հրամայեալ պահօք և ծոմապահութեամբք եկեղեցւոյ. աղօթիւք, զգայութիւնքը զրկելով երբեմն նաև օրինաւոր զուարճութիւններէն ու վայելքներէն, ինչպէս նաև Աստուծմէ եկած նեղութեանց և վշտաց սիրով ու համակամութեամբ համբերելով։ Օրինակ մը տալ ուզելով թէ ինչպէս զգայութիւնքը կրնան մահացուիլ առանց մեծ դժուարութեան մը, այս հոգևորական տեսութիւնքը կը դնենք, զորս կրնան կատարել եթէ հիւանդք և եթէ տկարք կազմուածքով։ Որովհետև կը մեղանչենք հոգւոյ ամենայն կարողութեամբք և մարմնոյ զգայութեամբք, ուստի երկուքն ալ պէտք է որ մահացուին. և նախ հոգեկաններէն սկսելով, յիշողութիւնը կրնայ մահացուիլ՝ ոչ երբէք մտածելով անցեալ զուարճութեանց, փառաց, պատուոյ, յաջողութեանց, երջանկութեան վրայ, այլ մտածել մանաւանդ մեր տկարութիւններն

ու մեղքերը։ Միտքը մահացնելու է կրօնքի
ամենայն վարդապետութեանց հպատակեցնե-
լով, անձնական կարծիքներէն հրաժարելով,
ունեցած հանճարն ու մտաւոր կարողութիւնը
բանի մը տեղ չդնելով, և ուրիշներուն կար-
ծեացը դիւրաւ զիջանելով։ Կամքը պէտք է
մահացնել՝ հպատակելով նախ յամենայնի
աստուածային կամաց, և իրեն օրինաւոր փո-
խանորդացը, եկեղեցականաց ու աշխարհայ-
նոց։ Իսկ զգայարանաց մէջ նախ և առաջ
պէտք է մահացնել զլեզուն, զանկարգն և
զչար և զլի թունոք մահաբերին, ոչ բնաւ ու-
րիշի վրայ չար խօսելով, այլ ընդ հակառակն
ամենուն վրայ բարի. ոչ երբէք ընկերոջը ծանր
խօսք զուրցել, և ամենայն իրօք զգուշանալ որ
և ոչ ընդ կատակս անհամեստ խօսք մը կամ
երգ մ՚ըսենք։ Կը մահանայ ականջը ոչ երբէք
բամբասանաց տեղիք տալով, ինչպէս և աշ-
խարհային խօսքերու, և կամ իր անձին վրայ
եղած գովեստից։ Հոտոտելիքը մեռուցանելու
է աւելորդ անուշահոտ բուրմանց սիրող չըլ-
լալով, և ընդհակառակն բարեգործութեանց
համար եթէ հարկ ըլլայ անախորժ հոտ առ-
նուլ, ինչպէս հիւանդի քով գտնուելով, և այլն
և այլն, սիրով և առանց գանգատանաց տա-
նիլ։ Ճաշակելիքը կը մահացուի կերակրոյ վրայ
գանգատ չընելով, առջենիս ինչ որ կը դրուի
գոհութեամբ ուտելով, թէ և սիրած բաներնիս
չըլլայ. և հաճոյականաց որկրամոլութեամբ ե-
տևէ չըլլալով։ Շօշափելիքը կը մահացնենք՝
զրկելով զմեզ յամենայն շօշափական հաճոյքէն,
որ զգայութիւնները կ՚արթընցնեն։ Տեսանե-

մեքը մեռուցանելու է այն ամենայն վնասակար տեսութիւններէ զրկելով, որոնցմով խորհուրդք չարք կը ծնանին մեր միտքը. և նախընթաց մեզի տուած վնասուն համար, երբեմն նաև անմեղ զուարճութիւններէ զրկել։ Այս մեռուցումներս ամենքը կրնան ընել, առանց առողջութիւններնուն վնաս մը բերելու, և ասով քրիստոնէական ապաշխարութեան ոգին վառ կը մնայ, որ քրիստոնէին համար անհրաժեշտ կարևորն է։

Պէտք է մտքերնիս դնենք հաստատապէս, որ արքայութիւնը բռնութեամբ միայն ձեռք կրնանք ձգել, ինչպէս կ'ըսէ Քրիստոս Տէրն մեր՝ «Արքայութիւնն երկնից բռնաբարի, և բռունք յափշտակեն զնա.» այս բռնաբարութիւնս ուրիշ բան չէ՝ եթէ ոչ քրիստոնէական մեռուցումն, և պատերազմ մեր ներքին ու արտաքին թշնամեաց հետ։ Մարդուս կեանքը անընդհատ պատերազմ մըն է երկրիս վրայ. այն պատճառաւ կ'ըսէ առաքեալն ալ. «Զի զէն զինուորութեան մերոյ ոչ է մարմնաւոր, այլ զօրաւոր յԱստուծոյ.» և ով որ չուզեր աս պատերազմիս մէջ յաղթուիլ, կտրիճ զինուորի մը պէս սուրը ձեռքը հաստատուն պիտի կենայ իր քրիստոնէական պարտուց ու առաջադրութեանցը մէջ, առանց տեղիք տալու դիւական փորձութեանց ու յարձակմանց, հետևելով առաքելոյն յորդորանացը որ կ'ըսէ. «Եւ իրև զամենայն ինչ կատարեցէք, հաստատուն կացէք. զտեղի կալջիք, պնդեալ զմէջս ձեր ճըշմարտութեամբ, և զգեցեալ զզրահն արդարութեան, և ագուցեալ զոտս պատրաստու-

Թեամբ աւետարանին խաղաղութեան... Եւ ա-
ռէք զսաղաւարտն փրկութեան, եւ զսուսեր
հոգւոյն՝ որ է բանն Աստուծոյ:» Բայց որով-
հետեւ մեղաց լուծկիքն ու ախտից ապստամբ
բերումը անմեռ են 'ի մեզ, անոր համար միշտ
մարմինն ու հոգին հակառակ պիտի ըլլան ի-
րարու, ինչպէս կ'ըսէ նոյն առաքեալը. «Զի
մարմին ցանկայ հակառակ հոգւոյ, եւ հոգի
հակառակ մարմնոյ. եւ գի սոքա հակառակ մի-
մեանց են:» Անոր համար խորհուրդ կու տայ
մեր կամաց ուզածները չընել, այլ պատժել ու
նուաճել մեր մարմինը, եւ մանաւանդ թէ հոգ-
ւոյն գերին ընել. ինչպէս կ'ըսէ ինքը իր անձին
վրայ: Այս հոգեւորական պատերազմիս մէջ
պիտի զօրանանք ու քաջալերուինք ոչ միայն
Քրիստոսի բանիւքը, այլ նաեւ օրինակաւը.
հայելով 'ի զօրագլուխն հաւատոց եւ 'ի կատա-
րիչն Յիսուս. որ իրեն երկինքն ունեցած մխի-
թարութիւնն եւ ուրախութիւնը թողլով, երկ-
րիս վրայ միշտ մահացեալ ու տաժանակիր
կեանք մը վարեց, պարզ մեզի օրինակ եւ խրատ
ուղղութեան ըլլալու համար: Այն պատճառաւ
որոնք որ չարակրութեամբ իր օրինակին չեն
հետեւիր, իրեն արժանի հետեւող չեն, ու
Քրիստոս զայնպիսիները չճանչնար. «Որ ոչ
առնու զխաչ իւր եւ գայ զկնի իմ, չէ ինձ ար-
ժանի:»

Երբոր փորձուինք 'ի սատանայէ, եւ կամ
գժուարին երեւնան մեռուցմունք ու չարակրու-
թիւնք աշխարհիս, աչքերնիս մէյմը երկինք
պէտք է գարձընենք, տեսնելու համար թէ ինչ
մեծամեծ բարիք պատրաստեր է Աստուած

մեզի հոն, որ մեր բնիկ ժառանգութիւնն է, եթէ սիրով մահացնենք զմեզ։ Վասն զի որչափ որ ձրի ու Աստուծոյ շնորհացն ու ողորմութեանը պարգեւն է արքայութեան ժառանգութիւնը, բայց մենք ալ գործակից ու մասնակից պիտի ըլլանք մեր փրկութեանն ու փառացը. որով որչափ աւելի մահացնենք ու նեղենք զմեզ, այնչափ ալ մեծ պիտի ըլլայ յերկինս մեր փառքն ու վայելքը։ Անոր համար կ'ըսէ մարգարէն թէ Աստուած անոնց արտասուքը կը սրբէ ու կը մխիթարէ. «Լոյս ծագեաց արդարոց, ուղղոց սրտիւք եղև ուրախութիւն։» Արքայութեան վայելքը այնպէս մեծ է ու անհամեմատ մեր քաշած նեղութեանցը, որ արքայութեան մէջ ամենէն աւելի վշտակրութիւն ունեցող սուրբն ալ, փափաքի պիտի որ շատ աւելին քաշած ըլլար երկրիս վրայ, ինչ որ քաշեր ու տարապեր է. անոր համար կ'ըսէ Պօղոս առաքեալ. «Չի ոչ են արժանի չարչարանք ժամանակիս հանդերձելոցն փառաց, որք յայտնելոց են 'ի մեզ։» Ուստի մեծ անմտութիւն ու յիմարութիւն է աս աշխարհքիս սակաւժամանակեայ նեղութիւններէն փախչելով, յաւիտենական անսպառ և լիաղեղ ուրախութիւնը կորսնցնել. զայս չկորսնցնելու համար, Սուրբն Անտոն Աբբան աւետարանին մէկ խօսքը լսելով, ամեն բան թողուց, ու ութսուն և ութ տարի անապատին մէջ խստակրօն վարուք ճգնեցաւ։ Երանի թէ այսպիսեաց օրինակովը քաջալերուած, մենք ալ մեր ձեռքէն եկածն ընելով, անվերջ երանութեանը արժանի ըլլանք։

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

---

ԼԱՒ ԿԵՐՊՈՎ ԽՈՍՏՈՎԱՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ, ԻՆՉ ՄԻՋՈՑՈՎ ԱՍՏՈՒԾՈՅ ՇՆՈՐՀԱՑԸ ԱՐԺԱՆԻ ԿՐՆԱՆՔ ԸԼԼԱԼ.

*Մեր փրկութեանը համար, պէտք եղած շնորքները ընդունելու մեզի ձեռնտու կ'ըլլայ սուրբ Աստուածածինը՝ մեր երկնաւոր Թագուհին ու մայրն, ըլլալով միանգամայն ապաստան մեղաւորաց ու մխիթար վշտացելոց մեզի, որ պատրաստ է մեր խնդրանաց կատարումն ընդունելու իր միածին Որդիէն, ինչպէս կ'ըսէ Սուրբն Բեռնարդոս, թէ որ և իցէ խընդիրքնիս կատարելու կը փութայ Սուրբ Աստուածածին, եւ առաւել այս խնդիրքը, որով կը հաշտուինք իր միածին Որդւոյն հետ, և արժանի կ'ըլլանք իրեն որդեգրութեանը։ Ամենայն աղօթք ու ջերմեռանդութիւն բաւական է ու ազդու Սուրբ Աստուածածնայ մայրենի գութը շարժելու, բայց առաւելապէս հրեշտակային ողջունատրութիւնը կամ վարդարանի աղօթքը, որով բիւրաւոր հոգիներ դարձի եկած են նոյն ջերմեռանդութեամբ։ Ասոնցմէ մէկ քանին միայն յիշենք հոս։*

*Հոլանտացի երիտասարդ մը տարիներով*

գէշ կերպով կը խոստովանէր՝ ծանր մեղք մը ծածկելով 'ի խոստովանութեան. վարդարանի ջերմեռանդութեան վրայ քարոզ մը լսելով, յորում կը ցըցունէր քարոզիչը թէ ինչպէս զօրաւոր է այս աղօթքս որոնք որ կ'ուզեն լաւ կերպով խոստովանիլ, ինքն ալ ուզեց հաղորդ-գտնուիլ աս ջերմեռանդութեանը, ամեն օր եռանդեամբ կատարելով այս աղօթքս. շատ չանցաւ այնպիսի զիղջ մը զգաց իր առջի անհոգութեանը վրայ, որ օրերով գիշեր ցորեկ անհանգիստ էր, ու կ'ուզէր ժամ մը առաջ լաւ կերպով խոստովանիլ։ Զայս ինչպէս որ պէտք է ըստ կարգի կատարելէն ետքը, սրբութեամբ կեանքն անցնելով, այնպէս ալ մեռաւ։

Ի ժամանակս Սրբոյն Դոմինիկոսի, անկարգ ու գայթակղական վարուք կին մը կար 'ի Հռոմ, որ համբաւեալ էր քաղքին մէջ իր անառակ վարուցը համար։ Ասիկայ անգամ մը Սրբոյն Դոմինիկոսի քարոզը լսելով, որ վարդարանի օգուտներուն վրայ էր, ուզեց ինքն ալ հաղորդ-գտնուիլ այս աղօթքին, ու սկսաւ ամեն օր անվրէպ կատարել, առանց վարքը փոխելու։ Այս կերպով երբոր չար վարքն ու ջերմեռանդութիւնը միանգամայն կը շարունակէր, յանկարծ ազդեցութիւն մ'ունեցաւ Աստուծմէ, որ կարծես թէ կ'ըսէր իրեն. Մինչեւ ցե՞րբ այդ անկարգ կեանքդ պիտի շարունակես։ Այս մըտածութեանս վրայ անանկ յեղափոխութիւն մը զգաց իր սրտին մէջ, որ փութաց մէկէն Սրբոյն Դոմինիկոսի խոստովանելու, ու վարքը փոխելով՝ սրբակրօն կեանք մը անցուց մինչեւ ցմահ։

Աշնուական երիտասարդին մէկը որ ամենայն հոգւով կը փափաքէր սրբապղծութիւն չընելու 'ի սուրբ խորհուրդն խոստովանութեան և հաղորդութեան, հարցուց Սրբոյն Դոմինիկոսի՝ թէ ինչ պէտք էր ընէր։ Պատասխան տուաւ Սուրբն Դոմինիկոս. Ամեն օր ըսէ վարդարանի աղօթքը, ու ասիկայ կ'ըլլայ քեզի վարժապետ ու առաջնորդ լաւ խոստովանելու։

Սուրբ Վինկենտիոս Ֆէրրարեան, անզեղջ մեղաւոր մը որ մեռնելու վրայ էր՝ դարձի բերաւ, քանի մը բարեպաշտներով վարդարանի աղօթքը եռանդեամբ ըսելով։

Փափաքելի բան, եթէ այս օրինակներուս հետևելով իւրաքանչիւր ընթերցող իր Սուրբ Աստուածածնայ վրայ ունեցած ջերմեռանդութիւնը աւելցնէ յօգուտ փրկութեան հոգւոյ իւրոյ, մանաւանդ թէ իր հոգւոյն փրկութիւնը ապահովցնէ. վասն զի կարելի բան չէ որ Սուրբ Աստուածածնայ հաւատարիմ ջերմեռանդ մը չկարենայ փրկութեան հասնիլ։ Մեր չարակնոցին անբաւ եռանդնալից խօսքերէն մէկ քանին հոս կը դնենք իբրև աղօթք և իբրև հաւաստիք մը՝ թէ Սուրբ Աստուածածին կը փրկէ զմեզ 'ի փորձութեանց, 'ի մեղաց և 'ի հրոյն յաւիտենից։

### Սուրբ Աստուածածին փրկէ զմեզ 'ի փորձութենէ.

Անկանիմք առաջի քո Աստուածածին, և աղաչեմք զանպարտ զկոյսդ. բարեխօսեա վասն անձանց մերոց. և աղաչեա զմիածին Որդին,

փրկել զմեզ 'ի փորձութենէ և յամենայն վտանգից մերոց։

Արդ խնդրեմք 'ի քէն անդադար բարեխօսեա վասն անձանց մերոց առ Որդին քո միածին, փրկել զմեզ 'ի փորձութենէ և յամենայն վտանգից մերոց։

Որ անապական ծննդեամբդ քո լուծեր զերկունս նախամօրն Մարիամ մայր Աստուծոյ. բարեխօսեա առ միածին Որդին, լուծանել զկապանս մեղաց մերոց. և աղաչեա փրկել զանձինս մեր 'ի փորձութենէ։

Քեզ միայնոյ մօր և կուսի մաղթեմք հայցելով 'ի քէն, բարեխօսեա անդադար առ Որդիդ քո և Աստուած մեր, փրկել զմեզ 'ի փորձութենէ և յամենայն վտանգից մերոց։

Զքեզ աղաչեմք հանապազ Սուրբ Աստուածածին, բարեխօսեա Քրիստոսի Աստուծոյ մերոյ, փրկել զմեզ 'ի փորձութենէ և յամենայն վտանգից մերոց։

Զմայրդ լուսոյ բանին Աստուծոյ, որ եղեր արևելք արեգականն 'ի մեզ ծագողին, բարեխօս ունիմք փրկել զմեզ 'ի փորձութենէ։

Առ քեզ ապաւինիմք Սուրբ Աստուածածին, բարեխօսեա անդադար առ Որդիդ քո և Աստուած մեր, փրկել զմեզ 'ի փորձութենէ և յամենայն վտանգից մերոց։

Խնդա Մարիամ որ եղեր մայր Քրիստոսի, և աղաչեա զառ 'ի քէն զմարմնացեալ բանն Աստուած, զի փրկեսցէ զմեզ 'ի փորձութենէ։

Բարեխօսութեամբ Սուրբ Աստուածածնին և միշտ կուսի աղաչեմ. Տէր փրկեա զիս 'ի յորոգայթէ աներևոյթ թշնամւոյն։

### Սուրբ Աստուածածին փրկէ զմեզ 'ի մեղաց.

Աղբիւր կենաց բղխեալ յԵդեմայ Սուրբ Աստուածածին, որով արբեցաւ երկիր ծարաւուտ հոգւոյն իմաստիւք, տալ մեզ մաղթեա աղբիւրս արտասուաց, մաքրել զմեզ 'ի մեղաց մերոց:

Որ վառեցար 'ի յարփւոյն և ոչ կիզար ըստ մորենւոյն, այլ ետուր զհացն կենաց կերակուր բանաւորաց, բարեխօսեա առ Քրիստոս ջնջել զգիր մեղաց մերոց:

Մարիամ կոյս անարատ զանապական փեսայդ աղաչեա, զի հաշտեսցի ընդ այրի եղեալ հոգիս, և միաւորեսցի դարձեալ սիրով ընդ հեռացեալս 'ի նմանէ:

Զկենդանագիր անարատ ծնողի քո արկանեմք առաջի անոխակալ տէրութեանդ քոյ. յորժամ գաս փառօք հօր դատել զթշնամին խաչի քոյ, ներեա յանցանաց մերոց, բարեխօսութեամբ մօր քո և կուսի. աղաչեմք զքեզ Տէր պահպանեա զմեզ ընդ հովանեաւ խաչի քո սուրբ:

Ի բարեխօսութիւն փութացիր մեզ Սուրբ Աստուածածին. առ 'ի փրկել զժողովուրդս 'ի մեղաց և յապականութենէ:

### Սուրբ Աստուածածին փրկէ զմեզ 'ի հրոյն յաւիտենից.

Աստուածածին ապաւէն մեր և յոյս, բարեխօսեա առ Որդիդ քո միածին, զի փրկեսցէ

զմեզ 'ի հրոյն տանջանաց, և պարգևեսցէ մեզ զերկնից արքայութիւնն։

Մաքուր և ամբիծ կոյս յետ ծննդեանն, որ մարմնով ծնար պարգևողն 'ի կապից մահու, բարեխօս լեր վասն անձանց մերոց, փրկել 'ի սպառնալեաց գեհենոյն։

Որ զհուրն Աստուած 'ի քեզ կրեցեր մորենի անկիզելի, դառնաճաշակ պտղոյն քաղցրացուցիչ՝ անճառելի քոյին ծննդեամբդ, 'ի քէն հայցեմք մաղթեա փրկել զմեզ 'ի հրոյն յաւիտենից։

Բարեխօսութեամբ Սուրբ Աստուածածնին պահեսցէ զեկեղեցի իւր սուրբ. և 'ի միւսանգամ՛ գալստեան իւրոյ նորոգեսցէ 'ի փառս։

Տիրուհի անարատ մայր Տեառն և կոյս Մարիամ, քրովբէական աթոռ զքեզ տեսաք 'ի յերկրի, բարեխօսեա առ Տէր վասն մերոյ փրկութեան։

Արդ խնդրեմք 'ի քէն Թագաւոր փառաց Քրիստոս, աղաչանօք սրբուհւոյ անարատ մօր քո և կուսի, ապրեցո զմեզ յաւիտենից 'ի մահուանէն։

Որ յամենայն ազգաց երանեցար սրբուհի և կոյս Մարիամ, աղաչեա զառ 'ի քէն զմարմնացեալն Աստուած, ապրեցուցանել զմեզ 'ի սպառնալեաց գեհենոյն։

Յոյս մեր և ապաւէն մայր Տեառն և կոյս սուրբ, որ հուր աստուածութեանն ոչ բոցակիզեաց զքո սուրբ զորովայն, բարեխօսեա առ Տէր վասն մերոյ փրկութեան։

Փութացիր յօգնութիւն սուրբ Աստուածածին, և աղաչեա զառ 'ի քէն զմարմնացեալ

բանն Աստուած, զի յաՀաւոր և 'ի միւսանգամ գալստեան իւրոյ, պարգևեսցէ մեզ զկեանսն յաւիտենից։

Սրբուհւոյ Աստուածածնին բարեխօսու- թեամբ, պարգևեա երկրպագուացս ամենա- սուրբ Երրորդութեանդ, զյարութիւն յուսոյ կենացն յաւիտենից։

Բարեխօսութեամբ Սուրբ Աստուածածնի ծնողի և մօր քո, յիշեա զգինս արեան քո Տէր, և դասաւորեա յերանաւէտ յանթառամ և յանտրտում 'ի կեանսդ 'ի յարքայական 'ի Հանգստեան։

Ի քեզ եմք ապաւինեալ ամենօրՀնեալ սըր- բուհի, լեր բարեխօս անդադար վասն մերոյ փրկութեան։

Աստուածածին անՀարսնացեալ, յերկրէ յեր- կինս Հարսն ընծայեալ. յորժամ թագմիս լու- սոյ նման՝ քո Միածնիդ յաջակողման, յայն- ժամ մաղթեա ընդ մեր զնոյն, փրկել զմեզ յա- Հեղ բոցոյն, Համադասիլ ընդ արդարոցն, եր- գել քեզ փառս ընդ երկնայնոցն։

Ցնծա Մարիամ արեգականն արդարու- թեան արևելք, և աղաչեա զառ 'ի քէն զծըն- եալն Աստուած վասն մեր, զի դարձուսցէ վե- րըստին զմեզ 'ի դրախտին ժառանգութիւն։

ՎԵՐՋ.

# ՑՈՒՑԱԿ

—

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

### ԳԼՈՒԽ Ա.

Խոստովանութեան հինաւուրց և ընդհանուր ըլլալուն վրայ.



### ԳԼՈՒԽ Բ.

Յաղագս հաստատութեան խոստովանութեան յօրէնս շնորհաց.

## ԳԼՈՒԽ Գ.

Խոստովանութեան դէմ եղած առարկութիւններ.

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ



—

| | ՎՐԻՊԱԿ | ՈՒՂԻՂ |
|---|---|---|
| 82 | դադրէր | դադրեր |
| 105 | դողցոչուն | դողդոջուն |
| 136 | եկաց | եկած |
| 162 | արժէր | արժեր |
| 179 | հանեն | հանին |
| 184 | տարապէր | տառապեր |